ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՄԺԹ.

# ՏԱՅՔ, ԴՐԱՅԻՔ ԵՒ ԽՈՏՈՐՋՈՒՐ

## ՊԱՏՄԱԿԱՆ-ՏԵՂԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ՀԱՏՈՐ Գ.

ԳՐԵՑ

**Հ. Յ. ՏԱՇԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1981

# ՏԱՅՔ, ԴՐԱՑԻՔ ԵՒ ԽՈՏՈՐՋՈՒՐ

## ՊԱՏՄԱԿԱՆ-ՏԵՂԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

### ՀԱՏՈՐ Գ.

ԳՐԵՑ

**Հ. Յ. ՏԱՇԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

**ՎԻԵՆՆԱ**

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1981

ԱՐՏԱՏՊՈՒԹԻՒՆ

“ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ„է

1974, Թ. 1—3, էջ 31—51, Թ. 4—6, էջ 149—179, Թ. 7—9, էջ 277—306, Թ. 10—12, էջ 489—503, 1975, Թ. 1—3, էջ 1—46:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ԽԱՂՑԻՔ, ՍԵՒ ԳԵՏ ՈՒ ՀԱՄՇԷՆ

## ՊԱՏՄԱԿԱՆ-ՏԵՂԱԳՐԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ*

§ 1. Պոնտական ակունք: — *Առաջին եզրաշխարհն՝ զոր ի նկատի կ'առնունք, Պոնտական լերանց այն բարձանց վրայ կը տարածուի, որոնք դէպ ի ծով կ'իջնեն եւ այն՝ մեզի համար կարեւոր այն հովիտները միայն, որոնք երբեմն հոծ հայութիւն ունէին, բայց այժմ լիովին մահմետականացած են՝ շնորհիւ օսմանեան բռնութեան: Սեւ Գետ ու Համշէն յատուկ մտօք Խաղտեաց կը վերաբերին. ուստի Տայոց աշխարհէ դուրս*

* Հ. Ց. Տաշեանի այս երրորդ մասը նոյնպէս կը մնայ անկատար: Սակայն գրութիւնն իր այս կիսատ վիճակին մէջ ալ, պատմական եւ տեղագրական տեսակէտէ շատ մեծ արժէք մը կը ներկայացնէ իբրեւ հմուտ հեղինակի մը գործ: Դժբախտաբար կը փութանք ծանուցանել թէ այս Գ. մասին մէջ, որքան ալ նշանակուած կը գտնենք ծանօթագրութեանց թիւերը, սակայն անոնց բնագիրներու հետքն իսկ անգամ այսօր. գոյութիւն չունին: Այս պատճառով աշխատեցանք բնագրին կապակցութեամբ մակաբերելով մասամբ այդ թերին լրացնել: Հ. Պ. Տ.–Պ.

են։ Բայց՝ անմիջական սահմանակից Տայոց ու նաեւ Բարձր–Հայոց՝ հնուց ի վեր պէտք էր որ այլեւայլ կողմանէ կապ ունենային այն աշխարհաց հայութեան հետ։ Որովհետեւ հայ ազգն, երբ իւր պաշտօնական Հայաստանն իւր որոշ սահմաններով ստեղծեց, կրցաւ հասնիլ միայն մինչեւ Պարխարի կամ Պոնտական բարձր լեռնագծին ջրաբաշխ գիծը, գրաւելով ուրեմն Ճորոխի հովիտը, եւ չկրցաւ անցնիլ նոյն լերանց հիւսիսային երեսն ալ, ուստի չհասաւ մինչեւ Սեւ ծով։ Սակայն՝ ինչ որ հայ պետութիւնը չէր կրցած, նոյնը կրցած էր ընել հայ ժողովուրդը, թէեւ օտար պետութեանց ներքեւ։ Եթէ Տայք՝ իրենց Արսեաց գաւառով՝ կը հասնէին մինչեւ վիթխարի Քաջքարի հարաւային երեսը, հիւսիսային՝ դէպ ի ծով հայող երեսը՝ վերապահուած էր Համամի եւ իւր ընկերաց։ Անոր համար Քաջքար նոյնչափ Տայոց (ու Խոտորջրոյ) կը վերաբերի, որչափ Խաղտեաց (ու Համշէնի)։ Նոյնն ըսելու ենք Բարձր–Հայոց համար, որուն Սպեր գաւառը մինչեւ Պարխարի բարձունքները կը հասնէր, եւ որ կարեւոր էր այնու որ ա՛նկէ կ՚անցնէին գլխաւոր ճամբաներ Սեւ ծովէն դէպ ի Հայս, այսպէս՝ Հռիզոս (արդի Րիզէ) նաւահանգստէ դէպ ի Տայս՝ Խոտորջրոյ վրայէն ու դէպի Սպեր Բարձր–Հայոց, Օփիս (արդի՝ Օֆ), Սուսուրմենա (արդի՝ Սիւրմենէ) նաւակայքներէ դէպ ի Սպեր ու Բաբերդ, չհաշուելով Տրապիզոնէ (Տրապիզոն)

եկող գլխաւոր ճամբան, որ Հնուց ի վեր ալ կու գար ինչպէս դէպ ի Բաբերդ, նոյնպէս մանաւանդ հռոմէական ռազմուղւոյն շինութեամբ՝ դէպ ի Փոքր-Հայս եւն (Սատաղա, Մելիտենէ եւն): Այս յատուկ մտօք Խաղտիք ուրեմն անհրաժեշտ դրացի մըն էին Հայոց. եւ զարմանալի չէ որ հայ ժողովուրդն կանուխէն ոտք կոխած ըլլայ հոն, ձուլած այն տեղւոյ ժողովրդեան մաս մը եւ ձուլուած, եւ այլեւայլ հովիտներ յընթացս ժամանակաց լիովին հայացուցած:

Այս պարագայից մէջ ըստ ինքեան սպասելի էր որ ճոխ տեղեկութիւն գտնուի Խաղտեաց աշխարհի մասին մեր մատենագրութեան մէջ: Բայց այսպէս չէ այնու իսկ որ մեր մատենագրութիւնը շատ ուշ կը սկսի, Ե. դարէն Ց. Ք.: Անշուշտ Խաղտիք յաճախ կը յիշուին. բայց այնչափ եւ այնպիսի կերպով՝ որչափ եւ որպիսի կերպով բուն Հայաստանէ դուրս մնացած միւս՝ նաեւ հայաբնակ՝ գաւառները կը յիշուին, որոնք շատ սակաւածանօթ պիտի մնային, եթէ օգնութեան չհասնէին օտար աղբիւրները: Նոյն իսկ Փոքր-Հայք հայ աշխարհը, որուն՝ իբր անկախ պետութեան՝ կազմակերպութիւնը նոյնչափ հին է որչափ Արտաշէսի ու Զարեհի կրկին Հայաստանները, մեր մատենագրութեան լիովին անծանօթ մնացած է, եթէ չհաշուենք Խորենացւոյ աշխարհագրութեան միակ տեղին: Այն վայրկենին՝ երբ մեր մատենագրութիւնը կը սկսի, այս՝ շա-

տոնց հոմէական եղած, «Ցունաց աշխարհ» էր· եւ իբր այսպիսի միայն գիտեն մերոնք։ Տարբեր չեն Խաղտեաց աշխարհի մասին ալ եղած տեղեկութիւնքն, այն տարբերութեամբ՝ որ յետոյ Բիւզանդեան վարչական բաժանման մը համեմատ՝ մինչեւ անգամ Բարձր–Հայոց մէկ մասն ասոր կը վերագրէ մեր մատենագրաց մէկ մասը, մինչդեռ նոյն աշխարհին հին ընդարձակութիւնն իրենց անծանօթ կը մնայ։ Նոյն իսկ թէ հնագոյն ժամանակներն իսկ այս տեղերն ունեցած են Հայ–Խաղտիք, ինչպէս Հայ–Լազեր, գիտենք միայն օտար մատենագրութենէ։

Այստեղ մեր նպատակը չէ Պոնտական ափաց հնութեան շրջանը լիովին նկարագրել, եւ ոչ ալ Ալիս գետոյ ծովախառնունքէն մինչեւ Ճորոխի բերանը նստող պէսպէս ազգերու պատմութեամբ զբաղիլ։ Այս շատ հեռուն պիտի տանէր, եւ ուրոյն մեծ հատորի մը պէտք պիտի ըլլար։ Բայց աւելորդ չենք համարիր հարեւանցի ակնարկ մը, գլխաւորաբար այն տեսակէտով թէ ի՛նչ կը հասկնային հինք «Խաղտիք» գրելով, ցորչափ կը յիշուի այս անունը, եւ ի՛նչ կը հասկնան յետոյ մերոնք։

Սեւ ծովու եզերքը նստած կը նկարագրեն հինք շատ մ՚ազգեր կամ ցեղեր, որոնք երկար դարեր անընդհատ նոյնպէս կը յիշուին, մինչեւ որ յետոյ աներեւոյթ կ՚ըլլան այն անունները։ Եթէ բանանք հնութեան վե-

րաբերեալ որեւէ քարտէս մը՝ փոքրիկ տար–
բերութեամբք (ըստ այլեւայլ ժամանակաց)
պիտի գտնենք նշանակուած՝ թէ՛ Աղիւսի եւ
թէ՛ Հիրիկի երկու ափանց վրայ խաղիւբ–
ները (Chalybes), որոնք նաեւ Գայլ գետոյ
հովիտը մասամբ կը բռնեն. անոնց կը յա–
ջորդեն՝ մինչեւ Տրապիզոնի մօտերը՝ Տի–
բարենացիք (Tibareni) եւ «Մոսին» կո–
չուածները (Mosynaeci), որոնց ետեւը կը
նստէին յիշեալ Խաղիւրներն եւ դարձեալ (ի
վերջոյ ուրիշ յորջորջանօք) խաղտիք (Chal-
daei), որոնք ուրեմն ապագայ Փոքր–
Հայոց ամբողջ հիւսիսակողմը կը բռնէին ու
Պարխարի այլեւայլ հովիտները: Հին Կող–
քիսի ընդարձակութեան նշան մըն է, երբ
Տրապիզոնի շրջակայքը կը բռնեն «Կողք»
(Colchi) կամ Կողքիսացիք, Տրապիզոնէ
մինչեւ Ճորոխի բերանը՝ չհաշուելով մանր
անունները (Բեքիրք, Բիւզերք) որոնք շու–
տով աներեւոյթ կ'ըլլան, երկու անուններ
յաճախ կը յիշուին՝ Մակրոնք (Macrones) եւ
«Սան»ք (Sanni), որ լատինական անյաջող
գրութիւն մըն է ընիկ «Ճան» անուան (քիչ
մ'աւելի լաւ կը գրեն յետոյ Բիւզանդացիք՝
οἱ Τζάννοι). Ճորոխէն անդին՝ յատուկ
մօտք Կողքիսն էր եւ յետոյ՝ Բիւզանդեանց
Լազիկէն: Ասոնք միայն գլխաւորներն են,
չհաշուելով մանր ցեղերու բազմութիւն մը.
բայց նաեւ ասոնց մաս մը յատուկ անուն չէ,
եւ ո՛չ ալ իւրաքանչիւրն իրօք տարբեր ազգ
մըն էր: «Մակրոն» օրինակի համար «եր–

կար» կամ «մեծ» իմաստով է, այսինքն՝ բուն «Երկարագլուխ», ինչպէս կ'անուանէ արդէն Սկիւլաքս («Մակրոկեփալ»), եւ Ստրաբոն կու տայ միանգամայն այն կարեւոր տեղեկութիւնը թէ այս Մակրոնք նոյն էին՝ իբր ազգ՝ «Սան» կամ Ճան ազգի հետ[1]: Նոյն Ստրաբոն կը մեկնէ թէ ուստի ծագած է նոյնպէս այն զարմանալի անունը՝ «Մոսխնիկ» ազգի մը կամ ցեղի մը համար, զոր իւր ժամանակն ալ ամէնէն աւելի վայրենի կը նկարագրէ. այսինքն՝ որովհետեւ կը բնակէին փայտակերտ աշտարականման շինութեանց մէջ, իսկ այսպիսի աշտարակ մը Յոյնք μόσυν կամ μόσσυν կը կոչէին[2]: Անշուշտ յիշեալ շինութիւնք շատ տարբեր չէին անոնցմէ՝ զոր այսօր կը գտնենք շատ տեղ, նաեւ ի Տայս. այսպէս կարծենք թէ հին Յոյնք տարբեր անուն պիտի չտային նաեւ արդի Խոտորջրոյ «քորք»երու: Մեզի կարեւորն այս «Մակրոն–Ճան» բաժինն է. հոս եւ Սեւ Գետ ու Համշէն, եւ արդի Լազերու երկիրը:

Այս ազգերն ալ ի հարկէ իրենց տեղափոխութիւնքն ունեցած են, եւ այն՝ նաեւ մեծ փոփոխութիւններ: Այսպէս Տիբարենացիք, որ յետոյ դէպ ի ծովեզերք քշուած են, նախնաբար շատ վարը կը բնակէին,

---

[1] *Strabo*, Geographica, edidit A. Meineke, Lipsiae (1824) 1921 հատոր Բ. գիրք ԺԲ. գլ. 548:

[2] *Strabo*, անդ ԺԲ. 549:

ապագայ Գամրաց աշխարհի հարաւակողմն, մինչ հիւսիսակողմը կը բռնէին Մոսքերը: Տակաւին Սարգոնի (722—705) օրով այդ տեղերը կը բնակէին այս ազգերը, որոնք Ասորեստանի անհարկու յառաջխաղացութեան դէմ ստիպուած մեծ դաշնակցութիւն մը կը կազմէին: Առաջնորդութեամբ Ուրարտուի Հռուսասայ Ա. կը դաշնակցէին Տուբալի Ամբարիս արքայն, Մուսկիի Միտա, Միլեդի (Մելիտենէ) Տարխունազի, Կումմուխի (Կոմագենէ) Մուտալլու, եւ ուրիշ աշխարհներ ալ, Կասկու, Խիլակկու (Կիլիկիա) են[3]: Բայց քիչ մ'ետքը լիովին յեղաշրջուեցաւ ամենայն ինչ: Կիմմերական–սկիւթական արշաւանքը տակնուվրայ ըրաւ ամբողջ Յառաջակողման Ասիան. եւ բռնադատեց ազգերը տեղափոխուիլ: Ծանօթ է որ այս շարժման մաս կամ հետեւութիւն էր նաեւ Հայոց (հնդիկեւր.) մէկ տարրին՝ գոնէ մասամբ՝ դէպ ի արեւելք մղուիլը դէպի Ուրարտուի հողերը: Եւ երբ այս Կիմմերացիք–Գամիրք իրենց անունը կրող աշխարհ բռնեցին, այն տեղ նստող ազգերէն կամ ցեղերէն մաս մը ստիպուեցաւ շատ մեծ գաղթականութիւն մ'ունենալ: «Տուբալ»–Տիբարենացիք քշուեցան ի հիւսիս. բայց մանաւանդ «Մուսկի»–Մոսքերը ստիպուած էին Ուրարտուի հո-

---

3 Սանտալճեան Յովսէփ Վ., *Ասորեստանեաց եւ Պարսից սեպագիր արձանագրութիւնք*, *Վիեննա* 1901, *Ազգ. Մատ. Թիւ* 40, *էջ* 182:

դերէ անցնիլ՝ դէպի արեւելեան–հիւսիս ուղղութեամբ։ Եւ Հռուսաս Բ. (685—675) ստիպուած էր անոնց՝ որ Ուրարտուի երբեմնի դաշնակիցներն էին, դիմադրել, ինչպէս կը ցուցնէ Արծկէի արձանագրութիւնը։ Մոսքերը սակայն շարունակած են իրենց ճամբան, հաւանօրէն Բարձր–Հայք ու Տայք, Ճորոխի հովտէն հասած նոյն դետոյ բերանի երկու կողմերը, եւ բաւական երկար նստած ալ են հին Կողքիսի մէջ (իբր Ե. դարէն Ն. Ք. մինչեւ Ա. դար Յ. Ք.) եւ իրենց անունը տուած այն լեռնաշղթային («Մոսքիական» լերինք) զոր Պարխարի շարունակութիւն կը համարի Ստրաբոն[4]։ Ասոնք ի հարկէ յաճախ կը յիշուին դասական մատենագրաց քով, որոնցմէ ոմանք զիրենք Կողքեաց մաս կը համարին, ուրիշները՝ զԿողքիս մաս Մոսքաց աշխարհին։ Թողունք այն խնդիրը թէ ասոնք, յետոյ անցած ըլլան Կովկասն եւ հասած մինչեւ Մոսկուա։ Ուրիշները կ'ուզեն թէ ասոնցմէ, որոնք տակաւին իբր Ե. դարու արդէ Ախալցխոյ կողմերը նստած կ'ըսուին, ըլլան վրական Մեսխ ժողովուրդը, նոյն կողմանց կամ Սամցխեայ գլխաւոր տարրը, եւ ասկէ՝ նաեւ այն աշխարհի Մեսխեթի յորջորջանքը[5]։ Երկու կարծիքներն ալ յեցած են անուանց նմանու–

---

[4] Strabo, անդ ժԲ. 497։

[5] Koch Karl, Reise im Pontischen Gebirge, 1946, էջ 166—167։

*թեան վրայ. բայց առաջնոյն նպաստաւոր է այն պարագան որ Մոսկիները սերտ կապ ունէին Փռիւգացւոց հետ, որով կրնան հնդիկեւր. ցեղ մ'եղած ըլլալ: Իսկ եթէ Մեսխերն ալ իրօք կապ ունին՝ յետոյ վրացած ըլլալու են: Կը թողունք նոյնպէս այն խնդիրը թէ իրօք «Կասկու» ցեղն Խաղտեա՞ն էր, ինչպէս կ'ուզէ հայ բանասէր մը*[6]*: Աւելի հաւանական կ'երեւայ ուրիշ գիտնոյ մը (Լէման) կարծիքը, որ յիշեալ Արծ-կէի արձանագրութեան մէջ յիշատակուած «Հալլիտունի» ազգը կը նոյնացնէ Հոմերոսի «Հալիզոն» ազգին հետ, որ էր «յԱղիւ-բեայ» (Ἁλιζώνων... ἐξ Ἀλύβης) եւ որոնց մասին արդէն Ստրաբոն երկար կը ճառէ ցուցնելու համար թէ կարդալու է «ի Խա-ղիւբեայ» (ἐκ Χαλύβης) կամ թէ «Աղիւր» հին յորջորջանք մ'ըլլայ փխ. «Խաղիւր»: Ինչ ալ ըլլայ այս կէտը՝ կարեւոր է Ստրաբոնի քիչ մը յառաջ տուած տեղեկութիւնը թէ* «Որոնք այժմ խաղտիք (*Χαλδαῖοι*) *կ'ըսուին,* հնուց խաղիւք (*Χάλυβες*) կը կոչուէին». *եւ թէ սոնց գլխաւոր տեղն էր «Փառնակիա» (յետոյ՝ «Կերասուս»): Երկիրը քիչ հող ունի, կ'ըսէ, մշակելի. ուստի ժողովուրդը ստիպուած էր ձկնորսութեամբ եւ մետաղա-գործութեամբ զբաղիլ. այժմ երկաթ աւելի*

[6] *Սանտալճեան Յ., անդ էջ* 94*, ծնթ.* 1*. «Կասպիք, Կասկու. սոքա Կողքիսի եւ Թերմոդոն գետոյն աջակողմը Խաղիւրաց ժողովուրդք». իսկ անդ էջ* 236*. Կասկայց երկր. = Խաղիւրք = Խաղտիք:*

կը բերէ, բայց յառաջ արժաթարեր ալ էր: Լեռնադիծը, զոր հոս ալ Ստրաբոն Պարխար (Պարխադրէս) կը կոչէ, հարուստ է հանքերով ու անտառներով, եւն[7]: — Այս հարեւանցի դիտողութիւնք իսկ կը ցուցնեն թէ ո՛րչափ նաեւ կարեւոր խնդիրներ կան այս ամէն ազգաց մասին: Բայց մեր նպատակին համար կը բաւէր այս կէտը թէ Խաղիւբ — Խաղտիք ո՛րչափ տարածուած էին յառաջ:

Դասական մատենագիրք յաճախ կը խօսին այս ամէն ազգաց մասին նաեւ այնու որ ի հարկէ չփում ունէին անոնց հետ՝ նախ Յոյնք, որ ամբողջ ծովեզերքը ծածկած էին այլեւայլ գաղթականութեամբք եւ քաղաքներ հիմնած, եւ յետոյ՝ Հռոմէացիք որ տէր դարձան այս աշխարհաց: Ուստի չատ կանուխէն ալ չեն պակսիր տեղեկութիւններ այս ծովեզերաց մասին, որոնք ի հարկէ հետզհետէ կը պայծառանան: Հին զրոյցներ իսկ՝ Յունաց քով՝ նշանաւոր ըրած էին այս ափունքն. Արգոնաւորդք՝ իրենց ոսկի գեղմամբ՝ ի Կողքիս, Ամազոնք, որ կը բնակէին Թերմոդոնի երկու ափերը եւ Հերակղի եւ Թեսէոսի ձեռնարկութիւնք ասոնց դէմ, եւն: Սակայն նաեւ այս զրուցաց մէջ աշխարհագրական հետաքրքրական կէտեր չեն պակսիր՝ պէսպէս ժամանակաց համեմատ: Այսպէս նոյն իսկ այն վէպին մէջ, որ Որփէոսի

[7] Strabo, գիրք ԺԲ. 549:

կ՚ընծայուի, թէեւ ի հարկէ շատ անագան է, բայց միշտ նաեւ հին եւ որ Արգոնաւորդաց ուղեւորութեան գիծը կը նկարագրէ՝ ծովեզերքին երկայնքը, կը յիշուին «Հալուս» (Ալիւս) գետը ու Թերմոդոն՝ գետն եւ «Թեմիսկիւրեայ» հսկայ աւերակները, որմէ հեռու չեն Ամազոնաց քաղաքները. «Խաղիւբք, Տիբարենացիք եւ դրացի ուրիշ ազգեր ի միասին կը բնակին Մոսինի աշխարհի մէջ»: Ի հարկէ այսպիսի հին բնագիրներու մէջ մթութիւնք ու խառնակութիւնք, բայց նաեւ յաճախ խանգարմունք չեն պակսիր: Այսպիսի է այն կտորն, ուր կ՚ըսուի թէ «Արաքս» գետէն «կ՚ելլեն Թերմոդոն, Փասիս ու Տանայիս». եւ ասոնց ափանց վրայ կը բնակին «ազնիւ ցեղերս Կողքեաց, Հենիոքաց եւ Արաքսաւոց». եւ շարք մ՚ուրիշ խանգարեալ անուանց մէջ կան «բազմաթիւ քաղաքներ Սապիրաց, Բիւզերք եւ անհիւրընկալ ցեղեր Սիգիննացւոց»: Ասկէ ետքն է որ Արգոնաւորդք կը հասնին Փասիսի գեղեցիկ ափերը: Հին շրջանին կը վերաբերին նաեւ ոչ միայն տեղեկութիւնքն որ Հոմերեան երգոց ժամանակի կը հային, որուն «Ալիւբէ» աշխարհի «Հալիզոնք» արդէն յիշեցինք, այլ նաեւ յետագայ դարերու ուղեգիրները, որոնց տուած տեղեկութիւնք կանուխ են քան Պարսկական տիրապետութեան ժամանակը: Հեկատէոսի Միլետացւոյ երկին մնացորդները եւ Սկիւլաքսի Կարեան–

դացուոյ գործն արդէն տարբերութիւններ կը ցուցնեն. բայց երկուքն ալ հետաքրքրական պատկեր մը կու տան այն ծովեզերեայ ազգաց[8]: Սկիւլաքս, որ արեւելքը դէպի արեւմուտք կը նկարագրէ իւր շրջանառութեան մէջ, կը յիշէ «Կողքերէ կամ Կողքիտացիներէ ետքը նախ «Բիւզերք եւ գետն Դարաանուր եւ գետն Արիոն»: Բիւզերաց կը յաջորդեն Եկեքիրք, եւ գետն Պորդանիս եւ գետն Արքաբիս. յետոյ քաղաքն Լիմնէ եւ հելլենական քաղաքն Ոդինեոս: Արդ եթէ ուղիղ է «Արքաբիս» սրբագրութիւնը (փխ. «Արաբիս»), կը յիշեցնէ ի հարկէ արդի Արխաւա: Բայց հարկ չկայ սրբագրութեան: Սովորաբար կ՛ընդունուի թէ Բիւզերաց երկրի Արիոն գետը, նոյնը՝ զոր այլք «Պիւքսիդէս», կը կոչեն, է արդի Վիժէ-գետը (Վիծէ-սու): Արդ ասկէ ետքն է ուրեմն Եկեքիրաց աշխարհն, եւ իւր գետերը՝ Պորդանիս ու Արաբիս: Կարեւորագոյնն է արդէն այս ժամանակէն «Պորդանիս» անունը յետոյ նաեւ «Պրիտանիս», որ դարեր ու դարեր ետքն ալ մնացած է, միայն Թրքական ձեւ մ՛առնելով՝ Ֆորթունա, որ միանգամայն գլխաւոր գետն է Համշէնի ու Լազերու աշխարհին: Արդ ասկէ ետքն է ճշդիւ «Արաբիս» գետը, որ նաեւ «Զագատիս» կը

---

[8] Strabo/Skylax ԺԲ. 547—549. Հմմտ. Lehmann-Haupt, Armenien, Einst und jetzt, Berlin und Leipzig 1931, II, էջ 801:

կոչուի, արդի Աթինայ անմիջական արեւելա-կողմը: Քանի նախ Լիմնէ քաղաք մը կար, «Ոդինեոս, դժուարաւ կրնայ ըլլալ արդի Աթինա: Այս արդի Աթինայէն շատ աւելի դէպի արեւմուտքն այն գետն ու տեղն է, որ ինչպէս «Օդինիոս»՝ նոյնպէս «Ադինենոս», արդի Մուպաւրիի շատ մօտ արեւմտա-կողմը:

«Եկեքիրներէ ետքն են, կ՚ըսէ, Բեքիրք եւ բեքիրական նաւահանգիստը եւ հելլենա-կան քաղաքս Բեքիրիաս»: — Վերջինն կը համարուի այն տեղն, ուր յետոյ «Հռեզուս» կամ «Հռեզէոն», արդի Րիզէ կանգնեցաւ:

«Բեքիրներէն ետքը կու գան Մակրոկե-փաղք (= Երկայնագլուխք, այլոց՝ «Մա-կրոնք»), եւ նաւահանգիստն «Փսորոն, յե-տոյ հելլենական քաղաքն Տրապիզուս»: Վեր-ջինս Տրապիզոնն է, իսկ «Փսորոն» է նաւա-հանգիստն արդի Սիւրմենէի, հնոցմէ նաեւ «Հիւսսի» կոչուած: — Այսչափ ուրեմն՝ արդի Լազիստանի եւ Համշէնի ու Սեւ Գետոյ ծովեզերաց մասին՝ այս հնութեան մէջ ալ:

Բնականապէս նոյն հնութեան համեմատ են մնացեալքն ալ: Հոս նշանակենք, առանց անդրադոյն դիտողութեանց, հետեւեալները· «Մակրոկեփաղներէ ետքը կու գան Մոսիւ–նիկք եւ նաւահանգիստն Զեփիւրիոս եւ հել-լենական քաղաքն Քոյրադէս, եւ կղզի Արեաց· աստնք լեռները կը բնակին: — Մո-

սինիկաց կը յաջորդեն Տիբարենացիք: — Տիբարենացիներէն ետքը կու գան Խաղիւբք, եւ անքոյթ փակեալ նաւահանգիստն Գենետէս եւ հելլենական քաղաքն Ամենիա եւ հելլենական ակառն Ասինիա: — Խաղիւբաց կը յաջորդեն Ասորիք, եւ գետն Թերմոդոն եւ հելլենական քաղաքն Թեմիսկիւրա եւ գետն Լիւկաստոս՝ համանուն հելլենական քաղաքով. յետոյ գետն Աղիւս եւ հելլենական քաղաքներս Կարուսա, Սինոպէ եւ Կերասուս. յետոյ գետն Օքերիանոս եւ հելլենական քաղաքն Հարմենէ՝ նաւահանգստով եւ հելլենական քաղաքն Տետրակոս: — Ասորւոց կը յաջորդեն Պափղագոնացիք» են: — Միակ դիտողութիւն մ'ընենք: «Ասորիք» ի հարկէ «Սպիտակ-Ասորիք»ն են, զոր արդէն Հեկատէոս կը յիշէ, որ միանգամայն դիտէ Ամիսոս քաղաքն (արդի Սամսոն), զոր Սկիւլաքս չի յիշեր «Սպիտակ – Ասորիք», (Լեւկո-Սիւրիա) կը կոչուէին ի հարկէ զանազանելու համար. բուն Ասորիքէ, եւ այս անուանակոչութիւնն բաւական ժամանակ տեւած է, նշանակելով Գամիրք, մանաւանդ անոր հիւսակողմը: Թէ ուստի՛ է այս յորջորջանքը, մթին խնդիր մըն է, զոր հոս չենք շօշափեր:

Փոքր-Ասիա, ուր ըստ Հերոդոտեայ իբր երեսուն ազգեր կը բնակէին, բախտի որոշում մ'ունեցաւ՝ երբ Կիւրոս Զ. դարուն կիսուն (547ին) խորտակեց Լիւդական իշխա-

նութիւնը, զոր Կրեսոս կրցած էր Եգէական ծովէն տարածել մինչեւ Ալիւս գետ: Պարսկական տիրապետութիւնը բովանդակ Փոքրուն Ասիոյ պիտի բերէր վարչական լիակատար փոփոխութիւն այս ամէն աշխարհաց համար: Հերոդոտեայ տուած տեղեկութիւնքն Դարեհի սատրապութեանց, ինչպէս նաեւ յետոյ Քսենոփոնի տեղեկութիւնքն իւր Բիւրուն դարձին առթիւ նկարագրած աշխարհաց մասին՝ կարեւոր են ոչ միայն ընդհանրապէս հայ պատմութեան համար, այլ առանձնապէս նաեւ Տայոց ու Սպերացւոց. ուստի զանոնք պիտի տեսնենք: Հոս դիտենք միայն քանի մը գլխաւոր կէտեր: Դարեհի Վշտասպեայ (521—485 Ն. Ք.) Սատրապութիւնքն կամ նախարարութիւնքն աշխարհագրական բաժանումներ չէին. ընդհակառակն աւելի կամ նուազ մեծ աշխարհներ էին՝ որոնք այլեւայլ ազգեր կը պարունակէին: Այս բաժանմունք ի վերջոյ հարկաբաժիններ էին, որոնք՝ իբր այնպիսի ալ՝ միութիւն մը կը կազմէին: Արդ Դարեհի ԺԸ. շրջանը կը կազմէին Մատիենացիք, Սասպիրք (ապադայ՝ Սպերացիք) եւ Արարատեանք (Այրարատ), որոնք 200 տաղանդ պիտի հատուցանէին (Հերոդ. ԺԳ, 94): Այս շրջանին Սասպիրացիք կը նստէին Կողքիսացւոց քով՝ անոնց եւ Մարաց միջեւ (Հերոդ. Ա, 104. Դ, 37): Այս արեւելեան Հայաստանի քով կայ բուն «Արմանիյա» կամ Արեւմտեան Հայաստանը. որ Դարեհի ԺԳ. հարկաբաժինն

է, զոր կը կազմէին Բակտրիւկացիք, Հայք եւ «իրենց դրացիք մինչեւ Պոնտոս Եւքսինոս», որոնք 400 տաղանդ պիտի տային (Հերոդ. Գ, 93)։ Վերջին բացատրութիւնս կը ցուցնէ թէ Դարեհեան այս Հայաստանը մինչեւ Սեւ ծով կը հասնէր, — մեր պատմութեան մէջ այն ցանցառ շրջաններէն մին, երբ մենք մինչեւ Սեւ ծով հասած ըլլանք՝ բայց օտար վարչական բաժանմամբ։ Խաղտեան ցեղերու մաս մ'ուրեմն ենթարկեալ էր արդէն Հայաստանի, եւ այս ժամանակէն՝ եթէ ոչ աւելի կանուխ ալ սկսած ըլլալու են այն խառնուրդները («Հայաքաղիւրք» եւն), որոնք երբեմն շատ տարածուած ըլլալու են՝ նաեւ այն գաւառներն, որոնք յետոյ լիովին հայացած են (Փոքր–Հայք, Բարձր–Հայք, Տայք եւն)։

Սակայն այս ծովեզերքը դոյզն մաս մը մի միայն կրնար ըլլալ, թերեւս լոկ իսկ արդի Տրապիզոնէ արեւելք եղած փոքր մասը, ուստի մեզի համար կարեւոր՝ Սեւ Գետ ու Համշէն գաւառներով։ Որովհետեւ ուրոյն հարկաբաժին մը կը կազմեն նաեւ ծովեզերեայ ցեղերը. «Մոսքացւոց, Տ'ըաէ Հերոդոտոս, Տիբարենացւոց, Մակրոնաց, Մոսինեկաց եւ Մարեաց վրայ դրուեցան 300 տաղանդ։ Այս է ԺԹ. շրջանը» (Գ. 94)։ Արդ հոս կարեւոր կէտ մը կայ։ Այս շրջանը շատ փոքր է՝ համեմատութեամբ այն աշխարհաբաժնին զոր մինչեւ հիմա տեսանք Սեւ ծովու ափանց այս ժողովրդոց

համար։ Բացի այն մասէն՝ որ Հայաստանի տրուած էր, մեծ մաս մ'ալ բաժնուած էր ուրիշ սատրապութեան։ Անոր համար հոս Խաղիւք չեն յիշուիր — թէեւ ասոնք անծանօթ չեն ընակապէս Հերոդոտեայ, որոնք երբեմն ոչ միայն մինչեւ Աղիւս, այլ անկէ անդին ալ մինչեւ Սինոպ կը նստէին։ Ասոր փոխարէն տակաւին այս ծովեզերքն եւ Մոսկացիք՝ Տիբարենացւոց քով՝ ուրեմն իրենց մեծ շրջանին սկիզբներն են եւ ասկէ ետքը արագ անցած ըլլալու են դէպ ի արեւելք։ Այսու հանդերձ այստեղ յիշուած Մոսքացիք կրնան միայն մնացորդ մաս մ'ըլլալ ազգին, որ յետոյ ալ այս կողմերը կը յիշուի, մինչ բուն ժողովուրդն արդէն աւելի արեւելքն էր՝ այս ժամանակ իբր Ճորոխի բերնին կողմերը։ Խաղիւքներու աշխարհի կարեւոր մէկ մասը, մանաւանդ՝ այն որ Աղիւս գետոյ արեւելակողմը կը տարածուէր մինչեւ Հիրիկ եւ աւելի արեւելք ալ մինչեւ Թերմոդոն (արդի՝ Թէրմէ) սկսած էին բռնել Գամիրք, որոնք՝ ինչպէս Հերոդոտ քանի մ'անգամ կը կրկնէ, Յոյներէն «Սպիտակ-Ասորիք» կը կոչուէին[9]։ Անոր համար Գ. հարկաբաժինն, որ շատ ընդարձակ էր, կը կազմեն՝ Հելլեսպոնտացիք («մօտը այ կողմը»), Փռիւգացիք, Ասիական Թրակա-

[9] Herodoti Historiarum Libri IX., curavit R. Dietsch, Lipsiae 1876/1931 Գիրք Ա. 72—76, Գ. 9. Ե. 49, Է. 72։

ցիք (= Բիւթանացիք) Պափղագոնացիք, Մարիանդինացիք եւ Ասորիք, որոնք 360 տաղանդ կու տան: Բայց այս Գամիրք–Կապադովկիա տակաւին փոքր էր, չէր հասներ իսկ Ալիւս գետոյ աղեղը. անոր համար ապագայ Գամրաց մայրաքաղաքն իսկ Մաժակ–Կեսարիա՝ ուրիշ աշխարհաբաժնի կը վերաբերէր, այն է՝ Կիլիկիոյ, որ շատ մեծ աշխարհ մըն էր եւ առանձինն կը կազմէր Դ. հարկաբաժինը՝ տալով ոչ միայն 500 տաղանդ արծաթ, այլ նաեւ 360 սպիտակ ձի. (Գ, 90): Հին աշխարհի այս բաժանմամբ կը մեկնուին այն պէսպէս տեղեկութիւնքն, որոնք՝ առանց այս իրերը պայծառ ըմբռնելու, մթին ու շփոթ պիտի երեւային: Նախ կը հասկցուի ուրեմն թէ ինչպէս Ալիւս գետը (արդի՝ Գըզըլ–Ըրմաք) կը բղխէր նաեւ Հայոց լեռներէ. այսինքն՝ իրական Փոքր–Հայքէ, որ հետաքրքրական՝ թէեւ նաեւ մերայնոց սակաւածանօթ աշխարհ մըն է: Այս Փոքր–Հայք, զոր լաւագոյն գիտեն յետոյ դասականք, կը վերաբերէր այս շրջանին վերոյիշեալ ԺԳ. հարկաբաժնի կամ Հայաստանի: Գետը կը հոսէր Կիլիկիոյ մէջէն դէպի հիւսիս դարձած՝ եւ Մատիենացւոց (— որոնք մինչեւ իբր ապագայ Կեսարիոյ կողմերը կը բնակէին —) եւ Փռիւգացւոց գաւառները բաժնելէն ետքը՝ կը բաժնէր Ասորա–Գամրաց ու Պափղագոնացւոց երկիրները: Այս կէտերն որոշ կը նկարագրէ Հերո–

դոտոս (Ա, 72), երբ Կիւրոսի եւ Կրեսոսի պատերազմին պատմելու ատեն կը գրէ. «Կապպադովկացիք (οἱ Καππαδόκοι) Հելլէններէ Ասորիք (Σύριοι) կը կոչուին. եւ այս Ասորիք՝ Պարսից տիրապետութենէ յառաջ Մարաց հպատակ էին, իսկ այս ատեն՝ Կիւրոսի: Որովհետեւ Մարական եւ Լիւդական իշխանութեանց սահմանն էր Ալիւս (ὁ Ἅλυς) գետ, որ կը հոսի Հայաստանի լեռնէն Կիլիկիոյ միջէն (ἐξ Ἀρμενίου οὔρεος διὰ Κιλίκων). յետոյ զՄատիենացիս (իւր ընթացից) աջակողմն ունենալով կը հոսի, «իսկ զՓռիւգացիս միւս կողմը. եւ զասոնք բաժնելով իրարմէ եւ հոսելով աւելի վեր դէպի հիւսիսակողմը» հոն ալ կը սահմանէ զԱսորի-Գամիրս (Συρίους Καππαδόκας.) իսկ ձախ կողմը՝ զՊափղագոնացիս: Այսպէս Ալիւս գետը կը կտրէ գրեթէ ամբողջ Ասիա (= Յառաջակողման) Կիպրոսի առջեւի ծովէն մինչեւ Եւքսինեան ծով: Այս ամբողջ երկրին պարանոցն է» եւն[10]: — Այս պարագային ըմբռնելի կ'ըլլայ միանգամայն թէ Կիլիկիա, որ մինչեւ Եփրատ կը հասնէր, հոն կը սահմանակցէր Հայաստանի եւ Եփրատ կը բաժնէր զՀայաստան ու Կիլիկիա գրեթէ այնչափ եւ այնպէս՝ ինչպէս յետոյ դարերով զՀայաստան ու զԳամիրս: Արիստագորայ վերագրուած այն ուղեգրութեան մէջ, որ Աքամենեան պետութեան արքունի պողոտան կը

---

10 Herodot, անդ Ա. 72:

նկարագրէ, Լիւդիացւոց եւ Փռիւգաց յիշատակութենէ ետքը կ'ըսուի «Փռիւգացւոց կը յաջորդեն Կապպադովկացիք, զորոնք մենք Ասորիք կը կոչենք։ Ասոնց սահմանակից են Կիլիկեցիք, որոնք կը բնակին մինչեւ այն ծովը, որուն մէջ է Կիպրոս կղզի։ Ասոնք թագաւորին տարեկան 500 տաղանդ տուրք կը հատուցանեն։ Այս Կիլիկեցւոց քով կը յաջորդեն Հայք (Ἀρμένιοι), եւ ասոնք խաշնաւէտ են (πολυπρόβατοι «շատ ոչխար» ունին ուրեմն Հայք...) Հայոց քով կը յաջորդեն Մատիենացիք այն աշխարհին մէջ» եւն. (Հերոդ. Ե, 49)։ Ուղւոյն հանգրուանները եւ հրասախով չափերն ալ կու տայ Հերոդոտոս, որոնցմէ մեզի համար կարեւոր կէտերն են (Հերոդ. Ե, 52). «Փռիւգիոյ կը յաջորդէ Ալիւս գետ». հոն «դուռ» կար ուսկից հարկ էր անցնիլ՝ գետն անցնելու համար, եւ հոս մեծ պահակ կար։ «Ի Կապպադովկիա մտնելով» եւ ճանապարհորդելով մինչեւ Կիլիկեցւոց սահմանքը», կան 28 հանգրուանք (իջեւաններ) եւ 104 հրասախ»։ Հոս ալ սահմանին վրայ «երկու դրունք» կան անցնելու եւ կրկին պահականոցներ։ Կիլիկիոյ մէջ միայն 3 հանգրուան ունի ուղին եւ 15$^{1}/_{2}$ հրասախ երկայն։ Ասկէ ետքը՝ «Սահման Կիլիկիոյ եւ Հայաստանի (οὖρος δὲ Κιλικίης καὶ Ἀρμενίης) է գետ՝ նաւարկելի նաւաց, անունն Եփրատ (Εὐφρήτης «Եփրետէս»). իսկ Հայաստանի մէջ են հան-

գրուանք իջեւանաց 15, իսկ հրասախք 56 եւ կէս. (Նաեւ այս տեղեր պահականոց (φυλακτήριον) կայ»: Կը յաջորդէ կտոր մը Հայոց գետերու վրայ, յատկապէս առաջինը Տիգրիս եւ չորրորդը՝ Գինդէս, որ գոնէ մթին է, բայց մեզի համար հոս կարեւոր չէ[11]: «Այս Հայաստանէ մտնելով Մատիենացւոց երկիրը (εἰς τὴν Ματιηνὴν γῆν)՝ չորս հանգրուանք են»: Մնացեալը մեզի կարեւոր չէ. — Ցամենայն դէպս Հայաստան հոս, ուսկից ուղին կ՚անցնէր, միայն հարաւային արեւմտեանն էր, այսինքն՝ ապագայ Ծոփք ու մասամբ Աղձնիք: Ճամբան կարճ էր այն ժամանակի Կիլիկիոյ մէջ, որուն մէջ էր Մելիդ, ապագայ Մելիտենէ, արդի Մալաթիա: Անկէ կ՚անցնէր ուղին՝ գետէն անդին մտնելու համար Հայաստան: Ուստի ուղեգիծն այն է որ դարեր ու դարեր ետքն ալ գլխաւոր ուղին էր, որչափ ալ փոփոխուեցան պետութիւնք եւ եղան նոր քաղաքներ եւն. (իբր՝ Անկիւրիա — Սեբաստիա — Մելիտենէ եւն):

Այս միեւնոյն աշխարհաբաժինները կ՚երեւան նաեւ այն նկարագրութեան մէջ, զոր Հերոդոտոս կու տայ Քսերքսէսի բանակին յիշելով իւրաքանչիւր ազգ ու իրեն սպառազինութիւնը (է, 61 եւն): Միայն թէ հոս Հայաստան ուրոյն չի ներկայանար, ինչպէս միւս բաժինները, այլ կցուած Փռիւ-

[11] Herodot, անդ Ե. 52:

գիոյ հետ, որմէ աշխարհագրօրէն բաժնուած էր: Փռիւգացիք, կ'ըսէ, գրեթէ Պափղագոնացւոց սպառազինութիւնն ունէին՝ փոքր տարբերութեամբ: Ասոնք՝ ըստ Մակեդոնացւոց գրոյցին, ցորչափ Եւրոպա կ'ապրէին եւ բնակակից Մակեդոնացւոց, Բրիգ կը կոչուէին. բայց յԱսիա անցնելէն ետքը փոխեցին անունն» աշխարհին հետ՝ Փռիւգացի: Ապա Հայք սպառազինուած Փռիւգացւոց պէս, անոնց սերունդ ըլլալով (Ἀρμένιοι... ἐόντες Φρυγῶν ὄποικοι): Այս երկուքին հրամատար էր Արտոքմէս, որ Դարեհի մէկ դուստրն ունէր «կնութեան» (Է. 73): Ուստի այս տեղւոյ համաձայն, զոր այլեւայլ բանասէրք՝ Փռիւգական ցեղէ ըլլալու գլխաւոր փաստ կը բերեն, Հայք ու Փռիւգացիք մէկ բանակ կը կազմեն՝ միակ հրամատարի տակ, թէեւ՝ աշխարհները սահմանակից չէին, այլ միջանկեալ կար Գամիրք ու Կիլիկիա այն ժամանակի: Միւսները կը յիշուին համեմատ իրենց դրից. եւ Նախ Պափղագոնացիք, որոնց սպառազինութեան նման, կ'ըսէր, Հայոցն ու Փռիւգացւոցը, «ունէին ոլորածոյ սաղաւարտներ իրենց գլուխը, եւ փոքր վահաններ եւ ոչ մեծ նիզակներ. բայց սատի՝ նետեր ու դաշոյններ. եւ իրենց ոտքը՝ տեղացի կօշիկներ՝ որ մինչեւ սրունքի կէսը կը հասնէին»: Ասոնց հետ էին յարչաւանին՝ «Ապա Լիւգացիք, եւ Մատիենացիք եւ Մարիանդինացիք եւ Ասո—

րիք կ՚արշաւէին (ի բանակին էին)՝ Պափղագոնացւոց սպառազինութիւնն ունենալով։ Բայց այս Ասորիք Պարսիկներէ Կապպադովկացի կը կոչուին։ Արդ Պափղագոնացւոց ու Մատիենացւոց կ՚իշխէր (հրամատար էր) Դոտոս, որդի Մեգասիդրայ. իսկ Մարիանդինացւոց, Լիւդիացւոց եւ Ասորւոց կը հրամայէր» «Գոբրիւաս, որդի Դարեհի եւ Արիստոնեայ» (է, 72)։

Կը յաջորդեն Փռիւգացիք ու Հայք (է, 73)· Լիւդացիք ու Միւսացիք (է, 74), «Թրակացիք ···յԱսիա Բիւթանացիք կոչուած» (է, 75) եւ կը կցուի հատուած մ՚որուն սկիզբը խանգարուած ըլլալով՝ ազգի կամ աշխարհի անունը չի կարդացուիր։ Ոմանք կ՚ուզեն հոս ճշդիւ «Խաղիւբ» կարդալ, թէեւ այս անունը չի դներ Հերոդոտ վերոյիշեալ հարկաբաժիններու մէջ։ Ջխարդ եւ իցէ այս բաժինն է «···ունին կաշեայ փոքր վահաններ, եւ իւրաքանչիւրն ունի երկու որսի շամփուր՝ Լիւկիոսկերպ գործուած (λυκιοεργέας)։ Իրենց գլխուն վրայ՝ պղնձի սաղաւարտներ, եւ սաղաւարտին վրայ եզան ականջ ու եղջիւրներ՝ պղնձէ, եւ վերը՝ ցցունք. իսկ սրունքը պատած էին ծիրանեգոյն լաթերով։ Այս արանց քով պատգամատեղի մը կայ Արեայ»· (է, 76)։ — Կը յաջորդեն «Կաբեղացիք, որ Լասոնք կը կոչուին, եւ ունին Կիլիկեցւոց սպառազինութիւնը, եւ Միւղիւացիք

(Է, 77), եւ աստ կը կցի Պոնտական ազգաց վերաբերեալ մասը: «Այս Մոսքացիք (Μόσχοι), կ'ըսէ, իրենց գլուխը փայտեայ գլխանոց, եւ փոքր վահաններ ու նիզակներ, որոնց սայրերը սակայն մեծ էին: Այս Տիբարենացիք (Τιβαρηνοὶ) եւ Մակրոնք (Μάκρωνες) եւ Մոսինիկք (Μοσύνοικοι)՝ սպառազինուած Մոսքացւոց նման՝ կ'արշաւէին (ի բանակին էին): Զասոնք կը ճակատեցնէին հրամատարք այսպէս. զՄոսքիացիս ու Տիբարենացիս՝ Արիոմարդոս, որդի Դարեհի եւ Պարմիսեայ՝ (դստեր) Սմերդեայ, (որդւոյ) Կիւրոսի. իսկ զՄակրոնս եւ զՄոսինիկս՝ Արտաւկտէս, որդի Քերասմեայ, որ կը կառավարէր զՍեստոս ի Հելլեպոնտոս» (Է, 78): — «Այս Մարք (Μᾶρες), իրենց գլուխը տեղացի ոլորածոյ սաղաւարտներ ունէին ու փոքր կաշեայ վահաններ եւ նետեր: Այս Կողքիսացիք (Κόλχοι) իրենց գլուխն փայտեայ սաղաւարտ ունէին եւ եզան կաշեայ փոքր վահաններ եւ կարճ նիզակներ, բաց աստի՝ սրեր ունէին. Մարեաց եւ Կողքեաց կը հրամայէր Փառանդատէս, որդի Տէասպեայ: Այս Ալարոդեանք (Ἀλαρόδιοι) եւ Սպերացիք («Սասպիրք»՝ Σάσπειρις), Կողքիացւոց նման (սպառազինուած): Ասոնց կը հրամայէր Մասիստիոս որդի Սիրոմիդորեայ» (Է, 78): — Այս վերջինն ուստի արեւելեան Հայաստան է կամ Դարեհեան ԺԸ. հարկաբաժինը՝ զոր տեսանք, ինչպէս որ նախըն-

թայը՝ Սեւ ծովու ազգաց մասն ալ՝ համեմատ է ժԹ. հարկաբաժնին, որ սակայն կրկին հրամատարութեան բաժնուած է: Առհասարակ հրամատարութիւնքս հետաքրրքրական պէսպիսութիւններ կը ներկայացնեն՝ հանդէպ ընդարձակ սատրապութեանց կամ աւելի հարկաբաժանմանց:

Իբր դար մ'ետքն ուրիշ նշանաւոր յոյն մատենագիր մը՝ Քսենոփոն[12]՝ կարեւոր տեղեկութիւններ կու տայ, եւ այն՝ ո՛չ միայն ծովեզերեայ մասին, այլ ինչպէս ընդհանրապէս Հայաստանի՝ նոյնպէս մանաւանդ այն բաժնին մասին, ուր տարածուած էին Տայք, Խաղխուրք եւն: Որչափ ալ յաճախ անորոշ, քիչ անգամ որոշ անուններով՝ միշտ թանկագին են Քսենոփոնեայ այս տեղեկութիւնքն, գրուած ականատեսէ մը՝ նկարագրելով Ե. դարուն ճիշդ վերջին տարւոյ (401/400) վիճակը, երբ Յունաց Բիւրն՝ Կիւրոսի Կրտսերոյ պարտութենէ ու մահուանէ ետքն, ստիպուած էր իրեն ճամբայ մը բանալ դէպ ի ծով Հայաստանի մէջէն: Քսենոփոնի, որ ինքնին զօրավարաց մին էր, նկարագրած Բիւրուն նահանջի գիծը ճշդել փորձած են այլեւայլ գիտնականք: Նորերէն կը յիշենք Հոֆմայստէրի գործն անոր համար

[12] Xenophons Anabasis, herausgegeben von Andreas Weidner, Wien 1894, էջք 320:

որ Հայ թարգմանութիւն մ՚ալ ունեցաւ[13]: Այստեղ կը յիշենք միայն քանի մը կարեւոր կէտերը· քանի որ ուրիշ տեղ մը քիչ մ՚աւելի մանրամասն պիտի տեսնենք: Նախ նշանակենք նոյն Քսենոփոնդեայ[14] ուրիշ մէկ երկին՝ Կիւրախրատի մէկ կարեւոր պարագայն: Որչափ ալ այս երկը յատուկ մտօք պատմական երկասիրութիւն չըլլայ, յարմար նկարագրութիւն մ՚ըլլալու այն ժամանակի Հայաստանի այն մասանց համար, ուր Հայք եւ Խաղտիք (Χαλδαῖοι, «Քաղդեացի» թարգմանուած) խառն կը բնակէին, այնպիսի դրիւք՝ որ կը յիշեցնէ արդի իսկ խաշնարոյծ Քրդաց ու երկրագործ Հայոց վիճակը: Ըստ այսմ իրերն այնպէս էին որ Խաղտիք լեռներու շարք մը բռնած էին եւ արօրներ ունէին» «Հայք՝ դաշտերն ու հովիտներն ու արտորայքն»: Խաղտիք պատերազմասէր էին, վարձկան ալ կ՚ըլլային, բայց աղքատ էին· «իրենց աշխարհն ալ լեռնային է»· ուստի իջնալով կը կողոպտէին: Կիւրոս հաշտեցուց զանոնք եւ դաշինք դրուեցաւ Խաղտեաց ու Հայոց թագաւորի միջեւ· պարսպաւոր պահականոց մ՚ալ շինուեցաւ եւն («Կիւրոսի Խրատ» Գ, բ, 1—31, եւն): Կարեւորագոյն են

---

13 Հօֆմայսթըր Է․, Հայաստանի մէջէն, գերմաներէնէ թարգմանեց Ետան, Կ․ Պոլիս 1913:

14 Քսենոփոնտեայ, Կիւրոսի խրատք, թարգմ․ Գաթըրճեան Հ․ Յ․, Վիեննա 1843:

«Արչաւանաց» Դ. գրոց տեղեկութիւնքն. Ցունաց բիւրն՝ հարաւէն գալով՝ կը սոփ-պուի Եփրատի աղբերականց մօտերն եղել (Արածանի) : «Արեւմտեան Հայաստան» (Ἀρμενία ἡ πρὸς ἑσπέραν) էր երկիրն, որուն կուսակալն է Տրիբազ (Դ, դ, 4). որուն զօրաց մէջ կային «վարձկան Խաղիւրք եւ Տայք» (Դ, դ, 18) : Արդէն Հայաստանէ առքը «մերձաւոր աշխարհն Խաղիւրացն է» (Դ, ե, 34) : Կը հասնի Փասիս գետը (τὸν Φᾶσιν ποταμὸν), որ ի հարկէ Բասենոյ-ջուրն է (Մուրց), եւ քիչ մ'առքը կը դիմադրեն «Խաղիւրք եւ Տայք եւ Փասիանցիք (Բասենացիք. Χάλυβες, καὶ Τάοχοι καὶ Φασιανοί Դ, զ, 4—5) : Ցոյնք կը մտնեն Տայոց երկիրը (εἰς Ταόχους, Դ, է, 1). յետոյ կ'անցնին «Խաղիւրաց» երկրէն (Դ, է, 15), եւ հետաքըր-քրական տեղեկութիւններ կը տրուին սոցա սպառազինութեանց մասին (Դ, է, 15—17) : Կ'անցնին Հարպասու գետը (τὸν Ἅρπασον ποταμὸν) եւ կը մտնեն Սկիւթացւոց (Σκυθινῶν) աշխարհը (Դ, է, 18) : Անկէ՝ քան հրասախ անդին՝ կը հասնին «մեծ եւ ճոխ ու բազմամարդ քաղաքն, որ կը կոչուէր Գիւմնիաս (Γυμνίας. Դ, է, 19). Հինգ օրէն կը հասնին «սուրբ լեառն», որուն անունն է Թեքէս (Θήχης, Դ, է, 21) : Այս լերան գագաթէն էր որ ծովը նշմարելով՝ աղաղակեցին Ցոյնք՝ «ծո՛վ, ծո՛վ» (Դ, է, 24) : Կը մտնեն Մակրոնաց երկիրը (Դ, է, 27) որ գետով մը բաժնուած էր Սկիւթենացւոց աշ-

խարհէն (Դ, ը, 1)․ եւ երեք օրէն կը հասնին Կողքեաց լերինքն, ու այստեղ Ցոյնք ուտելով պոնտական մեղրը՝ հիւանդացան։ Վերջապէս կը մտնեն Տրապիզոն՝ «յաշխարհին Կողքեաց» (Դ, ը, 8—9, 20—22, եւն)։

Անցողակի դիտենք թէ այս ուղեգիծն որոշելու համար պէտք էր ճշդրտել Հարպասոս գետն, ու Գիւմնիաս քաղաքն ու Թեքէս լեռը։ «Հարպասոս» սովորութիւն է Ճորոխն ընդունիլ․ բայց միւսներու մասին կարծիքները շատ կը տարբերին։ Հոֆմայստէրի կարծեօք[15] Ցոյնք՝ Արածանւոյ աղբերականց մօտէն (արդի Կարաքիլիսէի վրայէն) եւ Երասխի հովիտը ի Բասեն (արդի՝ Քէօփրիւ-քէօյի քով) եւ այնուհետեւ բնականապէս հետեւած Դարոյնք (Հասանկալայ) ու Կարին գծին։ Կարնէն անցած ըլլան Սպեր՝ հին ուղիով (ո՛չ Թորթումի գծով), ուր ուրեմն հասած են Հարպասոս (Ճորոխ) գետն։ Այնուհետեւ գետն ի վեր հասած ըլլան Բաբերդ, որ ըլլայ նոյն ինքն «Գիւմնիաս» բազմամարդ ու ճոխ քաղաքը։ Ուղեգիծն այնուհետեւ գրեթէ արդի Թրքական ռազմուղին կ՚ընդունի Հոֆմայստէր․ իսկ այն Թեքէս լեռն, ուր ծովը տեսան Ցոյնք, ուղղակի արդի Զիգանայի բարձունքը։ Եթէ ընդհանրապէս իսկ ուղիղ ըլլայ այս մեկնութիւնը,

---

15 Hoffmeister, Durch Armenien, Leipzig u. Berlin 1911, էջ 240—251։

Կարնէն Սպեր՝ զետեղելու են Տայք եւ Խաղխուրք· բայց որ կարեւորագոյնն է՝ Բաբերդ կ՚իյնայ Սկիւթենացւոց (= «Փոքր Սկիւթաց») աշխարհին մէջ։ Վերջինս ուրեմն Բաբերդ — Կիւմիւշխանէ — Արտասա — Ջիղանա գիծը կը պարունակէր։ Ուրիշ գիտնականք տարբեր կը գծեն, որու մասին ուրիշ տեղ։

Պոնտական ափանց մնացեալ մասն ի հարկէ ընդարձակ է Քսենոփոնի նկարագրութեան մէջ։ Մեր նպատակին համար կը բաւէ դիտել թէ Յոյնք ամիս մը կեցան ի Տրապիզոն։ Բայց ուտեստ գտնելու համար արշաւանքներ կ՚ընէին դրացի ցեղերու երկիրները։ Այսպէս՝ արշաւեցին «Դրիղաց աշխարհ»ը (εἰς Δρίλας), որոնք իրենց սարերէն յաճախ կողոպտած էին Տրապիզոնի հողը։ Դրիղները կը նկարագրուին իբր պոնտական ցեղերու ամէնէն աւելի պատերազմասէր տոհմը. իրենց փայտակերտ գլխաւոր վայրն, զոր «մայրաքաղաք» կը կոչէին առնուեցաւ ու հրդեհեցաւ (Ե, Բ, 1 եւն)։ Վերջապէս ցամաքէն ճամբայ ելլելով՝ երեք օրէն կը հասնին «Կերասուս (εἰς Κηρασοῦντα), յունական քաղաք, ծովու վրայ, Սինոպացւոց հաստուած (գաղթական) Կողքիս աշխարհի մէջ» (ἐν τῇ Κολχίδι χώρα· Ե, Գ, 2)։ — Կը հասնին Մոսինիկաց սահմանն։ Այս ցեղն բաւական տարածուած կը նկարագրուի, որուն

այլեւայլ տոհմերն ալ իրարու դէմ կռուոյ մէջ էին: Մի մասին հետ դաշնակցելով՝ միւսին դէմ կռուելով կը յառաջանան Մոսինիկեցւոց աշխարհին մէջ, ուր կը նկարագրուին՝ անոնց միարուն ծառէ «նաւ»երը, որ երեք հոգի կը պարունակէին, իրենց սպառազինութիւնքն եւն, եւ վերջապէս առումն ու հրկիզումն անոնց գլխաւոր «քաղաքին, զոր մայրաքաղաք կը կոչէին» եւ որ «ամրավայրն էր Մոսինիկեցւոց», եւ այն ակառան վրայ կառուցուած փայտակերտ աշտարակի մը մէջ (ἐν τῷ μόσυνι) կը բնակէր թագաւորը» եւն: Այս «սպիտակ» ցեղն ամէնէն աւելի խուժադուժ կը նկարագրուի. իրենց երկիրը խոր ու լեռնային, գիւղերը դէմ առ դէմ եւն (Ե, Դ, 1—34) — Ութ օր կը տեւէ ճամբան Մոսինիկաց երկրի մէջ եւ «կը հասնին Խաղիւբաց երկիրը» (εἰς Χάλυβας). ասոնք սակաւաթիւ են եւ հպատակ՝ Մոսինիկացւոց, եւ շատերուն կեանքն (ապրուստն) մետաղագործութիւն է (ἀπὸ σιδηρείας յերկաթագործութենէ): Անկէ կու գան Տիբարենացւոց երկիրը» (Ե, Ե, 1): Կարեւոր է այս դիտողութիւնը: Խաղիւբներն՝ որ երբեմն ա՛յնչափ տարածուած էին ծովեզերքս, ստիպուած էին արդէն այսչափ կանուխ ալ տեղի տալ հին ու նորեկ ցեղերու, եւ այսպէս սակաւաթիւ եղած են հոս, մինչ տեսանք որ անոնք տակաւին մեծ ույժ կը կազմէին «Արեւմտեան Հայաստանի» հիւսիսակող-

մանքը: — Երկու օր ուղեւորելով Տիբարենացւոց երկրին մէջ կը հասնին «Կոտիւորա (Κοτύωρα) քաղաք յունական, հաստուած ի Սինոպացւոց, շինուած Տիբարենացւոց աշխարհի մէջ» (Ե, ե, 3, եւն): Կոտիւորա՝ ինչպէս Տրապիզոն ու Կերասուս՝ տուրք կը վճարէին Սինոպացւոց, իրենց հասարակաց մայրաքաղաքին (Ե, ե, 10):

Մնացեալն այլեւս կարեւոր չէ մեզի համար. քանի որ Յոյնք ա՛յլ եւս չշարունակեցին ուղին ցամաքի վրայ, այլ Կոտիւորայէ նաւարկեցին՝ Սինոպացւոց առաքած նաւերով: Անոր համար ալ անցողակի կը յիշուին մնացեալքն, «Յասոնեան եզրն (τ' Ἰασονίαν ἀκτὴν) կ'ըսեն թէ Արգոյ (ἡ ᾿Αργὼ) նաւն հասած ըլլայ, եւ գետոց բերանները, նախ Թերմոդոնի, յետոյ Հիրիկի, ապա Ալիսի, եւ ասկէ ետքը Պարթենեայ, որոնց առջեւէն քերելով անցնելով՝ հասաւ Հերակղիա քաղաք յունական» են (Զ, բ, 1):

Վերոյիշեալ «Արեւմտեան Հայաստանի» նկարագրութիւնն Տրիբազի իշխանութեան ներքեւ ինքնին կը ցուցնէ թէ այս Դարեհի ԺԳ. սատրապութեան կը համապատասխանէ ընդհանրապէս: «Արեւմտեան» բացատրութիւնն ալ կ'ենթադրէ Արեւելեան մ'ալ, որ ուրեմն պիտի համապատասխանէ Դարեհի ԺԸ. հարկաբաժնին: Արշաւանքի սկիզբը՝ մասամբ ստորագրուած է ան ալ:

*Որովհետեւ երբ Ցոյնք պիտի մտնէին Հայոց երկիրը, հասան Կենտրիտէս գետն, իբր երկու վտաւան լայն, որ կը բաժնէ Հայաստանը՝ Կորդուաց աշխարհէ»* (Դ, գ. 1. τὴν Ἀρμενίαν καὶ τὴν τῶν Καρδούχων χώραν) : *Գետոյն միւս կողմը ճակատած էին «Հայք եւ Մարդացիք* (Μάρδοι) *եւ Խաղտիք վարձկանք, արք Որոնտասի* Ὀρόντου (*այս Արեւելեան Հայաստանի կուսակալին*) *եւ Արտուքայ»* : *«Խաղտիք ազատ կը համբաւուէին եւ քաջարի· իրենց զէնքերն էին՝ հիւսկէն երկայն վահան եւ նիզակ»* (Դ, գ. 4) : *Տակաւին միջոց մ'այս Արեւելեան Հայաստանի մէջ էին Ցոյնք, որոնք «անցան Տիգրիսի ակունքը»* (Դ, գ, 2) · *եւ երեք աւուր գնացքէ*, 15 *հրասախ, ետքը կը հասնին «Տելեբոասս գետ»ը* (τὸν Τελεβόαν ποταμὸν) : *Գետը մեծ չէր, բայց գեղեցիկ, եւ բազմաթիւ գիւղեր կային գետոյն շուրջը* (Դ, գ, 3) : *«Իսկ այս տեղը կը կոչուէր* Հայաստան Արեւմտեան» : (Ἀ ρ μ ε ν ί α ἐκαλεῖτο ἡ πρὸς ἑσπέραν) . *կուսակալ էր Տրիբազ* (ὕπαρχος δ'ἦν αὐτῆς Τιρίβαζος) , *արքային սիրելի բարեկամը» եւն* (Դ, գ, 4) · *եւն : Տելեբոասի վայրն ու երկիրն յարմար է Տարօնոյ, որ ուրեմն Արեւմտեան Հայաստանի մէջ էր : Իսկ Խաղտիք վարձկանք կը ծառայէին կրկին Հայաստաններու մէջ ալ, ինչպէս Տրիբազի, նոյնպէս՝ Որոնտասի :*

*Վերջապէս դնենք հոս Քսենոփոնի վերջաւորութիւնն, ուր յիշատակած է Պարսից*

այն նահանգներն, ուսկից Ցոյնք անցան արշաւանքին՝ ու նահանջի ատեն, որոնց մեծ մասը Թողուցինք՝ մեր նիւթին չվերաբերելով: Այս տեղն է. «Ասոնք են իշխանք արքայի աշխարհաց, զորոնք կտրեցինք անցանք. Լիւդեայ՝ Արտիմաս. Փռիւգեայ՝ Արտակամաս. Լիկաւոնեայ եւ Կապպադովկեայ՝ Միհրդատ. Կիլիկեայ՝ Սիւեննեսիս (Συέννεσις, բուն՝ տիտղոս մը). Փիւնիկէի եւ Արաբիոյ՝ Դեռնէս: Ասորւոց եւ Ասորեստանեայց՝ Բեղեսիս. Բաբելոնի՝ Հռոպարաս. Մարաց՝ Արբակաս. Բասեանացւոց եւ Սպերացւոց՝ Տրիբազ (Φασιανῶν καὶ Ἑσπεριτῶν վերջինս պէտք է ուղղել), իսկ Կորդուիք (Καρδοῦχοι) եւ Խաղիւբք (Χάλυβες) եւ Խաղտիք (Χαλδαῖοι) եւ Մակրոնք (Μάκρωνες) եւ Կողքիսացիք («Կողք»՝ Κόλχοι) եւ Մոսիւնիկք (Μοσύνοικοι) եւ Կոյտք (Κοῖτοι) եւ Տիբարենացիք (Τιβαρηνοὶ) ինքնիշխան (αὐτόνομοι) են: Պափղագոնեայ (իշխան է)՝ Կորիւղաս. Բիւթանացւոց՝ Փառնաբազոս. եւ Թրակացւոց յԵւրոպա՝ Սիւթէս» (է, ը, 25):

Ըստ այսմ քանի որ ապստամբ էին՝ ինչպէս ծովեզերեայ ազգերս՝ նոյնպէս Խաղտիք, Արեւմտեան Հայաստանի ծով հասնիլը իրականին արդէն դադրած համարելու ենք նոյն իսկ Քսենոփոնի օրով: Յաջորդ շրջանին ալ, երբ Մեծ Հայք երեւան կու գայ, նոյնն այնու իսկ չէր կրնար ըլլալ, որ այն միջոցին ուրիշ հզօրագոյնք պիտի տիրէին հետզհետէ

*բոլոր ծովեզերեաց: Միջոց մը միայն Փոքր-Հայք հասաւ ծովեզերք, քանի որ իրեն հետ էին նաեւ Խաղիք — Խաղտիք, մինչեւ որ այս ալ անջան որս եղաւ Պոնտոսի: Այս շրջանը համառօտիւ նկատենք այժմ:*

**§ 2. Յետ–Աղեքսանդրեան շրջան: Պոն–տոս, Գամիրք եւ Հայաստաններ:** — *Ամէն տեսակէտով լիակատար յեղափոխութիւն մը յառաջ բերաւ Աղեքսանդր Մեծ* (336—323): *Այնպիսի հսկայածաւալ պետութիւն մը՝ ինչպիսի էր Աքամենեանց տիեզերակալ իշխանութիւնը, քանի մը հարուածով լիովին ջախջախեցաւ: Գրանիկ գետի քով տրուած ճակատամարտը* (334)՝ *Մակեդոնացւոց ձեռքը ձգեց ամբողջ «Ասիա»՝ այսինքն՝ Եգէականէն մինչեւ Ալիւս ու Տաւրոս: Իսոսի ճակատը* (333) *բացաւ ճամբան դէպի Ասորիք, Եգիպտոս ու դէպի արեւելք. իսկ վճռական ճակատամարտն Արբեղայի կամ Գարգամելայի քով* (331) *վերջ տուաւ այն հզօր պետութեան: Արդ այս իրաց ազդեցութիւնը չէր կրնար ուշանալ: Արեւելք մակեդոնական–յունական ազդեցութեան ենթարկուած՝ ինքնին իսկ յառաջ պիտի գար վիճակ մը, որուն հետեւութեամբ բազմաթիւ ընիկ տարերք հետզհետէ պիտի հելլենային: Ամէնէն կանուխ եղած է նոյն ազդեցութիւնը յիշեալ «Ասիոյ» մէջ, եւ օրինակի համար Փռիւգացիք շատոնց աներեւոյթ կ՚ըլլան իբր ուրոյն ազգ ու լեզու: Աւելի դանդաղ պիտի ըլլար նոյնը՝ Ալիւսէ մինչեւ*

*Եփրատ տարածուող աշխարհաբաժնին մէջ, որովհետեւ հոս տեղական տարերք օդտուեցան առիթէն՝ անկախութիւն ձեռք ձգելու, որով ելան Պոնտոսի եւ Գամրաց թագաւորութիւնք: Բայց որչափ ալ դանդաղ՝ նոյն հետեւութիւնն եղաւ ի վերջոյ հոս ալ, եւ այսօր եւ ո՛չ տող մ'իսկ ունինք Գամրաց բնիկ լեզուաւ, որ կորսուած է՝ բացի դոյզն բառերէ, որ յիշատակուած են եւ քանի մը մնացորդներէ որ կը գտնուին այն երկրին արդի յոյն բարբառին մէջ[16]: Նոյն իսկ այն Պոնտական ազգերն, որոնք ի հարկէ երկար կրնային դիմադրել յունացման, քանի որ ամփոփուած լերանց մէջ լիովին վայրենի կը ներկայացնեն տակաւին Ստրաբոնի օրով եւ անշուշտ տակաւին երկար ալ մնացին, ի վերջոյ նոյն բախտն ունեցան: Եւ ինչպէս յետոյ դարերով իբր «յոյն» պիտի ներկայանային, պիտի գար օր մ'ալ որ՝ պատմութեան տարբեր տրամադրութեամբ՝ պիտի ներկայանային իբրեւ մահմետական եւ «Թուրք» իսկ: Հագիւ մաս մը (Լազք) իրենց լեզուն քիչ շատ կրցած են պահել, անոնք՝ իրենց երկրին մէջ ու մասամբ մօտերը: Նոյն բախտն ունեցան մասամբ արեւմտեան Հայք ալ, այսինքն Եփրատէ արեւմուտք եղողները, թէեւ հոս գոնէ ի սպառ անհետացած չեն: Եփրատէն անդին էր որ կանգ առաւ այս յու-*

---

[16] *Καϱολιδου Π., Γλωσσάϱιον συγκϱιτικὸν, ἑλληνοκαππαδοκικῶν λέξεων.* Smyrna 1885, pp. 221.

*նացումը, որմէ զերծ մնացին ուրեմն Մեծ Հայք։*

*Աղեքսանդրի հապճեպով հիմնած այն տիեզերակալութիւնն ինքնին տեւական չէր կրնար ըլլալ։ Հազիւ թէ աչքը փակած՝ սկսան այն անվերջ խռովութիւնք իւր զօրավարաց մէջ, որ պատմութեան մէջ ծանօթ է «Դայադատաց» պատերազմաց անուամբ։ Փռիւգիոյ մէջ Իփսոսի քով մղուած (արդի Աֆիոն-Գարահիսարի մօտերը) երեւելի ճակատամարտը (301ին) բերաւ ի վերջոյ ընդհանուր որոշում մը, որով չորս մեծ պետութիւնք կազմուեցան։ Թողլով Մակեդոնիան ու Եգիպտոսը՝ Ասիան բաժնեցին Լիւսիմաքոս ու Սելեւկոս։ Վերջինքս կարծես Աքամենեանց բուն ժառանգը պիտի ըլլային։ Սելեւկեանք (այս անուամբ սորական թուականութիւնը կը սկսի 312էն), արդէն տէր ընդարձակ աշխարհաց Եփրատէ մինչեւ Ոքսոս ու Ինդոս (307ին իսկ)․ յիշեալ բաժանմամբ առին նաեւ ո՛չ միայն Միջագետքն ու Ասորիքն, այլ նաեւ՝ գոնէ իբր գերիշխանութիւն՝ Հայոց աշխարհն ու Գամիրք եւ Պոնտական ափունքը մինչեւ Ալիւս գետ ու Տաւրոս։ Ալիւս գետն՝ ինչպէս երբեմն Կրեսոսի օրով՝ սահման եղաւ կրկին երկու մեծ պետութեանց։ Գետէն արեւմուտք՝ մինչեւ Եգէական ու Թրակիա՝ Լիւսիմաքեայ բաժինն էր։ Բայց նաեւ այս յատուկ մօտ Փոքր-Ասիան՝ երկար կռիւներէ ետքը՝ Սելեւկեանց ձեռք պիտի իյնար (282ին)․ որով*

կարծես նորոգուած էր հին մեծ պետութիւնը։

Սակայն պարագաները փոխուած էին մակեդոնական–յունական փոքրամասնութիւնը ի վերջոյ չէր կրնար լիովին ընկճել այն բազմաթիւ ազգերը, զորոնք՝ նոյն իսկ ընդհանուր գերիշխանութեան ներքեւ պահելու համար՝ անընդհատ ճգանց պէտք կար։ Հզօր էին շատոնց տեղացի բազմաթիւ տոհմեր, որոնք արդէն Դարեհի օրերէն ի վեր իշխան էին այլեւայլ սատրապութեանց նաեւ ժառանգական իրաւամբ։ Այսպիսեաց կարգէն էին՝ ի միջի այլոց՝ ինչպէս Որոնտեանց տունն ի Հայս, նոյնպէս Արիարաթներու եւ Միհրդատներու գերդաստանքն ի Գամիրս ու Պոնտոս։ Անոր համար ալ կանուխ իսկ կրցան ինքնուրոյն կեանք մը սկսիլ այլեւայլ մանր թագաւորութիւններ, ինչպէս Պերգամոն, Բիւթանիա ու Պափղագոնիա, նոյնպէս՝ Պոնտոս, Գամիրք եւ Հայք։

Այլեւայլ դէպքեր մեծապէս ազդեցին այս կողմանց պատմութեան վրայ։ Առաջինն է եւրոպական տոհմի մը՝ Գաղատացւոց գաղթը, որ իբր Դանուբի ափերէ գալով՝ Բոսփորն անցած՝ թափեցան հին Փռիւգիա եւ ի վերջոյ բռնեցին այն աշխարհն՝ որ իրենց անունը պահեց (278 ն. Ք.) — պատմական ժամանակի մէջ օրինակ մ'այն բազմաթիւ գաղթականութեանց, որ նախապատմական ժամանակները՝ Թրակիայէ անցած էին Յառաջակողման Ասիա, որոնց մէջ հաւանօրէն

Հայոց ալ մէկ տարրը։ Գաղատացիք երկար ատեն խռովայոյզ տարր մ՚եղան, մինչեւ որ Հռոմայեցիք՝ առաջնորդութեամբ Կն. Մա-նլիոն զօրավարին վերջ դրին այն խռովութեանց (189 Ն. Ք.)։ Գաղատիա, որուն գլխաւոր վայրն էր Անկիւրա, ազնուապետական վարչութիւն մ՚ունէր։ Այս արշաւանքը, որ մանրամասն նկարագրուած է եւ կարեւոր է աշխարհագրական տեսակէտով ալ, հետաքրքրական է այնու որ կը պարունակէ քանի մ՚անուններ՝ որոնք նաեւ ի Հայս կը գտնուին։ Բայց կարեւորն արդէն Հռոմէական այս միջամտութիւնն էր, որ դարերու համար պիտի որոշէր այնուհետեւ Փոքուն Ասիոյ պատմութեան բախտը։ Անգամ մ՚որ Հռոմայեցիք որոշեցին միջամտել Սելեւկեանց գործերուն, ամենամեծ յաջողութիւնն ունեցան սկզբէն իսկ։ Սելեւկոս Նիկատորի հինգերորդ յաջորդը, նոյն հարըստութեան մեծագոյն իշխանն իսկ, որ Մեծ տիտղոսն ալ կը կրէ, Անտիոքոս Գ. Մեծ (223—187) չարաչար պարտութիւն մը կրեց Մագնեսիոյ քով (190 Ն. Ք)։ Ասոր արդիւնքները մեծ եղան։ Նախ Անտիոքոս ստիպուեցաւ դաշամբ թողուլ ամբողջ «Ասիա» երկիրը, Աղիւս գետէն մինչեւ Տաւրոսի այն մասն՝ որ դէպ ի Լիկաւոնիա կը հայի։ Որչափ ալ Հռոմայեցիք նախ անշահախնդիր երեւոյթ մը տալ ուզեցին, ուստի այն երկիրը մեծաւ մասամբ Եւմինեայ Բ.ի տուին, առժամանակեայ միայն կրնար ըլլալ այս

որոշումը։ Երբ իրերը կը հասունանային՝ կը յաջորդէր հռոմէական վարչութիւնը։ Այսպէս Պերգամայ որուն թագաւորութիւնը՝ Եւմինեայ երրորդ յաջորդին Ատտաղոսի Գ. մահուանէ ետքը արդէն հռոմէական նահանգ եղաւ (123 ն. Ք.)։ Յաջորդ դարուն պիտի յաջորդէին ուրիշները. այսպէս նաեւ Բիւթանիոյ Նիկոմեդոս Գ.՝ իր տէրութիւնը կտակեց Հռոմայեցւոց՝ Ատտաղոսի նման (75 ն. Ք.) միւսները՝ Միհրդատայ Մեծի պարտութենէ ետքը։ Եւ պիտի գար օր մ՚որ Հռոմայեցիք տէր պիտի ըլլային՝ ո՛չ միայն մինչեւ Եփրատ, այլ իրենց ճոխութիւնը շատ աւելի անդին պիտի տարածէին՝ իբր տէր Ասորւոց եւն, իրենց դէմ դարաւոր մրցակից ունենալով նախ Պարթեւներն, որոնք արդէն կանուխէն թօթափած էին Սելեւկեան լուծը (250 ն. Ք.), յետոյ՝ անոնց յաջորդող Սասանեանք (227 յ. Ք.)։

Սակայն այս շրջանը տակաւին չեկած՝ Մագնեսիոյ ճակատն անմիջական ազդեցութիւն ունեցաւ այլեւայլ կէս անկախ տէրութեանց լիովին անկախութեանը, յատկապէս Պոնտոսի, Գամրաց եւ Հայաստաններու։ Վերջինքն ալ իրենց կէս-անկախ դիրքը պահած էին, եւ դասական մատենագիրք կը յիշեն չորք մ՚արքայից՝ մանաւանդ արեւմտեան-հարաւային բաժնի, որոնցմէ դրամներ ալ կան (Զամէս, Արշամ, Արդիսար, Շաւարշ կամ «Քսերքսէս» եւն), որոնք

*խնամացած էին Սելեւկեանց՝ ինչպէս նաեւ Պոնտոսի եւ Գամրաց արքայք։ Նոյնպէս արեւելեան Հայաստանի մէջ իրեն դիրքը պահած էր Որոնտէսներու տունը, որուն վերջինն ալ Որոնտէս ի հարկէ ստիպուած էր տեղի տալ Անտիոքոսի Մեծի, որ նուաճած էր զՀայաստան, եւ տուած էր զայն իւր երկու հայ զօրավարաց ի վարչութիւն։ Արդ ասոնք ալ՝ Արտաշէս («Արտաքսիաս») եւ Զարեհ («Զարիադրիս») որոնք Անտիոքոսի կարգադրութեամբ կրկին Հայաստաններու վրայ կ'իշխէին, Մագնեսիոյ ճակատամարտէն ետքը՝ Հռոմայեցւոց կողմն անցան ու անկախ եղան՝ Թագաւոր տիտղոսն առած* (190 *ն. Ք.*) *Զարեհ՝ ընդհանրապէս առեալ Ծոփաց արքայ եղաւ, որուն մայրաքաղաքն կը կոչուի Կարկաթիոկերտ*[17], *մինչդեռ Արտաշէսի պետութեան կենդրոն եղաւ նորակերտ Արտաշատ, զոր Ստրաբոն գեղեցկաշէն կը կոչէ*[18]*։ Այս կրկին Հայաստաններու քով՝ ուրոյն կեանք մ'ունի Փոքր-Հայք, որուն Միհրդատ «կուսակալն» այս միջոցին դեր կը խաղայ, ինչպէս պիտի յիշենք։ Այս Հայաստաններու պատմութեան հետ խառնուած են Խաղտիք ու միւս ազգերը, բայց ի հարկէ ալ աւելի Պոնտոսի եւ նաեւ Գամրաց պատմութեան հետ։*

---

[17] Strabo, *Բ. հատոր, ժԲ.* 527/2։

[18] Strabo, *Բ. հատոր, ժԲ.* 527/3։

*Հմմտ. Տաշեան, Ուսումն Դասական Հայերէն լեզուի,* 1920, *էջ* 236—246։

Գիտնոց մէջ խնդիր է թէ ո՛րչափ ուղիղ ըլլան Ստրաբոնի տեղեկութիւնները, թէ արդէն Աքամենեանց Գամրաց սատրապութիւնն երկուքի բաժնած ըլլան, եւ դարձեալ թէ ե՛րբ իրօք Գամիրք տարածուած է մինչեւ Տաւրոս, որ տակաւին Հերոդոտեայ օրով Մեծ Կիլիկիոյ էր, ինչպէս տեսանք: Այս միջոցին յամենայն դէպս՝ հին մայրաքաղաքին (Գազիուրա՝ Հիրիկի վրայ) յաջորդած է Մաժակ, յետոյ՝ Կեսարիա կոչուածը: Գամրաց պատմութիւնն երկրորդել աւելորդ է հոս: Բայց աւելորդ չէ յիշել Ստրաբոնի սա տեղեկութիւնքն որ Գամրաց սահմանը կը գծէ այսպէս. «մանաւանդ անոնք որ միեւնոյն լեզուն (Գամրաց) կը խօսին, սահման ունին հարաւէն Կիլիկեան կոչուած Տաւրոսը, արեւելքէն՝ Հայաստան եւ Կողքիս եւ միջանկեալ օտարալեզու ազգերը[19]. Հիւսիսէն՝ Եւքսինոս մինչեւ Ալիւսի բերանը եւ արեւմտքէն՝ Պափղագոնացւոց եւ Գաղատացւոց ազգերն, որոնք Փռիւգիա նստած են, մինչեւ Լիկաւոնացիքն ու Կիլիկեցիքն որ Կիլիկիա կը բնակին»: Յիշելով Կատաւոնացիքն, զոր նախնաբար ուրոյն ազգ կ՚ըսէ, բայց որոնք Ստրաբոնի օրով լեզուաւ ու բարքով լիովին նոյնացած էին Գամրաց հետ[20]: Ասոնք են որ Կոկիսոնէ մինչեւ Մելիտինէ եւ անկէ անդին Հայոց Եկեղեաց գաւառն ալ կը տարածուէին երբեմն: «Կապ-

19 Ստրաբոն, ԺԲ. 533. 1:

20 Ստրաբոն Անդ 533. 2:

պաղովկիան Պարսիկներէ երկու սատրապութեանց բաժնուած ստացան Մակեդոնացիք, մասամբ կամաւ մասամբ ակամայ թողուցին որ սատրապութիւնքն թագաւորութեանց փոխուին, որոնցմէ մին Բուն Կապպադովկիա՝ կոչեցին, նաեւ (Կապպադովկիա) առ Տաւրոսիւ եւ կամ Մեծ Կապպադովկիա. միւսը՝ Պոնտոս կամ Կապպադովկիա Պոնտոսի («առ Պոնտոսիւ» այսինքն՝ ծովեզերեայ)։ Կը յաջորդեն Կապպադովկիոյ բաժանմունքն եւն, շատ գեղեցիկ նկարագրութիւն մը։

Անպատմական կը համարուի այն ճիւղագրութիւնը, զոր կու տայ Դիոդոր Սիկուլացի, եւ որ Գամրաց արքաներն ու սատրապները կը հանէ մինչեւ Փառնակէս, որուն կինն էր Ատոսա՝ քոյր Կամբիւսեայ հօր Կիւրոսի Մեծի։ Այսու հանդերձ այս ցանկին այլեւայլ անձինքն պատմական են, իսկ լիովին պատմական է Արիարաթէս Ա., որ իբր 353ի սատրապ էր Գամրաց։ Այս ըլլալու է «Արիակէս» գրուածն՝ որ Գարդամելայի ճակատամարտին մէջ՝ Հայոց Որոնտէսի եւ Միթրաւստէսի հետ՝ Դարեհ Կոդոմանոսի բանակին մէջ էր, Ինքնիշխան կրցաւ ըլլալ (331—322) մերժելով զՍաբիկտոս՝ Մակեդոնական կուսակալը. բայց յաղթուեցաւ յետոյ յԵւմինեայ եւ ի Պերդիկկայ եւ 84 տարեկան խաչուեցաւ։ Իւր դրամը տակաւին արամերէն տառերով է, ինչպէս է նաեւ յաջորդինը՝ Արիարաթէս Բ. (314—280). որ սափ-

պուած էր սակաւուք Հայաստան ապաստանիլ (πρὸς τὴν 'Αρμένιαν), բայց Եւմենեայ, Նիկանորի եւ Ամինտասայ Մակեդոնական կուսակալաց միջանկեալ իշխանութենէ ետքը՝ «առած զօր Հայոց Արդուատ արքայէ (παρὰ τοῦ τεγελέως 'Αρμενίων 'Αρδοάτου), Մակեդոնացւոց Ամինտաս զօրավարն սպաննեց, եւ Մակեդոնացիները վտարեց երկրէն դուրս եւ առաւ իւր սեպհական իշխանութիւնը»: Սակայն միայն հարաւային մասն էր այնուհետեւ Գամրաց ձեռքն. որովհետեւ այս միջոցին հիմ դրած էին Պոնտոսի արքայք ալ իրենց իշխանութեան, յատկապէս ժամանակակից Միհրդատ Կտիստէս՝ հիւսիսային կամ ծովեզերեայ բաժնին մէջ:

Յաջորդներուն դրամներն արդէն յունարէն են Արիարամնէս (280—230) իրականին առաջին «արքայ» տիտղոսը կրեց, իւր որդին Արիարաթէս Գ. (230—220) փեսայացնելով Սելեւկեանց Անտիոքոսի Բ. Թէոսի Ստրատոնիկէ դստեր հետ: Ուստի Գամրաց Թագաւորութեան իրական սկիզբն է 256 Ն. Ք. որ տարիէն կը սկսի Գամրաց ալ Թուականութիւնը: Նոյն խնամութիւնը շարունակեցին յաջորդներն ալ: Արիարաթէս Դ. Եւսեբէս (220—163) կին առաւ Անտիոքիս՝ դուստր (կամ քոյր) Անտիոքոսի Դ. եւ (Թերեւս) այրին Հայոց Շաւարշ (Քսերքսէս) արքայի Արշամաշատի, եւ ասկէ կը սկսին արդէն ներքին խռովութիւնք որ կործանման պիտի

*տանէին զԳամիրս։ Պատմական աղբերք կուտան այս միջոցին տեղեկութիւններ, որոնք բաւական կնճռոտ են՝ յատկապէս յիշեալ Անտիոքիսի մասին եւ իր դիրքն՝ հանդէպ այլեւայլ իշխանաց, որոնցմէ յատկապէս Որոփեռնէս Թեկնածու եղաւ գահին։ Ըստ երեւութին ինքն Անտիոքիս, որ նախ ամուլ էր, կեղծեօք զանոնք իբր որդիք Արիարաթայ Դ. յառաջ քշած էր, բայց ի վերջոյ ամէն հնարք ի գործ դրաւ գահ հանելու իւր Միհրդատ որդին, որ գահ ելլելով առաւ Արիարաթէս Ե. Եւսեբէս Փիլոպատոր յորջորջանքը* (163—130)։ *Այս՝ կը նկարագրուի ազնիւ անձ մը, սիրող գիտութեանց, իւր երկիրը մուծեց յունական քաղաքակրթութեան հետ նաեւ յունական քաղաքային վարչական ձեւերը, յատկապէս Մաժակ ու Տիանա քաղաքներու մէջ, արքունիքը լեցուց յոյն գրագէտներ եւ արուեստագէտներ։ Բայց ասոնց հետ մուտք գտան անմիջապէս հելլենական ամենայոռի մոլութիւնքն ու գեղծմունք, մանաւանդ երբ յիշեալ Որոփեռնէս յաջողեցաւ միջոց մը գահը գրաւել օգնութեամբ Դեմետր Սովտերի։ Արիարաթ Ե. կրցաւ ի վերջոյ մերժել այս անձը՝ օգնութեամբ Ատտաղոսի Բ. Պերգամայ* (158 *Ն. Ք.*)։ *Երբ Արիարաթ Ե. մեռաւ՝ ինկած ճակատին մէջ ընդդէմ Արիստոնիկեայ՝ որ Հռոմայեցւոց դէմ կ՚ուզէր Ատտաղոսի գահը պահել, ներքին խռովութիւնք լիովին սաստկացան։ Նոյն իսկ իւր կինը*

Նիւսա սպաննել տուաւ իւր իսկ որդիքն, որոնցմէ, միայն կրտսերն ազատեցաւ եւ գահ ելաւ՝ Արիարաթէս Զ. Եպիփանէս Փիլոպատոր (130—112): Այս՝ թէեւ խնամի Պոնտոսի մեծագոյն արքային Միհրդատայ Մեծի, որուն քոյրն Լաւոդիկէ կնութեան առած էր, սպաննուեցաւ Գորդիոսէ հրամանաւ նոյն իսկ Միհրդատայ, որուն ծրագիրն էր զԳամիրս ձեռք ձգել: Միհրդատեան այս շրջանը՝ որուն ի վերջոյ գործակից եղաւ Տիգրան Մեծ Հայոց, որ զՄաժակ եւ ուրիշ քաղաքներ մարդաթափուր ըրաւ՝ չէնցնելու համար նորակերտ Տիգրանակերտը, քայքայիչ եղաւ՝ առժամանակեայ յաջողութենէ ետքը, ինչպէս Գամրաց, մանաւանդ Պոնտոսի իսկ համար: Արիարաթէս Է. Փիղոմետոր (112—100) սպաննուեցաւ Միհրդատէ, իսկ Արիարաթէս Ը. (100—97)՝ իւր տոհմին վերջինը՝ յաղթուած Միհրդատէ, վտարուեցաւ. եւ Միհրդատ իւր եւ իւր քրոջ ու միանգամայն կնոջ Լաւոդիկեայ որդին՝ Գամրաց գահը հանեց՝ անուանելով Արիարաթէս եւ հռչակելով իբր թէ Արիարաթայ Ե. որդին ըլլայ, որ նաեւ առաւ Եւսեբէս Փիլոպատոր յորջորջանքը: Այս՝ թէեւ մերժուեցաւ եւ կրկին Արիարաթէս Ը. գահ ելաւ, բայց վերջնոյս մահուանէ ետքը՝ Արիարաթէս իշխեց նորէն (մինչեւ 87 Ն. Ք.): Միհրդատայ Մեծի եւ Հռոմայեցւոց մղած տարեւոր ամենակատաղի կռիւներու վկան է Արիոբարզան Ա., որ

*Փիլոռոմէոս («Հռոմասէր») յորջորջանքն առաւ (96—93) եւ վեց անգամ վտարուեցաւ Միհրդատէ ու Տիգրանէ եւ վեց անգամ ալ Հռոմայեցիներէ գահը վերադարձուեցաւ: Միհրդատի մահուանէ ետքը՝ Հռոմայեցւոց ճոխութեան ներքեւ՝ իշխեցին այս տնէն տակաւին երեք արքայք, Արիոբարզան Բ. Փիլոպատոր (63—52 Ն. Ք.) որուն կինն էր Աթենայիս Փիլոստորգոս, դուստր Միհրդատայ Զ. Եւպատորի, Արիոբարզան Գ. Եւսեբէս Փիլոռոմէոս (52—42 Ն. Ք.), զոր սպաննեց Կասիոս, եւ Արիարաթէս Ժ. Եւսեբէս Փիլադելփոս (42—36 Ն. Ք.) Հռոմայեցիք տուին թագաւորութիւնն ի վերջոյ Արքեղայոսի Դ. Փիլոպատրիս Կտիստէի, որ արքայ էր նաեւ Լեռնային Կիլիկիոյ (36 Ն. Ք. մինչեւ 17 Ն. Ք.). եւ վերջապէս վճռեցին Գամիրքն նահանգ ընել: Ստրաբոն՝ որ այս միջոցին կը գրէր, պատմելով վերջին կէտս՝ կ՚ըսէ թէ տակաւին որոշ չէ թէ Հռոմայեցիք ինչ բաժանում պիտի ընեն երկրին*[21] *:*

*Գամրաց անկումը բաց ի ներքին խռովութիւններէն՝ արդիւնք էր այն հակառակութեան որ վաղուց իսկ կար աոնց եւ Պոնտոսի միջեւ: Վերջինս տէր միայն ծովեզերաց՝ կը ճգնէր կանուխէն ընդարձակուիլ ինչպէս ծովեզերեայ մասանց տիրելով, նոյնպէս նաեւ ներքնաշխարհաց: Պոնտոսի իշխանք անոր համար անընդհատ ընդհարմանց*

21 *Ստրաբոն, ԺԲ. 535:*

մէջ էին դրացեաց հետ։ Ասոնց ալ ճիւղագրութիւնը կը հասցուի մինչեւ Որոնտոբատէս պարսիկ սատրապն ի Պոնտոս, որմէ դրամ ալ կայ դրոշմուած ի Սինոպ, եւ որուն որդին կ՚ըսուի Միհրդատ Ա. († 363 Ն. Ք.) սատրապ Լիւկաւոնիոյ եւ Գամրաց Արտաշէսի Բ. օրով (իբր 400ին), բարեկամ կ՚ըսուի Պղատոնի, ինչպէս բարեկամ էր Կիւրոսի Կրտսերոյն, եւ մատնութեամբ գերուեցաւ Հերակլեայ Կղէարքոս բռնաւորէ, բայց ազատեցաւ փրկանօք (365ին)։ Արիոբարզան Ա. պարսիկ իշխան ի Պրոպոնտիս, հիմնադիր կը համարուի Պոնտոսի արքայից (362—337), դաշնակից Դաղամէսի։ Միհրդատ Բ. (337—302), որ նախ իշխան էր ի Կիոս, հնազանդեցաւ Աղեքսանդրի, դաշնակից եղաւ Անտիգոնեայ, բայց վերջէն սպաննուեցաւ անկէ՝ 84 տարեկան հասակին մէջ, որովհետեւ Կասանդրի կողմնակից եղած էր։ Թերեւս այս ըլլայ այն Միհրդատն զոր Գուգարաց բդեաշխք իրենց տան հիմնադիրը կը համարէին։ Պոնտոսի իրական առաջին արքայն եղաւ Միհրդատ Գ. Կտիստէս («Շինող», 302—266)։ Պոնտոսի արքայք կանուխէն սկսան հպատակեցնել նաեւ յունական գաղթականութիւնքն ու քաղաքները։ Այսպէս առնուեցաւ Ամաստրիս, որ արքայանիստ ալ եղաւ։ Արիոբարզան Բ. (266—245) արքայէ ետքը՝ Միհրդատ Դ. (245—190), որ կնութեան առած է զԼաւոդիկէ Անտիոքոսի Բ. Թէոսի դուստրը, պաշարեց եւ նեղեց Սինոպ

քաղաքը, զոր առաւ Փառնակ Ա. (190—169) եւ այս հարուստ ու մեծ քաղաքն եղաւ այնուհետեւ թագաւորանիստ, իւր մեծ տորմիղն՝ որ Սեւ ծովու կը տիրէր, պոնտական եղաւ. միւս կողմանէ պոնտական արքայից իշխանութեան ներքեւ աւելի ծաղկեցաւ քաղաքն ու զարգացաւ: Ձեռներէց Փառնակ արքայի դէմ նիզակակցութիւն մը կազմած էին Եւմենէս Բ. Պերգամոնի, Պրուսիաս Բիւթանիոյ, Արիարաթ Ե. Գամրաց, պաշտպանելու համար իրենց երկիրները: Զարմանալի կերպով Փառնակայ դաշնակից էր Միհրդատ Փոքուն Հայոց իշխանը, թէեւ այս երկրին վտանգը Պոնտոսի կողմանէ էր: Ինչպէս յետոյ իրօք պատահեցաւ: Բայց կա՛մ շահը, կամ նաեւ խաղտեան տարրին համակրութիւնը կամ նման որեւէ պատճառ մը զՓոքր Հայս համոզած էր զինակցիլ Փառնակայ եւ մասնակցիլ անոր պատերազմաց (183 Ն. Ք.): Ի վերջոյ Փառնակ հարկ տեսաւ հաշտութեան, քանի որ Հռոմայեցիք ալ՝ որ այն զինակցաց թիկունքն էին, նոյնը խստիւ պահանջեցին: Բարեբախտաբար պահուած է Պողիւբեայ ճշգրտապատում պատմագրութեան վերջին հատուկտիր միայն մնացած գրքերէն նաեւ հատակոտոր մը, որ կը պարունակէ այս խաղաղութեան (180 Ն. Ք.) դաշինքը: Այս յիշատակարանը (Պողիւբ ԻԶ, զ, 1—15) կարեւոր է մեզի համար նաեւ այնու որ կը յիշատակուին Հայաստանք: Առաջին կէտն է՝ «Խաղաղութիւն ըլլայ Եւ-

մինեայ եւ Պրուսիայ եւ Արիարաթի՝ հանդէպ Փառնակայ եւ Միհրդատի ամէն ժամանակ»: Պայմանները բաւական խիստ են. Փառնակ յանձն կ՚առնու չմտնել ի Գաղատիա, եւ Փառնակայ ու Գաղատացւոց միջեւ կռուած դաշինքներն անվաւեր կ՚ըլլան, ելլել Պափղագոնիայէ եւ վերադարձնել բնակիչները» գինուք եւ ամենայն կազմուածով. «Արիարաթայ վերադարձնել այն երկիրները՝ զոր առած էր, ամենայն կազմութեամբ, եւ պատանդները. եւ տալ զՏէիոն առ Պոնտոսիւ, զոր յետոյ, կ՚ըսէ, Եւմենէս տուաւ Բրուսիասի: Փառնակ պիտի վերադարձնէր դերիներն՝ առանց փրկանքի, նոյնպէս՝ ինքնամատները: Ասոր հակառակ՝ փոխանակ ընչից ու գանձուն՝ զոր առած էր Մորզինէ եւ Արիարաթէ, պիտի տար այս «կանխասացեալ թագաւորաց՝ 900 տաղանդ». եւ Եւմինեայ հետ եղողներուն՝ յաւելու՝ 300, պատերազմի ծախքը: Վերագրուեցաւ, կ՚ըսէ, նաեւ Միհրդատայ, Հայաստանի սատրապին, (*Μιθριδάτῃ, τῷ τῆς Ἀρμενίας σοτράπῃ*) 300 տաղանդ. որովհետեւ լուծելով Եւմինեայ հետ եղած դաշինքը՝ պատերազմեցաւ Արիարաթի դէմ»: Կը յաւելու թէ «դաշանց մասնակցեցան Ասիոյ կողմանց տիրապետներէն Արտաշէս, մեծագոյն մասին Հայաստանի իշխանը, (*τῶν μεν κατὰ τὴν Ἀσίαν δυναστῶν Ἀρταξίας, δ τῆς πλειίτωτης Ἀρμενίας ἄρχων*) եւ Ակուսիլոքոս, իսկ Եւրոպիոյ կող-

մանց (իշխաններէն) «Գատալոս Սարմատ. եւ ինքնիշխաններէն՝ Հերակղացիք, Մեսեմբրեացիք, Քերոննեսացիք եւ ասոնց հետ՝ Կիզիկեցիք»: Պատանդներու մասին աւելի մանրամասն որոշմունք եղաւ: Այսպէս աւարտեցաւ, կ՚ըսէ, պատերազմն Եւմինեայ եւ Արիարաթայ ընդդէմ Փառնակայ. թէ ո՛րչափ սարսափ ազդած էր իշխանս՝ յայտնի է նաեւ այն փոքր պատառիկէն, ուր կ՚ըսուի թէ Փառնակ իրմէ յառաջ եղած ամէն թագաւորներէն աւելի անօրինագոյն եղաւ (Պողիւբ. Իէ, ժե):

Մեզի համար կարեւորն է հոս նախ Միհրդատի «կուսակալ Հայաստանի» յորջորջանքն, զոր Փոքր-Հայոց իմաստով առնելու ենք. բայց մանաւանդ Արտաշէսի «յորջորջանքն» մեծագոյն մասին Հայաստանի»: Այս՝ արդէն՝ ուրիշ բացատրութեամբ «Մեծ Հայք»ն է, թէեւ Ծոփաց եւն բաժինը տակաւին չէր պարունակեր: Արտաշէսի Հայաստանի կարեւորութիւնը, անոր՝ հանդէպ միւսներու յարաբերութիւնքն՝ կը նկարագրեն դասական մատենագրաց այլեւայլ տեղերը: Շատ կարեւոր են՝ յատկապէս պոնտական ազգերու աղերսին համար ալ՝ Ստրաբոնի տուած տեղեկութիւնը. «Կ՚աւանդեն թէ, կ՚ըսէ, Հայաստան նախ փոքրիկ էր, բայց մեծցաւ Արտաշէսի եւ Զարեհի ձեռօք, որոնք նախ Անտիոքոսի Մեծի զօրավարքն էին, բայց թագաւորեցին անոր պարտութենէն ետքը (190 ն. Ք.) եւ այն՝ մին

(«Զարխադրիս»)՝ Ծոփաց, Անձիտի (— այսպէս ուղղելու փխ. («Եկեղեաց») եւ Ոդոմանտիսի եւ ուրիշ քանի մը (գաւառաց), եւ միւսը՝ Արտաշատի կողմանց»: Աճեցուցին ու մեծցուցին, կ՚ըսէ, զՀայաստան՝ «մասեր յափշտակելով շրջակայ ազգերէն. Մարերէն» զԿասպիանէ եւ զ«Փաւնիտիս» (Թերեւս՝ զՍիւնիս) եւ զՎասպուրական. ի Վրաց՝ Պարիադրի ստորոտը (παρωρίαν τοῦ Παρυάδρου, Պարխարի լեռնակողմանքն), եւ զԿղարջս (— այսպէս ուղղել՝ փխ. «Քորզենէ») եւ զԳուգարս (Γωγαρηνήν «զԳոգարենէ»)՝ որ Կուր գետէն անդին է. Խաղիւբներէ եւ Մոսինիկներէ՝ զԿարանիտիս (Կարնոյ աշխարհ), եւ զԴերջան, որոնք սահմանակից են Փոքու-Հայոց եւ անոր մասեր (ἅτῇ μικρᾷ 'Αρμενίᾳ ἐστὶν ὅμορα, καὶ μέρη αὐτῆς ἐστί). իսկ Կատաւոնացիներէ՝ զԵկեղեաց («Ակիլիսենէ») եւ Անտիտաւրոսի կողմերը. իսկ Ասորիներէն՝ զՏմորիս, այնպէս որ ամէնքն կամ համալեզու են (πάντας ὁμογλώττους εἶναι) եւն[22]:

Թողլով այս աշխարհաց մասին խընդիրքն, որոնք Ստրաբոնի օրով միալեզու հայախօս էին, կարեւորն այն մասն է՝ որ կը հայի Խաղտեաց–Խաղխւրաց: Կատաւոնացիք որոնք Ստրաբոնի օրով լիովին դամբրացած էին, դամբրահայ տարր մըն էին. ասոնց մինչեւ Եկեղեաց տարածուած ըլլալը դի–

[22] Ստրաբոն, ԺԲ. 528. 5:

րաւ կը մեկնուի։ Աւելի հետաքրքրական է Խաղիւր–Խաղտեաց հետ Մոսինեկաց յիշատակութիւնն եւ սոցա ձեռքն ըլլալն Կարնոյ–աշխարհի եւ Դերջանի։ Այս՝ կը համապատասխանէ ընդհանրապէս այն դրից, ուր գտանք՝ Քսենոփոնի արշաւանքի ատեն՝ Բարձր–Հայոց այն մասն, ուսկից Ցոյնք անցան եւ ուր տեսանք Խաղիւր–Խաղտիք, Սկիւթենացիքն են։ Համեմատութեամբս կը տեսնուի թէ Ստրաբոնի այս «Խաղիւրաց եւ Մոսինեկաց» (Χαλυβών δε καὶ Μοσυνοίκων) իշխանութենէ ազատուած աշխարհը՝ Կարնոյ հետ նաեւ Բաբերդ–Սպեր գիծն է, որ Բարձր–Հայոց կը վերաբերի։ Ծորոխի չարունակութիւնն է ուրեմն «ստորոտն Պարխարի», որով միայն Տայք կրնան հասկըցուիլ, որոնց սահմանակից՝ Կղարջք արդէն յետոյ Հայոց Գուգարաց աշխարհներէն մին կը հաշուէր։ Այս կողմերն ուրեմն Հայաստան արդէն Արտաշէսի օրով իւր ապագայ սահմանները հասած էր։ Թէ Արտաշէս արդէն ձեռնարկած էր ընդհանրապէս միացնել ամբողջ ապագայ Հայաստանը, յայտնի է այն հատակտորէն, որ մնացած է Դիոդորի Լ. գրքէն։ Այս տեղէն կը տեսնուի թէ Արտաշէս տիրած էր արդէն Ծոփաց ալ մասին. բայց Արիարաթէս (Ե.) Գամրաց պաշտպան կեցաւ եւ զ«Միթրոբուզան՝ իւր հայրենի իշխանութեան հասցուց», Արտաշէսի պատգամաւորաց առաջարկներն Ծոփաց մասին չընդունեցաւ, որով Միհրթրոբուզան (Միհրբու–

*ժան, Մերուժան,* (ὁ Μιθροβουζάνης) *«տի-րեց իւր հայրենի իշխանութեան» Ծոփաց։ Արխարաթ չզեղծաւ այս յաջողութենէն, իրեն վարձք առաւ միայն զՏոմիսա՝ Ծոփաց գիւղն ու բերդն, որ կարեւոր կամրջագլուխ մըն էր՝ Մելիտինէ անցնող ուղւոյն վրայ դէպի Տիգրիս, զոր սակայն յետոյ Ծոփք յետս գնեցին։ Այս վերջին դէպքն եղած ըլլալու է (ըստ Թ. Ռայնախի) Արխարաթայ Է. Փիլոմետորի* (112—110 *Ն. Ք.*) *օրով, որ ծանր պատերազմի բռնուած Միհրդատայ Մեծի դէմ եւ նեղ ինկած, օգնութեան պէտք ունէր ու դրամի։ Քիչ մ'ետքն որեւէ արդելք չկար, երբ Տիգրան Մեծ ի գլուխ կը հանէր Արտաշէսի չկրցածը, եւ ստեղծեց առով վերջնական Հայաստան իւր սահմաններով, «Տիգրան, կ'ըսէ Ստրաբոն, սերունդ յԱրտաշիսեայ, ունէր* յատուկ (*կամ* բնիկ) *կոչուած Հայաստանը* (τὴν ἰδίως λεγομένην Ἀρμενίον) *սահմանակից է Մարաստանի եւ Աղուանից եւ Վրաց, մինչեւ ցԿողքիս եւ ցԿապպադովկիա առ Եւքսինեաւ։ Իսկ Զարեհ* (*«Զարիադրիս»*) *սերած Ծոփացին Արտանէս*[23] *ունէր հարաւային մասերը եւ այն կողմերն՝ որ անոնցմէ աւելի արեւմուտք կը հային։ Սա* սպանեաւ *Տիգրանէ, որ տէր եղաւ ամէնուն», եւն։ Ծոփաց իշխանութեան հետ՝ Եկեղեաց ալ անցաւ Հայոց ձեռքը։*

*Սակայն նաեւ Տիգրան Մեծ չյաջողեցաւ*

---

[23] *Ստրաբոն, ԺԲ.* 532։

*լիակատար ընել Հայաստանի միութիւնը։ Դուրս մնաց դժբախտաբար Փոքր-Հայք, որով կորսուեցաւ Հայաստանի համար այս մասին հետ՝ նաեւ ծովեզերքն, ուր հասած էին Փոքր-Հայք։ Ճշդիւ Միհրդատ Մեծ, Տիգրանայ այս դաշնակիցն էր որ արդելք եղաւ այն միութեան, անջան կլլելով այն աշխարհը։ Կրնանք ըսել առանց Միհրդատայ միջամտութեան, որ կործանում բերաւ իւր հայրենեաց ալ, տարբեր պիտի ըլլար՝ այսպէս կամ այնպէս միացեալ Հայաստանի բախտն, երբ ունենար այն ծովեզերքը։ Սակայն իրերը հոս չհասած՝ դիւրաւ կը մեկնուի այժմ թէ ինչու Միհրդատ Փոքր-Հայոց աւելի չահաւոր կը տեսնէր դաշնակցիլ Պոնտոսի եւ Փառնակայ, քան Արտաշէսի ու Գամրաց։ Աւելորդ դիտողութիւն մը չէ Ստրաբոնի ակնարկածը թէ Կարնոյ աշխարհն ու Դերջան, զոր Խաղտեաց ձեռքէն առաւ Արտաշէս, սահմանակից են Փոքր Հայոց, բայց նաեւ «անոր մասերը»։ Ամենայն հաւանականութեամբ Բարձր-Հայք նախնաբար Փոքր-Հայոց ձեռքն էին։ Ինչպէս կանուխէն Գամիրք — գրաւած էին Մելիտինւոյ շրջանը, ուստի անկէ մերժած էին զՓոքր-Հայս, եւ գամրական Կատաւոնացիք տէր եղած էին Եկեղեաց, նոյնպէս Արտաշէս տիրելով Բարձր-Հայոց, որոնք այնուհետեւ աւելի դէպի հիւսիս միայն կրնային ձգտիլ։ Փոքր-Հայոց իշխանները վտանգ կը տեսնէին ուրեմն Գամրաց եւ Մեծ Հայոց կողմանէ։ Այստեղ խնդիր*

չենք ըներ այն իշխանաց մասին, որոնց այլեւայլ դրամներ կը վերագրեն, եւ որոնց մէջ ոմանք նոյնիսկ Խորենացւոյ զՄորփիւղիկէսը կ՚ուզեն գտնել[24]: Յամենայն դէպս, երբ Միհրդատ Մեծ ապարէզ կ՚ելլէր (112 Ն. Ք.) Փոքր–Հայք արդէն տէր էին ծովեզերաց, նուաճելով Խաղտիքն ու այլ պոնտական ազգերը «Փառնակեայ եւ Տրապիզոնի[25]»: Ստրաբոն համառօտ՝ բայց գեղեցիկ կը նկարագրէ Փոքր–Հայոց վիճակը. «Արդ, կ՚ըսէ, Փառնակեայ (περὶ Φαρνακίαν) եւ Տրապիզոնի կողմանց վերեւն են Տիբարենացիք ու Խաղտիք (Χαλδαῖοι) մինչեւ Փոքր–Հայաստան (μέχρι τῆς μικρᾶς 'Αρμενίας): Այս՝ բաւական բարեբեր երկիր մըն է. Թագաւորներ (δυνάσται տիրապետք) կ՚իշխէին աստ, ինչպէս որ Ծոփաց. ասոնք երբեմն բարեկամ (դաշնակից) էին միւս Հայոց (τοῖς ἄλλοις 'Αρμενίοις), երբեմն ալ ինքնագլուխ կը գործէին (ἰδιοπραγοῦντες): Ասոնք հպատակեցուցած էին իրենց զՏիբարենացիս եւ զԽաղտիս, այնպէս որ մինչեւ Տրապիզոն ու Փառնակիա տարածած էին իրենց իշխանութիւնը: Բայց երբ Միհրդատ Եւպատոր զօրացաւ եւ տէր եղաւ Կողքիսի, նոյնպէս (տիրեց) այս ամէնուն, տեղի

[24] Babelon, Les rois de Syrie, d'Arménie et de Commagène, Paris 1890, էջ CXCVI—CXCIX եւ 230:

[25] Ստրաբոն, 555:

տալով իրեն՝ Անտիպատրոսի որդւոյ Սի-
սիդեայ (Ἀντιπάτρον τοῦ Σίσιδυς)։
Բայց անիկա (Միհրդատ) հոգ տարաւ այս
տեղեաց, այնպէս որ 75 բերդեր (φρού-
ρια) շինեց այն տեղերը, որոնց մէջ գետե-
ղեց գանձուն մեծագոյն մասը։ Ասոնց անուա-
նիներն են ասոնք՝ Հիւդարա (Ὕδαρα), եւ
Բասգիդարիզա (Βασγοιδάριζα) եւ Սի-
նորա (Σινορία), Մեծաց Հայոց (τῆς μεγά-
λης Ἀρμενίας) սահմաններուն կից տեղ մը,
որուն համար Թէոփանէս «Սինորիա» (Συ-
νωρίαν, մերձակայ, սահմանակցութիւնեւն),
մականուանեց։ Որովհետեւ Պարխադրի (Պար-
խարի) ամբողջ լեռնաշղթան (δρεινή) բազ-
մաթիւ այսպիսի յարմարութիւններ ունի,
ջրաւէտ է ու անտառաշատ, դարավլիհ ձորե-
րով եւ զահավէժներով շատ կողմէ (յաճախ)
կտրուած։ Անոր համար հոս շինեց իւր գան-
ձապահակ բերդերը (τῶν γαζοφυλακίων «գան-
ձարանաց» մեծագոյն մասը։ Անոր համար
ալ ի վերջոյ, երբ Պոմպէոս իւր վրայ կու
գար, Միհրդատ փախաւ ապաստանեցաւ
Պոնտական թագաւորութեան այս վերջին
ծագերը եւ Եկեղեաց գաւառի, ի Դաս-
տիրա (Δαστείρα), ջրաւէտ լեռ մը բռնե-
լով։ Մերձակայ է նաեւ Եփրատ, որ կը
բաժնէ զԵկեղեաց՝ Փոքր Հայքէ (ὁ Εὐφρά-
της ὁ διορίζων τὴν Ἀκιλισηνὴν ἀπὸ τῆς
μικρᾶς Ἀρμενίας)։ Եւ հոն դեգերեցաւ
այնչափ ժամանակ, մինչեւ որ պաշարուելու
մօտ՝ ստիպուեցաւ փախչիլ լերանց միջէն ի

կողքիս եւ անկից՝ ի Բոսփորոս: Իսկ Պոմպէոս նոյն տեղւոյ մօտերը շինեց քաղաք մը նոյն այն Փոքր–Հայոց մէջ՝ զՆիկոպոլիս (Νικόπολιν) «որ հիմայ ալ կայ եւ քաջաբնակ է[26]» եւն: Մնացեալն ալ Փոքր–Հայոց կը վերաբերի, բայց յաջորդ շրջանին կը հայի, ուստի յառաջ կը բերենք քիչ մ'եւորը:

Ստրաբոնի այս տեղեկութիւնը կը բաւէ մեր նպատակին համար — Փոքր–Հայոց ու Խաղտեաց դիրքը ցուցնելու — նաեւ Պոնտոսի թագաւորութեան վերջին ժամանակին համար: Այս պատճառաւ կը բաւէ միայն քանի մը խօսք ըսել Պոնտոսի մեծազոյն՝ բայց վերջին արքային՝ Միհրդատայ Եւպատորի մասին: Փառնակայ Ա. յաջորդեց Միհրդատ Ե. (169—120), որ կնութեան առած էր զԼաւոդիկէ դուստր Անտիոքայ Դ. Եպիփանու: Աստր ճիւղագրութեան մասին խնդիրներ կան, եւ դարձեալ մինչ մատենագիրք ստոր Եւերգետէս յորջորջանքը կուտան, դրամները կը վերտառեն արքայ մը Փիլոպատոր Փիլադելփոս: Աստվ նաեւ նշանաւոր գիտնականք (Մոմսէն եւն) երկու տարբեր անձինք կը դնեն. բայց ըստ այլոց՝ միեւնոյն անձն ըլլալու է: Յաջորդեց Միհրդատ Զ. Եւպատոր, Մեծ յորջորջեալն (120—63), որ քսանամեայ էր՝ երբ զահ ելաւ: Զափազանց մեծ չէր Պոնտոսի երկիրը: Երբ Միհրդատ Եւպատոր Պոնտոսի

[26] Ստրաբոն, անդ 555, 28:

Թագաւոր եղաւ, կ՚ըսէ Ստրաբոն[27], ունէր այն աշխարհն «որ կը սահմանուի Ալիւս գետէն մինչեւ Տիքարենացիները ու Հայերը, եւ Ալիւսէն անդին մինչեւ Ամաստրիս երկիրն եւ Պափղագոնեայ քանի մը մասերը: Բայց ինքը տիրեց ծովեզերայ մինչեւ Հերակլիա դէպ ի արեւմուտք... եւ միւս կողմը մինչեւ Կողքիս ու Փոքր–Հայս, զորոնք աւելցուց Պոնտոսի: Երբ Պոմպէոս կործանեց զայն (Միհրդատայ յաղթեց), գրաւեց այս սահմաններու մէջ եղած երկիրը» եւն: Նոյնը կը կրկնէ ուրիշ տեղեր ալ: Այսպէս երբ կը նկարագրէ Պոնտոսի ափունքը, թէ Պրոպոնտոսէ Եւքսինոս մտնելով, «նախ կը գտնուի «աշխարհն Բիւթանացւոց, յետոյ՝ Մարեանդինացւոց, զորոնք ոմանք Կաւկոնացւոց կ՚ըսեն, ապա՝ Պափղագոնացւոց մինչեւ Ալիւս. յետոյ Կապպադովկեցւոց առ Պոնտոսիւ (Καππαδόκων τῶν πρὸς τῷ Πόντῳ, Cappadociam ad Pontum) եւ մնացեալը մինչեւ Կողքիս: Այս ամէնը կը կոչուի աջ կողմն Պոնտոսի: Այս ամբողջ ծովեզերքին տիրեց Եւպատոր, սկսելով Կողքիսէ մինչեւ Հերակլիա: Անկէ անդին Բիւթանիոյ թագաւորին մնաց մինչեւ Քաղկեդոն: Թագաւորաց բարձուելէն ետքը՝ Հռոմայեցիք պահեցին անոնց սահմանները. այնպէս որ Հերակլիա Պոնտոսի վերաբերեցաւ, եւ մնացեալը՝ անդին՝ Բիւթանիոյ անցաւ» եւն:

---

[27] Ստրաբոն, ԺԲ. 555. 28:

Շատ մեծ էին Միհրդատայ աշխարհակալութիւնքն։ Տիրեց ոչ միայն մինչեւ Կողքիս, այլ անկէ շատ անդին ալ, ամբողջ ծովեզերքն, զոր հինք Կողքիսի եւ (Կիմմերական) Բոսփորի անուամբ կը նշանակեն, ինչպէս նաեւ Տաւրեան Քերսոնի մեծ մասը։ Ասով Սեւ ծովու ափանց մեծագոյն մասին տէր էր։ Բաց աստի տիրեց, ինչպէս տեսանք, Փոքր–Հայոց, որոնք իւր բանակին ընտրելագոյն մասն կազմեցին, ընտիր հեծելազունդ եւ քաջ աղեղնաւորներ մատակարարելով (Հայք, Խաղտիք եւ միւս պոնտական ազգերը)։ Գամրաց տիրապետութեան ձեռնարկները յիշեցինք համառօտիւ. եւ յընթացս պատերազմաց՝ տիրեց նաեւ ամբողջ Պափղագոնիոյ, Գաղատիոյ եւ Փռիւգիոյ։

Իւր գործերով լի են ժամանակին եւ յաջորդ ժամանակաց պատմագիրք, եւ շատ երկար կ՚ըլլար՝ եթէ նոյն իսկ գլխաւոր կէտերն ամփոփել ուզէինք, որոնք յատուկ մենագրութեան մը նիւթ կազմած են[28]։ Իւր պատմութեան հետ խառն է Հայոցն ալ, Տիգրանայ Մեծի գործակցութեամբն, որ իւր զօրութեան գագաթնակէտին հասած՝ թէեւ ոչ նոյնչափ՝ բայց մեծ անկում ունեցաւ անոր հետեւութեամբ։ Պոնտոսն՝ այսպիսի մեծ զօրութիւն մը չէր կրնար հաճոյ ըլլալ Հռոմայեցւոց, որոնք չահաւէտ կերպով գործա–

28 Հմմտ. Տաշեան Հ. Յ., Պոնտական ուսումնասիրութիւնք. Վիեննա 1919, Ազգ. Մատ. թիւ 81։

ծեցին տեղական այլեւայլ տարրերն եւ նոյն իսկ Պոնտոսի ու Հայոց արքունեաց ներքին վէճերն՝ յօգուտ իրենց նպատակին։ Հռոմայեցիք էին, որ Միհրդատեան առաջին մեծ պատերազմին առիթ տուին՝ դրդռելով Բիւթանիոյ Նիկոմեդէս արքայն Միհրդատի դէմ։ Միհրդատ յաղթեց Բիւթանացւոց եւ Հռոմայեցւոց, տիրեց այն ամէն կողմանց, եւ երբ Հռոմ պատերազմ հրատարակեց՝ իբր 80·000 հռոմայեցիներ կոտորել տուաւ, անցաւ ի Թրակիա, մտաւ Յունաստան եւ Աթէնք ապստամբեցուց (88 Ն. Ք.) Հռոմայեցի մեծագոյն զօրավարներէն մին՝ Սուլլա՝ կրցաւ դէմն առնուլ այս վտանգին։ Ոչ միայն Աթէնքն առաւ, այլ նաեւ Միհրդատ ստիպուեցաւ Թրակիայէն ելել։ Առաջին պատերազմն աւարտեցաւ անով որ Միհրդատ տուգանք տուաւ պատերազմին (86 Ն. Ք.) բայց իւր աշխարհակալութեանց մեծագոյն մասը պահեց։

Շատ աւելի դժբախտ եղաւ երկրորդ Միհրդատեան պատերազմը, Նիկոմեդէս Գ. իւր թագաւորութիւնը կտակաւ թողուցած էր Հռոմայեցւոց։ Այս մեծագոյն վտանգ էր Պոնտոսի, եւ Միհրդատ մեծ բանակով մտաւ Բիւթանիա (75 Ն. Ք.)։ Հռոմայեցւոց այս անգամ ուղարկած զօրավարը՝ Լուկուլլոս մեծ յաջողութիւն ունեցաւ, սատարելով ալ Միհրդատայ հակառակորդներու։ Ոչ միայն Պոնտական տորմիղը յաղթուեցաւ (73 Ն. Ք.), ոչ միայն Բիւթանիա նուաճուե–

ցաւ, այլ նոյն իսկ Պոնտոս՝ շատ մասեր գրաւուեցան (72) այնպէս որ Միհրդատ որ Կաբերայ (Նէոկեսարիոյ) քով երկու անգամ յաղթած էր Լուկուլլոսի, բայց Ամիսոսի (Սամսոն) քով պարտուեցաւ (71 Ն. Ք.) ստիպուած էր ապաստանիլ Տիգրանայ քով եւ անկէ օգնութիւն ուզել (70 Ն. Ք.)։ Դժբախտաբար այս օգնութիւնը դանդաղեցաւ, եւ այնպիսի ալ կերպով եղաւ՝ որ ի վերջոյ վնասուեցան նաեւ Հայք։ Տիգրան Հայաստանը մեծագոյն զօրութեան հասցուցած էր, բայց իւր աշխարհակալութիւնք դժգոհութեանց եւ հակառակութեանց առիթ պիտի ըլլային ի հարկէ։ Թագ կապելու համար ստիպուած էր Պարթեւաց տալ բազմաթիւ հովիտներ (94 Ն. Ք.)․ բայց ո՛չ միայն ետ առաւ, այլ նաեւ գերիշխանութիւնը ձեռք ձգեց, նուաճեց Կորդուաց, Աղխաբենիոյ եւ Ատրպատականի թագաւորութիւնքն, ընտրուեցաւ Սելեւկեանց գահուն, որով տէր եղաւ Ասորիքի եւ Փիւնիկիոյ (83 Ն. Ք.) եւ իբր այսպիսի դրոշմած է իւր գեղեցիկ դրամները, իւր Տիգրանակերտը շէնցնելու համար գաղթեցուց Գամրաց (յատկապէս՝ Մաժակի) եւ Կիլիկիոյ այլեւայլ քաղաքաց բնակիչները․ իրեն հպատակ էին նաեւ Վիրք եւ Աղուանք։ Երբ Լուկուլլոս պահանջեց Տիգրանէ յանձնել զՄիհրդատ՝ իբր խնամին, բնականապէս յանձն չառաւ։ Դասական մատենագիրք մինչեւ անգամ չափազանցութիւններով կը նկարագրեն Լուկուլլոսի ար–

*չաւանքը Տիգրանի դէմ։ Որչափ ալ մեծ էր Լուկուլլոսի յաջողութիւնը Տիգրանակերտի քով, որ տակաւին չաւարտած՝ առնուեցաւ ու աւերեցաւ (69 Ն. Ք.) բայց Արտաշատի դէմ արշաւանքն (68 Ն. Ք.), ի վերջոյ ձախողանք մ'եղաւ Հռոմայեցւոց, որ ստիպուեցան ետ դառնալ, մինչ անդին Միհրդատ՝ Տիգրանէ օգնութիւն առած՝ Փոքր-Հայքէ Պոնտոս մտնելով խորտակեց հռոմայեցի երեք զօրավարաց գնդերը։ Հռոմայեցւոց վերջնական յաջողութիւնը Պոմպէոսի զօրավարութեամբ (67 Ն. Ք.) ի գլուխ ելաւ, բայց գէնքէ աւելի՝ ներքին խռովութեամբք ու դաւաճանութեամբ։ Եփրատայ քով մղուած ճակատին մէջ անշուշտ յաղթուեցաւ ի վերջոյ Միհրդատ, եւ սակաւաթիւ հաւատարմօք ստիպուած էր փախչիլ ի Փոքր-Հայս, ինչպէս վերը տեսանք Ստրաբոնի նկարագրութեամբ, եւ ի վերջոյ՝ միշտ հալածուած՝ Կողքիս եւ նաեւ Բոսփոր։ Բայց տակաւին մեծ ծրագիրներով էր, երբ յուսակտուր եղաւ իւր իսկ որդւոյն Փառնակայ մատնութեամբն, որով նախ Թոյն առաւ, եւ երբ այս չազդեց՝ հրամայեց իւր Թիկնապահաց միոյն (գաղատացի Բիտոկոււս կամ Բիտոյտէս) զինքն սպաննել։ Պոմպէոս Թաղել տուաւ դիակը Պոնտոսի արքայից շիրիմներու մէջ ի Սինոպ (63 Ն. Ք.)։ Ուրիշ դաւաճանութիւն մըն էր Տիգրանի Կրտսերոյն՝ ընդդէմ հօր ելլելը եւ պարթեւական բանակ մը Հայաստան բերելը։ Թէեւ Տիգրան*

Կրտսեր եւ Պարթեւք յաղթուեցան, բայց այս դրից մէջ Հայաստանի դուռն հասած Պոմպէոսի դէմ դնել կարելի չէր: Տիգրան հաշտութիւն կնքեց (64 Ն. Ք.) որ ծանր էր. բայց Հայաստանը գոնէ ազատեցաւ ասով: Հրաժարիլ պէտք եղաւ ոչ միայն Գամրաց ու Կիլիկիոյ մասերէն, ոչ միայն Սելեւկեան երկիրներէն, այլ նոյն իսկ Ծոփքն ու Կորդուքն ետ տուաւ: Սակայն քիչ մ'ետքն նոյն ինքն Պոմպէոս իբր իրաւընտիր՝ Տիգրանի յանձնեց Կորդուքն ու հիւսիսային Միջագետքը: Ծոփք թէեւ ժամանակ մը բաժնուեցաւ, բայց յետոյ կրկին Հայաստանի մաս եղաւ, որով դուրս չմնաց Հայաստանի վերջնական սահմաններէ, ինչպէս մնաց Փոքր-Հայք, որ այլեւս հռոմէական եղած էր: Դաւաճանք դժգոհ պիտի մնային ի հարկէ, անգամ մ'որ Հռոմայեցիք իրենց նպատակին հասան: Տիգրան Կրտսեր մինչեւ անգամ Հռոմ տարուեցաւ՝ Պոմպէի ձաղանաց համար: Փառնակ՝ իբր վարձ իւր մատնութեան՝ առաւ միայն Կիմմերական Բոսփորը (Խրիմ):

Հայաստանի արեւմտեան եւ հիւսիսային սահմանք փոփոխութիւն չկրեցին: Եփրատն էր եւ մնաց սահման, Բարձր-Հայք, Տայք ու Գուգարք, զորոնք արդէն Արտաքսիաս կցած էր, մնացին այնպէս. ուստի եւ Հայոց ու Խաղտեաց սահմանքն մնացին հնոյն պէս: Բոլորովին այլազգ էին իրերը Պոնտոսի համար: Պոմպէոսի վերջնական յաղթութեամբ՝

*հռոմէական եղած էին կամ անոնց ազդեցութեան ենթարկուած, ինչպէս վարը՝ Փիւնիկէ, Ասորիք, Կիլիկիա ու Պամփիւլիա, վերը՝ ամբողջ Պոնտոս իւր աշխարհակալութիւնք, Պափղագոնիա ու Բիւթանիա, եւ ընդհանրապէս ամբողջ Փոքր–Ասիա մինչեւ Եփրատ: Հռոմայեցիք՝ իրենց իշխանութեան դիրքէն Թողուցին միջոց մը Գամրաց Թագաւորութիւնն, եւ ուրիշ մանր իշխանութիւններ ալ ստեղծեցին, բայց այս ամէնը՝ մինչեւ որ երկիրը հասուն ըլլար՝ հռոմէական նահանգի վերածուելու: Այս աշխարհաց եւ յատկապէս Փոքր–Հայոց ու Խաղտեաց համար նոր շրջան մը կը սկսէր՝ որ պիտի յանգէր հելլենացման:*

*Միհրդատ Մեծ՝ ինչպէս մեծ էր իբր զօրավար, մեծ էր նաեւ իւր արեւելեան խստութեամբն ու երբեմն նաեւ բարբարոսութեամբը: Իւր գործն արդէն կերպով մը վերջին ճիգն էր արեւելեան «ոգւոյն» ընդդէմ յարաճուն յառաջխաղացութեան հելլենական ոգւոյ: Խիստ էր նոյն իսկ իւր ընտանեաց հանդէպ, ինքն որ՝ պարսիկ սովորութեան համեմատ՝ իւր Լաւոդիկէ քոյրն կնութեան առած էր, սպաննել տուած է իւր որդւոց մէկ քանին: Այսպէս իւր Միհրդատ որդին, զոր Կողքիսի արքայ դրած էր (84 Ն. Ք.) սպաննեց՝ կասկածի մը համար. իւր Մաքատէս որդին դրած էր արքայ Բոսփորի (79—65), բայց որովհետեւ Հռոմայեցւոց բարեկամ եղաւ՝ հալածեց այնչափ որ անձնասպան*

եղաւ։ Իւր Փառնակէս որդին ալ սպանուեցաւ հօրմէն։ Իւր բազմաթիւ դստերաց երկուքը (Միթրիդատիս եւ Նիւսա) թոյնով մեռան։ Իւր որդիքն Արտափեռնէս, Կիւրոս, Դարեհ եւ Քսերքսէս, ինչպէս նաեւ Որսոբաղէս դուստրը՝ Պոմպէի ձաղանաց համար Հռոմ տարուեցան։ Բայց Որսոբաղէս՝ կին Սոկրատայ, որուն օգնեց Միհրդատ Մեծ՝ Բիւթանիոյ գահն ելլելու, յետոյ Պոմպէոսէ ընդունեցաւ Բոսփորի գաւառը, ի Պրոպոնտիս, հին Կիոս կոչուածն, որ Պոնտական արքայից նախկին նիստն էր։ Միւս դուստրներէ ինչպէս Կլէոպատրա կնութեան տրուած էր Տիգրանայ, նոյնպէս Աթենայիս՝ Արիոբարզանայ։ Յիշեցինք թէ անդրանիկ որդին Արիարաթ անուամբ Գամրաց գահ ելաւ, բայց երկարակեաց չեղաւ (մեռած 87ին)։ Իսկ Փառնակ Բ. (ծնած 97ի), որ Բոսփորի արքայ եղաւ (63—47) բնականապէս դժգոհ իրաց ելքէն՝ փորձեց ձեռք ձգել Պոնտոսի թագաւորութիւնը։ Եւ յաջողեցաւ ալ՝ Հռոմայեցւոց ներքին խնդրոց առթէն օգտուելով։ Բայց երբ արեւելք եկաւ Կեսար՝ այնպէս արագ ու վերջնական էր յաղթութիւնն, որ ծանօթ պատգամը կրնար ուղարկել ի Հռոմ «Եկի, Տեսի, Յաղթեցի»։ Փառնակայ մահուանէ ետքը (47 Ն. Ք.) Կեսար Բոսփորի թագաւորութիւնն ալ ուղեց տալ բոլորովին ուրիշի մը, Պերգամացի Միհրդատայ, որդւոյ Մենոդոտոսի։ Միհրդատ կրթուած Միհրդատայ Մեծի քով, յետոյ օգնական Կեսարու,

*չկրցաւ պահել այն թագաւորութիւնը, եւ Ասանդր, որ կնութեան առած էր զԴինամիս դուստր Փառնակայ Բ., մերժեց զինքն, որ սպաննուեցաւ (45 Ն. Ք.) եւ Ասանդրոս մնաց արքայ Բոսփորի (47—17 Ն. Ք.): Այս կէտերը յիշեցինք, վասն զի այս տունը կապ ունի Փոքր-Հայոց ու Խաղտեաց ապագայ իշխանաց հետ, ինչպէս պիտի տեսնենք:*

§ 3. Հռոմայեցւոց շրջան: — *Հռոմայեցիք մեծ երկրի մը տէր՝ նոյնը բնականապէս պիտի կազմակերպէին այնպէս որ իրենց իշխանութիւնն ապահովէր, մինչեւ երկիրներուն վերջնական նահանգի վերածումը: Նոյն իսկ Պոմպէոս հարկ տեսաւ թողուլ այլեւայլ մանր իշխանութիւններ, որոնց իշխանք ի հարկէ այնուհետեւ Հռոմայեցւոց կամաց համեմատ կ՚ընտրուէին: Պոմպէոս հիմնած է բազմաթիւ քաղաքներ այս ամէն կողմանց մէջ, որոնց նպատակն էր հելլենականութեան կենդրոն ըլլալ եւ իբր այնպիսի ազդել շրջակայից վրայ: Նոյն դերն իրօք կատարած է Նիկոպոլիս՝ Փոքր-Հայոց մէջ, ինչպէս միւսներն՝ իրենց կարգին: Ասոնց թուէն էր հաւանօրէն նաեւ այն որ յետոյ Սեբաստիա կոչուեցաւ հին Կողոփենէ գաւառի մէջ Փոքր-Հայոց սահմանին վրայ, որ չատ յետոյ «Հայոց» անուն կրող հռոմէական շրջանի մը կենդրոն պիտի ըլլար: Հռոմէական վարչութիւնը պէսպէս բաժանումներ ըրաւ՝ ըստ ժամանակաց: Նախ ինքն Պոմպէոս կարգաւորեց իրերը. բայց քիչ մ՚ետքն*

առնք փոփոխութիւն կրեցին, որովհետեւ երկիրներուն մէկ մասը տակաւին հասուն չէր՝ հռոմէական իրաւունք ստանալու: Բազմաթիւ՝ մանաւանդ բարբարոս ազգերը, որոնց մէջ Հռոմէացիք ու Յոյնք կը դասէին նաեւ Փոքր–Հայքն ու աւելի իրաւամբ Խաղտիք, նախ պէտք էին հելլենացման ենթարկուիլ: Որովհետեւ Հռոմէացիք Փոքր–Ասիա չլեցուցին իտալացի գաղթականներով, որով այս երկիրները չհռոմէացան, ինչպէս եղան իրենց միւս գաղթավայրերը (Գաղղիա, Սպանիա եւն): Այս կողմը հռոմէական տարրին դերն ստացած էր յոյն տարրն, որ յընթացս դարուց առաւ «Հռոմ» (հռոմէացի) յորջորջանքն: Այս անունը գիտեն մեր մատենագիրքն այսպէս արդէն կանուխէն: Նոյն իսկ Պոմպէոսի ստեղծած մեծ նահանգը՝ «Պոնտական Եպարքի» չմնաց այնպէս, եւ անոր ալ մասեր տրուեցան իշխանաց վարչութեան: Գլխաւորաբար Անտոնինոս՝ եռապետներէն մին, որ իւր բաժինն առաւ Արեւելքը (40 Ն. Ք.) ըրած է այսպիսի նորանոր բաշխումներ: Ստրաբոն այլեւայլ տեղեր կը նկարագրէ այս իրերն մինչեւ իւր գրած ատեն (իրր 18/17 Յ. Ք.): Այսպէս կը գրէ[29] թէ Հռոմայեցիք զԳամիրք, ինչպէս տեսանք, տուին Արխոբարզանէսի, «որուն սերունդն՝ մինչեւ երեք սերունդ հասնելով սպառեցաւ»: Այնուհետեւ թագաւոր «տրուեցաւ

[29] Ստրաբոն, ԺԲ. 540։

Անտոնինոսէ՝ Արքեղայոս, որ ազգակցութեան կապ մը չունէր»․ իսկ այնուհետեւ հռոմէական ծերակոյտն որոշած էր նահանգի վերածել երկիրն՝ թագաւորութիւնը ջնջելով (17/18 Յ․ Ք․)։ Յիշելով Միհրդատայ երկիրն Հերակղիայէ մինչեւ Կողքիս, զոր գրաւեց Պոմպէոս, ինչպէս վերը յառաջ բերինք, կը շարունակէ Ստրաբոն․ «Այն (երկիրն) որ դէպ ի Հայաստան (πρὸς Ἀρμενίαν) է եւ Կողքիսի շուրջը (περὶ τὴν Κολχίδα) բաշխեց իրեն պատերազմակից իշխաններու։ Մնացեալը բաժնեց 11 վարչութեանց եւ աւելցուց (կցեց) Բիւթանիոյ, այնպէս որ երկուքէն մէկ նահանգ (ὑπαρχία) եղաւ։ (— Այս է՝ Պոմպէի ստեղծած «Պոնտական նահանգ»ը կամ «Եպարքին» —)․ Միջերկրեայց (τῶν μεσογαίων, «Միջերկրեայք» բացատրութիւնը ծանօթ է մեր մատենագրաց ալ) քանի մը մասեր տուաւ Պիւղեմէնու յաջորդաց՝ թագաւորելու։ Ինչպէս որ զԳաղատացիս՝ (տուաւ) չորրորդապետաց, այն տեղէն։ Յետոյ Հռոմայեցւոց առաջնորդները պէսպէս բաժանումներ ըրին, կարգելով թագաւորներ եւ իշխաններ․ իսկ քաղաքներէն մաս մ'ազատ ըրին, ուրիշներն՝ ենթարկեցին իշխաններու, եւ ուրիշներ՝ Հռոմայեցւոց ժողովրդեան իշխանութեան ներքեւ թողուցին» են[30]։ Խօսելով Կողքիսի մասին կը գրէ․ «Երբ Միհրդատ Եւպատոր շատ զօրա-

[30] Ստրաբոն, ԺԲ․ 541։

*ցաւ, տիրեց այս երկրին. եւ այնուհետեւ միշտ իւր բարեկամներէն էր երկրին տեղակալն* (ὕπαρχος, *«հիւպարքոս»*) *եւ կառավարիչը: Ասոնցմէ մին էր մեր մօր (— այլ ընթերց. «հօր») հօրեղբայրը՝ Մոափեռնէս: Եւ ասկից (Կողքիսէ) էր արքային նաւային զօրութեանց պաշտօնի մեծագոյն մասը: Բայց երբ Միհրդատ կործանեցաւ, ի միասին կործանեցաւ անոր ներքեւ եղած ամենայն ինչ, եւ բաշխուեցաւ պէսպէս կերպով: Վերջապէս զԿողքիս ստացաւ* Պողեմոն *եւ անոր մեռնելէն ետքը՝ կ՚իշխէ* Պիւթադորիս, *թագաւորելով թէ՛* Կողքեաց, *թէ՛* Տրապիզոնի, *թէ՛* Փառնակեայ (*ձռգր., տպ. «Փեռակեայ»*) *եւ* վերեւաբնակող բարբարոսաց, *որոնց վրայ յետոյ պիտի խօսինք: Իսկ* Մոսքիկէ (ἡ Μοσχική), *որուն մէջ մեհեան կայ, եռամասն է. որովհետեւ մէկ մասն ունին Կողքեր, միւսը՝ Վիրք, եւ մէկալը՝ «Հայք» են:*

*Մեզի համար կարեւոր է Փոքր-Հայոց ու Խաղտեաց մասին չարունակութիւնն, այն կտորին՝ զոր վերը յառաջ բերինք: Յիշելով Պոմպէի Փոքր-Հայոց մէջ զնիկոպոլիս հիմնելը, կը շարունակէ Ստրաբոն «Այդ* Փոքր-Հայքը, *կ՚ըսէ, ստացաւ մի ըստ միոջէ (իշխանք) ինչպէս որ Հռոմայեցիք կամեցան. ի վերջոյ ստացաւ* Արքեղայոս. *իսկ* զՏիբարենացիս *ու* զխաղտիս (Χαλδαίους), *մինչեւ* Կողքիս *ու* Փառնակիա *եւ* Տրապիզոն *ունի (այժմ) Պիւթադորիս, կին իմաստուն եւ*

իրաց վարչութեան համար: Դուստր էր Պիւթադորայ Տրալլացւոյ. բայց կին եղաւ Պողեմոնի, եւ անոր հետ ի միասին թագաւորեց. յետոյ անոր իշխանութեան յաջորդեց, երբ ան մեռաւ Ասպուրկեան կոչուած բարբարոսաց մէջ, որոնք Սինդիկաց չուրջն են: Եւ Պողեմոնէ ունէր երկու որդի եւ դուստր մը, զոր տուաւ Կոտիւսի Սապէացւոյ: Ասոր դաւով սպանուելովը՝ (դուստրը) մնաց այրի. բայց զաւակներ ունենալով՝ անոնց երիցագոյնն իշխեց: Պիւթադորի որդիներէն մին իբր սոսկական կը գործակցի մօր իշխանութեան, միւսը՝ մօտերս թագաւոր դրուեցաւ Հայոց Մեծաց (τῆς μεγάλης Ἀρμενίας. — այս է Զենոն-Արտաշէս, մեծցած հայ ոգով[31] —): Ինքն (Պիւթադորիս) ամուսնացաւ Արքեղայոսի հետ, եւ կենակից եղաւ անոր մինչեւ վերջը (անոր մահը): Այժմ այրի է եւ ունի յիշեալ երկիրը, եւ նաեւ ուրիշներ՝ ասոնցմէ լաւագոյններ: Որովհետեւ Փառնակիոյ յարակից է Սիդենէ եւ Թեմիսկիւրա. ասոնց ալ վերեւն է Փանարէա Պոնտոսի լաւագոյն մասը» եւն:

Երկար կը խօսի Ստրաբոն՝ այս «լաւագոյն» մասանց վրայ, որոնք Պիւթադորի ձեռքն էին: Որչափ ալ աւելորդ ըլլայ երկար նկարագրութեան ամբողջ թարգմանութիւն

---

31 Ստրաբոն, ԺԲ. 555—556: Հմմտ. Տակիտոս, Տարեգիրք, Բ. 56:

մը, վայրապար չէ քաղել այլեւայլ կէտերը, որոնք պայծառ կը ցուցնեն իրերու վիճակը Ստրաբոնի օրով, որ Կոմանայի իշխանութեան նկարագրութեան մէջ կը յիշէ նաեւ իւր սերած ընտանիքը: Բայց աստի կը տեսնուի թէ մեծամեծ բաժանմանց մէջ կային նաեւ մանր իշխանութիւններ:

Փանարէա, կ'ըսէ, Պոնտոսի լաւագոյն մասն է, որովհետեւ «ձիթաբեր է եւ գինաւէտ եւ ամէն բերք ունի». արեւելքէն ըստ երկայնութեան կը պատէ Պարխադրէս (Պարխար) լեռը, արեւմուտքէն՝ Լիթրոս եւ Ովփլիմոս լերինք: Երկայնութեան համեմատ է լայնութիւնը, եւ մէջէն կը հոսին «Գայլ գետ Հայաստանէ (Փոքր-Հայոց բերելով՝ ἐκ μὲν τῆς Ἀρμενίας ὁ Λύκος) եւ Ամասիոյ մօտ կրճերէն՝ Հիրիկ» (ὁ Ἶρις): Գետախառնունքի վրայի քաղաքը առաջին հիմնադիրը կոչած էր Եւպատորիա, իսկ Պոմպէոս՝ որ կիսաւարտ գտած էր, աւելցնելով անոր հողն ու բնակիչները՝ Մեգալոպոլիս անուանեց: Այս՝ դաշտին մէջտեղն է. իսկ Պարխարի ստորոտն է Կաբիրա (Κάβειρα), ուր շինուած էին՝ Միհրդատի արքունիքն (— յետոյ՝ Պողեմոնի արքայանիստը —), եւ կային՝ ջրամբարտակ, կենդանարան, եւ մօտերը՝ որսատեղի եւ մետաղի հանքեր (μέταλλα): Կաբիրայէ իբր 200 ստադիոն հեռու էր Կենոփորիոն (Καινὸν Χωρίον) ամուր եւ դահավէժ ժայռաբերդ (πετρα) մը. գագաթը շատաջուր աղբիւր կը բղխէ. իսկ ստորոտի

չուրջը դետ է եւ խորին վիհ. ժայռի բարձրութիւնն ահռելի է. անվկանդ է. հիանալի պարսպուած է, բաց ի մասէն՝ զոր Հռոմայեցիք քակեցին. իսկ ամբողջ չրջապատն անտառախիտ է, լեռնուտ եւ անջրդի, այնպէս որ մինչեւ 120 ստադիոն հեռու անկարելի է ճամբար դնել: Հոս էին Միհրդատի մեծարժէք իրաց թանկագիններըը, որոնք այժմ ի Կապիտողիոն (Հռոմայ) են՝ Պոմպէէ նուիրուած[32]: «Այս ամբողջ երկիրն ունի Պիւթադորիս. յարակից՝ բարբարոսականին զոր ստացաւ, եւ Ձեղինիտիս եւ Մեգալոպոլիտէս» (Ձելայի եւ Մեգալոպոլեայ երկիրը): Բայց երբ Պոմպէոս (զԿաբիրա) քաղաք կազմեց եւ Դիոսպոլիս կոչեց, շինութիւններ ըրաւ եւ Սեբաստէ (`εβαστὴ) յորջորջեց, արքունիքն իրր քաղաք գործածելով: Բայց ունի Մէնի մեհեան Փառնակեան կոչուած (Μηνὸς Φαρνάκου), այսինքն՝ Ամերիա գիւղաքաղաքը, որ չատ տաճարասպասիկներ ունի եւ նուիրական երկիր, որուն պտուղը քրմապետը կը վայելէ: Իսկ թագաւորներն ա՛յնչափ կը պատուէին մեհեանը՝ մինչեւ արքունական ըսուած երդումն ընելու ատեն կ՚ըսէին՝ Բախտ արքային եւ Մէն Փառնակայ»: «Իսկ այս՝ Լուսնի (Σελήνης) մեհեան է», ինչպիսիք կան ուրիշ տեղեր ալ: «Փանարիոյ վերեւն է Կոմանա Պոնտոսի (Κόμανα τὰ ἐν τῷ Πόντῳ), համանուն ի Մեծն Կապպա–

[32] Ստրաբոն, ԺԲ. 557:

ղովկիա եղածին (= Կոմանա Գամրաց). եւ նոյն դից (դիցուհւոյ) նուիրուած եւ անոր նման չինուած: «Գրեթէ համանման է, կ՚ըսէ, պաշտաման սպասը՝ թէ նուիրագործութեան եւ աստուածակրութեանց (պատգամաց) եւ թէ՛ մեծարանաց հանդէպ քրմաց. եւ մանաւանդ նախկին թագաւորաց առեն. այն ժամանակ տարին երկու անգամ այսպէս կոչուած ճեմոց (թափօրի) առեն՝ քրմապետն ապարօշ (διάδημα) կը կրէր, եւ թագաւորէն ետքն երկրորդն էր»: Ստրաբոն կը յիշէ զԴորեկայոս «որ մեր մօր նախահաւն էր. եւ միւս Դորիլայոս՝ որ անոր քրոջ որդին է, որդի Փիլետերեայ», եւ ան մեծագոյն պատիւներու հասած էր՝ Եւպատորի կողմանէ, «եւ դարձեալ քրմապետութեան Կոմանայ». բայց «ամբաստանուեցաւ՝ թագաւորութիւնը Հռոմայեցւոց մատնելուն համար: «Անոր անկմամբ՝ զպարտուեցաւ ի միասին նաեւ (Ստրաբոնի ալ) տոհմը»: Մանաւանդ նշանաւոր հանդիսացաւ «մեր մօր հօրեղբայրը Մովափեռնէս (Μοαφέρνες) թագաւորութեան կործանման առեն»: «Թագաւորին (Միհրդատայ Մեծի) բախտակից եղաւ ան եւ իւր բարեկամներն, ի բաց առեալ ոմանք, որոնք կանխաւ հեռացան թագաւորէն. ինչպիսի էր, կ՚ըսէ, մեր պապը մօր կողմանէ, որ տեսնելով թագաւորին պատերազմի անյաջողութիւնն ընդդէմ Լուկուլլոսի եւ դարձեալ անկէ ուծացած ըլլալով բարկութեան համար, որովհետեւ իւր եղբօր-

ուղին *Տիրխոն եւ անոր Թէոփիլոս որդին սպաննած էր (արքայն), գրգռեցաւ վրէժ լուծելու ասոնց եւ իւր անձին, եւ դաշնադիր եղած Լուկուլլեայ հետ՝ իրեն հետ* 15 *բերդերով՝ անջատեցաւ (Լուկուլլեայ կողմն անցաւ). եւ փոխարէն մեծամեծ խոստումներ եղան իրեն»: «Իսկ երբ Պոմպէոս եկաւ» պատերազմին (զօրավարութեան) յաջորդելու,* «անոր (*Լուկուլլոսի*) կողմանէ ամէն շնորհ ընդունողները թշնամի համարեցաւ, *այն թշնամութեան պատճառաւ՝ որ իրենց (Լուկուլլեայ եւ Պոմպէի) մէջ կար»: «Պատերազմն աւարտելէն եւ (Հռոմ) դառնալէն ետքը» ի գլուխ հանեց որ ամէն շնորհմունք, զոր Լուկուլլոս խոստացած էր Պոնտացւոց ոմանց, ծերակոյտը չվաւերացնէ, վճռելով թէ արժան չէ որ պատերազմն ուրիշը մղէ, իսկ մրցանակն ստանայ ուրիշն եւ պարգեւաց բաշխումը: «Արդ* Կոմանա *Թագաւորաց ատեն այսպէս կը կառավարուէր, ինչպէս ըսի: Բայց Պոմպէոս երբ իշխանութիւնն առաւ,* զԱրքեղայոս քրմապետ դրաւ. *եւ անոր շուրջանակի երկու լարաբաժին* ( δίσχοινον ), *այսինքն է* 60 *ասպարէզ (ստադ) երկիր սահմանեց նուիրականին (նուիրական հողին վրայ աւելցնելով). եւ հրամայեց բնակչաց՝ անոր (Արքեղայոսի) հնազանդիլ: Արդ ասոնց* իշխան *եղաւ եւ տէր քաղաքը բնակող տաճարապասկաց, բաց ի վաճառելէն (բաց ի զանոնք վաճառելու իրաւունքէն): Այս Արքեղայոս, կ՚ըսէ, որդի*

էր անոր՝ որ Սիւղղայէ ու ծերակուտէն պատուեցաւ, բարեկամ Գաբինեայ» միայն ի հիւպատականաց։ Որ՝ երբ Ասորիք ուղարկուեցաւ, յուսաց որ ինքն ալ (Արքեղայոս) անոր (Գաբինեայ) գործակից ըլլայ՝ ընդդէմ Պարթեւաց պատրաստած պատերազմին մէջ։ Բայց ծերակուտէն արգելուելով, լաւագոյնին հասաւ։ Որովհետեւ, կ'ըսէ, պատահեցաւ որ Եգիպտացիք մերժեցին զՊտղոմէոս՝ Կղէոպատրայ հայրը· եւ թագաւորութիւնն առաւ դուստրը, որ Կղէոպատրայ երիցագոյն քոյրն էր։ Ասոր համար էրիկ կը փնտռուէր՝ թագաւորական ցեղէ։ Ինքզինքն առաջարկեց (Արքեղայոս) իւր գործակցաց, կեղծելով թէ Միհրդատ Եւպատորի որդին ըլլայ· եւ ընդունուելով՝ վեց ամիս թագաւորեց։ Բայց Գաբինոս սպաննեց զինքը ճակատուն մէջ, զՊտղոմէոս նորէն գահ հանելով։ «Որդին, կ'ըսէ, առաւ քրմապետութիւնը· յետոյ Լիւկոմեդէս (Λυκομήδης), որուն՝ 4 լարաբաժին հող աւելցուեցաւ։ Երբ նաեւ սա մերժուեցաւ, քրմապետութիւնն ստացաւ Դիւտենդոս (Δύτεντος) Ադիատորիգի որդին, որ կը կարծուի այս պատուոյն արժանի եղած կայսերէ՝ իւր առաքինութեան պատճառաւ»։ Ստրաբոն կը պատմէ այս «առաքինութեան» դէպքը· յետոյ կը նկարագրէ Կոմանայի ցոփ կեանքը։ «Կոմանա լի է արամբք· եւ անուանի վաճառանոց է Հայաստանէ եկողներուն (ի Փոքր-Հայոց· ἐμπορεῖον τοῖς ἀπὸ

τῆς 'Αρμενίας ἀξιόλογον) ։ Կու գան մարդիկ՝ դից ճեմոց (Թափօրի) ատեն ամէն կողմանէ տօնախմբութեան, թէ՛ քաղաքներէն եւ թէ՛ գիւղերէն, արք ու կանայք։ Իսկ ուրիշ շատերը միշտ կը պանդխտին ուխտի համար, զոհեր կատարելով դից (դիցուհւոյն)։ Բնակիչք փափկակեաց են. եւ գինեբեր են անոնց ամէն կալուածքները։ Եւ բազմութիւն կայ կանանց որ իրենց մարմինէն կը շահին, որոնց շատերը քրմուհիք են։ Որովհետեւ քաղաքս կերպով մը փոքր Կորնթոս է. որովհետեւ հոն ալ բոզերու՝ որոնք Ափրոդիտեայ քրմուհիք են, բազմութեան համար, շատերը կ'երթան իբր պանդուխտ ու տօնակատար. եւ վաճառականք լիովին կը սնանկանան, այնպէս ծագումն առած է առածս թէ՝ Ոչ ամէն (էրիկ) մարդու է Կորնթոս նաւարկել։ Կոմանա այսպէս է. Իսկ շրջակայ ամբողջ երկիրը (τὴν δὲ κύκλῳ πᾶσαν) ունի Պիւթադորիս, որուն են Փանարէա եւ Զելիտիս եւ Մեգալոպոլիտիս, Փանարիոյ մասին խօսուեցաւ։ Իսկ Զելետիս (Ζηλῖτις) քաղաքն ունի Զելա (Ζηλὰ), Շամիրամայ թմբին վրայ պարսպուած (ἐπὶ κώματι Σεμιράμιδος τετειχισμένην), որ ունի մեհեան Անահտայ՝ զոր նաեւ Հայք կը պաշտեն (τὸ ἱερὸν τοῦ 'Αναΐτιδος, ἥνπερ καὶ οἱ 'Αρμένιοι σέβονται). Նուիրագործութիւնք (պաշտամունք) հոս աւելի սրբութեամբ (= հանդիսիւ) կը կատարուին. եւ կարեւորագոյն իրաց համար ամէն քաղա-

*քացիք հոս երդմունքը կ'ընեն: Մեհենապականց բազմութիւնն եւ քրմաց պատիւք թագաւորաց առեն նոյնպէս էին՝ ինչպէս կանխաւ ըսուեցաւ:* Այժմ ամենայն ինչ Պիւթոդորիսի իշխանութեան տակ է: *Բայց շատ բան վատթարացաւ ու նուազեցաւ, թէ՛ մեհենապականց բազմութիւնը եւ թէ՛ այլ փարթամութիւնք:* Նախ նուազեցաւ յարակից (*Զելայի վերաբերեալ շրջակայ*) երկիրը, բաժնուելով բազմաթիւ վարչութեանց (δυναστείας), *կոչուածն Զելետիս, որ ունի Զելա քաղաքն հողաբլրոյն* (*թմբին*) *վրայ· որովհետեւ հին թագաւորք ո՛չ թէ իբր քաղաք, այլ իբր մեհեան պարսկական աստուածոց կը կառավարէին զԶելա* (τὰ Ζῆλα)· *եւ քրմապետք տէր էին ամենայնի: Կը բնակին* (*հոս*) *բազմութիւն մեհենապականց եւ քրմապետն, որ շատ ընչաւէտ է* («*ի մեծի ճոխութեան է*» *ἐν περιουσίᾳ μεγάλῃ*) *եւ իւր ոչ սակաւ շրջապատողք* («*որք զնովաւ՝ ոչ սակաւք*»): *Բայց Պոմպէոս բազմաթիւ տեղակալութիւններ* (ὑπαρχίας) *սահմանեց այն տեղւոյ եւ քաղաք անուանեց զայն, եւ զՄե*գալոպոլիս (— *ապագայ Սեբաստիա*), *միացնելով ի մի, կոչուածն* Կաղուպենէ (*Καλουπηνὴν*) *եւ զ*Կամիսենէ (*Καμισηνὴν*), որոնք սահմանակից են (Փոքր Հայոց եւ Լաւիանեսինեայ (*δρόρους οὖσας τῇ τε μικρᾷ Ἀρμενίᾳ καὶ τῇ Λαυιανσηνῇ*) *ունենալով քարաղի հանքեր, եւ հին բերդն Կամիսա* (*Κάμισα*), *այժմ աւերակ: Այնու-*

Հետեւ եղող Հռոմայեցւոց իշխանք այս երկու քաղաքաց հողերէն մաս մը տուին Կոմանացւոց քրմերու, մաս մը, Զելացւոց քրմին, եւ մաս մը՝ Ատեպորգի իշխանի մը, Գաղատացւոց չորրորդապետներու տոհմէն. իսկ սոր մեռնելէն ետքն՝ այն մասն, որ մեծ չէր, Հռոմայեցւոց այնպէս կոչուած եպարքութեան ներքեւ ըլլալ վիճակեցաւ (հռոմէական նահանգ եղաւ): Քաղաքիկը (πολοίχνιον, աւան) բաղադրութիւն մըն է, համարնակից ըլլալով նաեւ Կարանացւոց (τὰ Κάρανα), ուսկից աշխարհն ալ կը կոչուի Կարանիտիս (Καρανῖτις). Մնացեալն ունին Պիւթոդորիս եւ Դիւտենտոս: Կը մնայ այն մասն Պոնտոսի, որ այս երկրին եւ Ամիսացւոց ու Սինոպացւոց միջեւ է, հասնելով մինչեւ Կապպադովկիա եւ Գաղատիա եւ Պափղագոնիա: Արդ Ամիսոսէ մինչեւ Աղիւս՝ Փաղիմոնիտիս է» են: Յետոյ կը յիշէ թէ «Ամասիոյ հողին վերեւն են Փաղիմոնացւոց Ջերմուկք (Θερμὰ ὕδατα τῶν Φαζημωνιτῶν), շատ առողջաբար, եւ Սագիւղիոն (Σαγύλιον) սեպ լերան վրայ» են: Այս մասը — յետոյ Գաղատական Պոնտոսի — մեզ համար կարեւոր չէ, քիչ մ'ետքը կը տեսնենք[33]:

Այս ընդարձակ քաղուածքն աւելորդ չէր: Այս լաւագոյն երկիրները, որոնց նախնական վիճակը լաւ պարզած է Ստրաբոն,

[33] Ստրաբոն, ԺԲ. 557—561:

յաճախ կոչուած էին Փոքր-Հայոց հետ, ինչպէս արդէն կը շեշտէ նոյն մատենագիրը: Արդէն բուն Փոքր-Հայք նշանաւոր կեդրոնավայր չունէին, մինչեւ զարգացան Նիկոպոլիս ու Կողոնիա, եւ իրենց կեդրոն էր այս շրջանին Կաբիրա՝ Պողեմոնի Նիստը: Իսկ Կոմանա՝ իրենց գլխաւոր սրբավայրն եղած է միշտ, այնչափ յարգուած, որչափ Երեզայինն յԵկեղեաց Մեծաց Հայոց: Յետոյ նաեւ այն «Մեգալոպոլիս»ն — Սեբաստիան կեդրոն եղաւ հռոմէական «Հայոց» բաժնի մը, որուն մէջ էր Փոքր-Հայք ալ: Վերջապէս Զելա եւ Կոմանա՝ անդրադոյն աշխարհագրական բաժանմանց համեմատ, անցան Գաղատական Պոնտոսի, իսկ մնացեալը՝ Պողեմոնեական Պոնտոսի, որ իբր սահմանակից «բարբարոսական» բաժնին՝ կապ ունէր յաճախ Փոքր-Հայոց հետ:

Որովհետեւ նորանոր բաժանմունք կը բերեն աշխարհագրական նոր յորջորջանքներ ալ, ասոնք այնուհետեւ սովորական եղան: Այս ժամանակէն կը սկսի յաճախել Գաղատական Պոնտոս յորջորջանքը, որ յետոյ կը պարունակէր հին պոնտական մասը՝ Ամիսոս (Սամսոն), Ամասիա, Զելա եւ Պոնտական Կոմանա, եւն: Անկէ արեւելք եղած բաժինն երբ տրուեցաւ Պողեմոնի տան, անկէ սովորական եղաւ յորջորջանքս Պողեմոնեական Պոնտոս, որուն կեդրոն էր Կաբիրա-Նէոկեսարիա, եւ որուն կը վերաբերէին դոնէ Պողեմոնիում

նաւահանգիստ ու Սիտենէ, եւ դարձեալ Կողոպենէ (Սեբաստիա) եւ Խաղխւբ-Խաղտեաց այն բաժինը: Գաղատական ու Պողեմոնական Պոնտոսները միասին կը կոչուէին նաեւ «Միջերկրեայ Պոնտոս», որուն միահաւաք կենդրոնն եղաւ յետոյ Նէոկեսարիա: Այս տեղ դիտելի կէտ մը կայ: «Պողեմոնականն» որչափ նեղ ծովեզերք մ՚ունէր նախնաբար, յետոյ նոյնն ընդարձակուած է՝ դոնէ մինչեւ Տրապիզոն, ուստի պարունակելով Կերասոն ու Տրապիզոնն ալ, ինչպէս կը ցուցնեն՝ ի միջի այլոց Գէորգայ Կիպրացւոյ տուած բաժանմունքը, զոր քիչ յետոյ կը տեսնենք: Եւ այս ընդարձակութեամբ կը նշանակեն սովորաբար նաեւ հնագիտական քարտէսները: Սակայն միջոց մ՚այս մասունք կը վերաբերէին այն բաժնին, որ այս տեղ շատ անյատուկ կերպով կը յորջորջուէր Կապպադովկեան Պոնտոս (Cappadocia ad Pontum): Ասոր մէջն էր ծովեզերեայ այն բաժինը, որուն տիրացած էին Փոքր-Հայք եւ որ Փոքր-Հայոց հետ անցաւ Միհրդատայ եւ անկէ Հռոմայեցւոց. բայց նաեւ անկէ արեւելք ձգուող հին Կողքիսի այն մասն ալ՝ զորչափ յետոյ ստեղծուած Գամրական նահանգին կը վերաբերէր: Այս բաժինն, որուն կ՚իշխէր Պիւթադորիս՝ Ստրաբոնի գրած ատեն, ինչպէս յառաջ բերինք, կը պարունակէր Կերասոս կամ Փառնակիա ու Տրապիզոն եւ Կողքեաց մասին մէջ Հոփզէոն եւ Ապսարոս, այսինքն իբր մինչեւ Ակամփսիսի

*կամ Ճորոխի բերանը: Աստ մէջ էին ուրեմն նաեւ պոնտական ազգերը՝ Տիբարենացիք, Մոսինիկք, Դրիղք, (արեւմտեան) Կողք, Մակրոնք, Ճանք, Կեսսացիք են: Տեսանք արդէն Ստրաբոնի վերը յառաջ բերուած տեղերէն թէ Ստրաբոն գիտէ նաեւ այս Գամբրական Պոնտոսը: Ինքը որ կը յիշէր նախնական «Կապպադովկացիք առ Եւքսինեաւ» Ալիւս գետէ ետքը, երբ Տիգրանայ Մեծի Հայաստանի հիւսիսային սահմանը կ'որոշէ՝ կը դրէ «մինչեւ ցԿողքիս եւ* «Կապպադովկիա առ Եւքսինեաւ»*: Միւս կողմանէ քանի որ Պողեմոնի տնէն եղաւ Պողեմոնական Պոնտոս յորջորջանքը, կրնար նաեւ այս՝ ընդարձակագոյն մտօք ըլլալ Ստրաբոնի տեղեկութեանց համեմատ. որովհետեւ կ'ըսէ թէ Պողեմոն ստացաւ զԿողքիս (զոր ստացած էր Արիստարքոս ալ) եւ իրմէ ետքը՝ Պիւթադորիս կ'իշխէր Կողքեայ, Տրապիզոնի, Փառնակեայ եւ յարակից պոնտական ազգաց: Յամենայն դէպս յետոյ «Պողեմոնական Պոնտոս» ընդարձակագոյն մտօք կը գործածուէր, եւ անգամ մ'որ Գաղատական ու Պողեմոնական յորջորջանքներ մնացին, մնացելոյն ալ Կապպադովկեան յորջորջանք մը կը մեկնուի: Այս՝ հասկանալի եւ աւելի ալ գործածուած այն շրջանին, երբ Հռոմայեցիք ստեղծեցին ընդարձակ «Կապպադովկիա» նահանգ մը, որ կը պարունակէր ո՛չ միայն ամբողջ Գամիրքն, եւ ո՛չ միայն Գաղատա-*

կան ու Պողեմոնեան Պոնտոսները, այլ նաեւ Փոքր–Հայք ու յարակիցք եւ ծովեզերքն մինչեւ Ճորոխի բերանը: Գաղատականէն ու Պողեմոնականէն եւքը յարմար էր այս շրջանին Կապպադովկեան Պոնտոս մը, ինչ ընդարձակութեամբ ալ ըլլար այն: Անոր համար այս միջոցին նոյնը գործածուած կը գտնենք: Այսպէս նաեւ Պտղոմէոս Հայաստանի սահմաններու որոշման մէջ կը գրէ թէ կ՚որոշէ «արեւմտքէն Կապպադովկիա, ուղղութեամբ Եփրատայ եւ Կապպադովկեան Պոնտոսի մինչեւ Կողքիս, Մոսքական լերանց վրայէն» (Ե, ժգ.) եւ Հայաստանի լեռներու մէջ կը գրէ նաեւ թէ «Հայաստանի լեռները կը կոչուին Մոսքական, որոնք կը հասնին մինչեւ Կապպադովկեան Պոնտոս, որ վերն է, եւ Պարխադրիս (Պարխար) լեռը», եւն: Որչափ ալ ընդարձակ մտօք ըլլան «Մոսքիական լերինք», եւ ըլլայ նաեւ ընթերցուած մը թէ «Եփրատ որ է ի մէջ Մոսքիական լերանց», թէ Պտղոմէոս Մոսքիական լեռներով ինչ կը հասկնար՝ յայտնի է անկէ, երբ Հայաստանի գաւառներու մէջ կը գրէր՝ «Առ Մոսքիական լերամբք՝ Կատարգենէ (ուղղել՝ Կոլարգենէ» Կղարջֆ), ի վերոյ քան զկոչեցեալն Բոֆա (այսինքն՝ Բոխա Տայոց): Ինչպէս սոնք աղաւաղուած են (առ հասարակ Պտղոմեայ անուանց մեծագոյն մասը), աղաւաղ են անուանքս՝ «Առ Պարխադէս լերամբ՝ Սիրակենէ, եւ Սակաբենէ», որոնց գոնէ միոյն մէջ Սպերի անունը

փնտռելու ենք: Նոյն մտօք է երբ Կողքիսի մասին ալ կ'ըսէ Պտղոմէոս թէ «Հարաւէն կը յանգի Կապպադովկիոյ ծոցով նշանակուած գծին համեմատ. եւ մնացեալ մասով Մեծ Հայոց, նոյն գծով մինչեւ եզրը» (Ե, Ժ): Կը թողունք յիշել ուրիշները, որովհետեւ յամենայն դէպս Տրապիզոնէ մինչեւ Ճորոխ «Կապպադովկեան Պոնտոս» յորջորջել յարմար չէր, երբ Գամրաց ընդարձակ նահանգն ալ բաժնուեցաւ մասանց: Անոր համար այս առհասարակ անյարմար բացատրութիւնն անգործածական ըլլալու դատապարտուած էր, մինչ Գաղատականն ու Պոլեմոնականը մնացին՝ նաեւ ուրիշ բաժանմանց առեն:

Աւելորդ չէ հոս քանի մը դիտողութիւն ընել այն այլեւայլ արքայից մասին: Ատոնց մաս մը Պամփիւլեան ու Գաղատական տներէն էին, ուրիշները կապ ունէին Պոնտոսի արքայից տան հետ: Թողունք Փառնակայ Բ.ի որդին Դարեհ (Δαρεῖος), որուն Անտոնինոս տուաւ Պոնտոսի թագաւորութեան մէկ մասը (39 Ն. Ք.) ըստ Ապպիանու, (Պտրգմ. Քղք. Ե, 75): Թողունք նոյնպէս Արշակը, որու մասին հետաքրքրական տեղեկութիւն կու տայ Ստրաբոն, երբ կը խօսի Փազիմոնիտիսի մէջ եղած Սագիւղիոն բերդին մասին, բարձր ու սեպ՝ բայց ջրաւէտ լերան մը վրայ, որ Ստրաբոնի օրով անարժէք էր, բայց շատ պիտանի էր, կ'ըսէ, թագաւորաց առեն: Այստեղ, կ'ըսէ, դերեցաւ ու սպաննուեցաւ Փառնակայ որդիներէն

Արշակ (’Αρσακης), որ թագաւորեց ու նորաձեւութիւն ըրաւ, առանց առաջնորդաց միայն թոյլ տալուն: «Բայց գերեցաւ ոչ թէ այն բերդին առնուելովը Պողեմոնի եւ Լիւկոմեդէսի երկու արքայից կողմանէ, այլ՝ սովով»: Որովհետեւ «դաշտերէն հալածուած՝ փախաւ ապաստանեցաւ լեռն առանց պաշարի»: Բայց հոն «ջուր գտաւ՝ կցուած մեծամեծ քարերով»: «Որովհետեւ այսպէս հրաման տուած էր Պոմպէոս՝ աւերել բերդերը. որպէս զի օգտակար չըլլան՝ աւազակութեան համար այն տեղերն ապաստանիլ ուզողներուն»: — Խօսքը վիմափոր նկուղներու կամ ջրամբարներու մասին է, որ շատ տարածուած էին հին բերդերու մէջ ինչպէս ի Պոնտոս, նոյնպէս այլուր:

Կարեւորագոյն է Փառնակայ Բ. դուստրը Դիւնամիս, որ նախ կին էր Ասանդրի՝ Բոսպորի արքային, եւ անոր յաջորդ որոշուած: Ասոր հետ ամուսնացաւ Պողեմոն Ա., որդի Զենոնի, որ արքայ եղած էր Պոնտոսի վերը յիշուած մասին եւ նաեւ Փոքր-Հայոց, որ յետոյ կնութեան առաւ զՊիւթադորիս, ինչպէս տեսանք: Պողեմոն այսպէս միացուց Բոսպորի թագաւորութիւնը Պոնտոսի իւր բաժնին հետ: Պողեմոնէ Ա. ետքը յամենայն դէպս իշխած է Բոսպորի Ասպուրգոս (Ἀσπουργος, կիմմերական ձեւ՝ հայ Ասպուրակ անուան), որդի Ասանդրոքոսի (Ասանդրոս) եւ Դիւնամիսի, եւ այն՝ Պողեմոնէ Ա. ետքը եւ Պողեմոնէ Բ. յառաջ (ուստի իբր

8 Ն. Ք. — 38 Յ. Ք.)։ Որչափ ալ մատենագիրք չեն յիշեր՝ ըստ երեւութին, կան այլեւայլ արձանագրութիւնք՝ որ կը վկայեն, եւ նաեւ դրամ մը։ Փոքր-Հայոց Պիւթադորիսի այն դուստրը, զոր Ստրաբոն կը յիշէ՝ առանց անունը տալու, կը կոչուէր Տրիւփենա (Tryphaena), զոր կնութեան առաւ Կոտիւս Թրակացի։ Ասոնց որդին էր այն Պողեմոն Բ, որ իշխեց Բոսպորի եւ մասին Պոնտոսի (38—42 Յ. Ք.), յետոյ հանուեցաւ եւ Կիլիկիոյ մէջ բաժին մ'ընդունեցաւ (մեռած 63ին)։ Իսկ Ասպուրգոս — Ասպուրակ ունէր երկու որդի, որոնց երէցը Միհրդատ՝ արքայ եղաւ Բոսպորի եւ Պոնտոսի (դրամներ կան 39 եւ 41 տարիներէն ալ) եւ Պողեմոնի Բ. յաջորդեց միջոց մը (իբր 42—45). որմէ ետքը Կղաւդիոս կայսրը հանեց զինքը գահէն, որ Հռոմ երթալով հոն մեռաւ։ Կայսրն իշխանութիւնը տուաւ անոր եղբօր, որ Կոտիւս կը կոչուէր (46—62)։ Այս եղաւ վերջին արքայն Բոսպորի եւ Պոնտոսի միանգամայն, որովհետեւ Հռոմայեցիք այլեւս ժամանակ եկած համարեցան հռոմէական նահանգ ընելու երկիրները։ Բուն Բոսպոր հռոմէական նահանգ ըլլալէն ետքն ալ ունեցաւ իւր ուրիշ արքաներն՝ որոնք յառաջ ալ կային, իբր հարկատու։ Ասոնք այլեւս կապ չունին Պոնտոսի հետ։

Ասոնք, մանաւանդ վերջինք, աւելի Բոսպորի արքայք են բայց նաեւ մասին Պոնտոսի (դոնէ Պողեմոնականին), ցորչափ եւ

ինչպէս «Հռոմայեցիք կ'ուզէին» : Փոքր-Հայք քիչ շատ անկախ դիրք մը պահեց միշտ, եւ ասով ալ կը մեկնուի — Թողունք իւր յատուկ իշխանները — որ երբ Պողեմոնական Պոնտոս նահանգ եղաւ (63/64) : Փոքր-Հայք շարունակեց քիչ մ'ատեն ալ իւր նախկին դիրքը : Սակայն այնպէս խառն են գաղատական, պողեմոնեան, գամրական տանց եւ Փոքր-Հայոց իրերը եւ իշխաններն, այնպէս կապուած յաճախ ոչ միայն Փոքր-Հայոց, այլ նոյն իսկ Մեծ-Հայոց հետ, որ անհնար է պայծառ տեսնել, առանց այս աղերսները քննելու : Իրերու խառնակութիւնը կը ծագի այն կերպէն, որով Հռոմայեցի այլեւայլ ինքնակալներ կը կառավարէին այս երկիրները եւ միջամուխ կ'ըլլային : Երկիրները կը բաժնուէին ու կը միացուէին, կը բաշխուէին ու ետ կ'առնուէին՝ ըստ հաճոյս կամ ըստ պարագայից, ինչպէս այս կամ այն ինքնակալը կ'որոշէր : Եթէ աչքէ անցնենք միայն իսկ՝ ինչ որ Դիոն Կասիոս հաղորդած է այլեւայլ տեղեր, առանց ամբողջական ալ ըլլալու, գաղափար մը կ'ունենանք վարչական այս կերպերուն մասին, որոնք արդէն կապ ունէին Փոքր-Հայոց եւ մասամբ Մեծ Հայոց հետ ալ :

Պոմպէոս յեղաշրջած էր Ղուկուղղոսի կարգադրութիւնքը : Եւտրոպիոս, թէեւ ուշ ժամանակի մատենագիր մը, հետաքրքրական տեղեկութիւն կու տայ այս մասին : Յիշելով թէ Պոմպէոս պատերազմ մղեց նաեւ

Աղուանից դէմ, որոնց թագաւորն էր Որոդէս, եւ յաղթեց Վրաց ալ, որոնց արքայն Արշակ կը կոչուէր, կը յաւելու. «զփոքր-Հայս շնորհեց Դէոտարի, Գաղատիոյ արքային (*Armeniam minorum* Dejotaro, Galatiae regi, donavit), որովհետեւ դաշնակից (solius) եղած էր Միհրդատեան պատերազմին. Արտաղոսի եւ Պիւղեմենի՝ վերատին տուաւ Պափղագոնիա. զԱրիստարքոս թագաւոր դրաւ Կողքիսացւոց (Aristarchum *Colchis* regem imposuit. Եւտրոպ. Զ, ժա): Բայց Պոմպէի ալ կարգադրութիւնքն յեղաշրջելու պէտք տեսաւ Կեսար, վճռական յաղթութիւն տարաւ Պոմպէի դէմ Փարսաղեայ մօտ (48 Ն. Ք.) միահեծան եղաւ. «Ներեց, կ՚ըսէ Դիոն (ԽԱ, 63) Թրակացւոց իշխանին՝ Սատուլոսի, եւ Դէոտարոսի արքայի Գաղատիոյ, թէեւ ճակատուն մէջ էին, եւ Տարկոնդիմոտոսի՝ իշխանի մ՚ի Կիլիկիա, որ Պոմպէի այնչափ օգնած էր ծովու վրայ: Զեմ յիշեր զանոնք, որոնք օգնական զունդ ուղարկած էին եւ որոնց ամէնուն ներեց եւ միայն տուգանք մը դրաւ: Ուրիշ բան մը չըրաւ անոնց կամ չառաւ անոնցմէ, թէեւ անոնց շատերը մասամբ կանխաւ, մասամբ նոր իսկ՝ շատ եւ մեծ բարիքներ ընդունած էին Պոմպէոսէ: Թէեւ Հայաստանի մէկ մասը՝ որ Դէոտարոսի կը վերաբերէր, տուաւ Արիոբարզանայ արքայի Գամրաց: Բայց առաջինն ասով ոչ միայն չկորսնցուց, այլ նաեւ շահեցաւ, որովհետեւ

*ո՛չ միայն իւր հողը չնուաղեցուց, այլ* անոր շնորհեց մէկ մասն Հայաստանի՝ *որ Փառնակէն առնուած էր, եւ* միւս մասը՝ Արիոբարզանի։ *Այսպէս մեծախոհ էր անոնց մասին. բայց Փառնակայ, որ արդիւնք կը կարծէր Պոմպէի չօգնելուն համար եւ անոր համար ներողութիւն կը խնդրէր, ո՛չ միայն շնորհակալութիւն չյայտնեց, այլ նաեւ յանդիմանեց թէ գէշ վարուած է ու պարտամոռաց եղած իւր բարերարին հանդէպ» եւն։ — Աշխարհաց բաժանման՝ օրինակ մը։*

*Դէոտարոս, զոր արդէն վերը տեսանք, Պոմպէէ առած էր Փոքր–Հայքն եւ յարակիցքն։ Իսկ Արիոբարզան՝ որ Կեսարէ ընդունեցաւ Փոքր–Հայքն՝ է Գամրաց Արիոբարզան Գ.* (*իշխած* 52—42)*. ուստի Փոքր–Հայք միացած էին Գամրաց հետ այս առթիւ։ Արիոբարզան երկարատեւ չեղաւ իշխանութեան մէջ։ Երբ Կրասոս Ասորիքէ Փոքր–Ասիա եկաւ Բրուտոսի հետ գործակցելու ընդդէմ եռապետաց, «Արիոբարզան, Հռոդացիք եւ Լիւկիացիք թէեւ չընդդիմացան իրենց, բայց նաեւ չէին ուզեր դաշնակցիլ անոնց հետ»։ Կասկածելով թէ հակառակ կողման չնպաստեն, Կրասոս եւ Բրուտոս որոշեցին նախ զանոնք անվնաս ընել։ Կասիոս «ձերբակալ ըրաւ զԱրիոբարզան եւ սպաննեց»* (*Դիոն*, *խէ*, 33)։

*Փոքր–Հայք եւ այն միւս կից մասերը բնականապէս նորէն բաժնուեցան Գամրաց աշխարհէ, եւ տրուեցան* Պողեմոնի Ա։ *Եթէ*

նախընթացներն իսկ լաւ օրինակ մըն են աշխարհաց բաժանման ու կցման՝ ըստ պարագայից, եւ իշխանաց ալ անհաստատութեան, լաւագոյն օրինակ մըն է ինքն իսկ Պողեմոն, որ արկածալից կեանք ունեցաւ: Երբ Անտոնիոս սկսաւ իր արշաւանքը Պարթեւաց դէմ եւ նաեւ Մարաց (36 Ն. Ք.), որոնց Արտաւազդ թագաւորը թշնամի էր Հայոց Արտաւազդայ եւ բանակցութեան մէջ Պարթեւաց հետ, Հայաստանէ անցնելով մտաւ Ատրպատական եւ պաշարեց Պրաասպա մայրաքաղաքը, ձախողանք ունեցաւ: Պաշարումն անյաջող էր, եւ Մոնեսէսի առաջնորդութեամբ Պարթեւք եւ Մարք յարձակեցան Ստատիանոսի բանակին վրայ «եւ սպանեցին ամէնքը, ի բաց առեալ միայն զՊողեմոն, արքայ Պոնտոսի, որ այն ատեն արշաւակից էր: Զինքը միայն գերի բռնեցին եւ արձակեցին նորէն փրկանքի փոխարէն» (Դիոն, ԽԹ, 25): Պողեմոնի դարձն եղած ըլլալու է յաջորդ տարին, եւ ուրիշ պատճառաւ մ'ալ: «Յաջորդ տարին, Պոմպէոսի եւ Կորնիփիկերսի հիւպատոսութեան ատեն (յամին շինման 719 = 35 Ն. Ք.) որոշեց (Անտոնիոս) արշաւանք մ'ընդդէմ Հայոց թագաւորին, ոչ դոյզն ակնկալութիւն ունենալով Մարաց արքային օգնութեան: Որովհետեւ աս գժտած էր Հրահատի հետ, որովհետեւ անկէ չէր ստացած բաւական մաս մ'աւարէն եւ նաեւ արհամարհուած էր· դարձեալ կ'ուզէր վրէժ լուծել Հայոց

*Թագաւորէն անոր համար՝ որ զՀռոմայեցին կոչած էր. եւ անոր համար ուղարկեց* զՊողեմոնն *անոր (առ Անտոնիոս)*, բարեկամութիւն եւ դաշնակցութիւն առաջարկելու: *Անոր վրայ Անտոնիոս այնպէս ուրախացաւ, որ անոր հետ դաշինք կռեց, եւ* յետոյ Պողեմոնի ի վարձատրութիւն իւր միջնորդութեան տուաւ Փոքր-Հայքը» *եւն (անդ, ԽԹ*, 33):

*Դաշանց միջնորդութիւնն որուն բուն միտքն՝ անձնական շահ մըն է, ո՛չ թէ հռոմէական պետութեան, ուրեմն Թագաւորութիւն մը կ՚արժէր: Բայց Անտոնիոս ուրիշ փոփոխութիւններ ալ ըրած էր արդէն քիչ մը յառաջ եւ բոլորովին ուրիշ պատճառներով ալ: Նոյն իսկ Դիոն Կասիոս չի կրնար առանց հեգնութեան մը պատմել այս բանը: «Այս ինքն վերջը, կ՚ըսէ, Անտոնիոս տուաւ* Ամիւնտասի, թէպէտ եւ սա լոկ գրագիր մըն էր Դէոտարտոսի, *զԳաղատիա, որուն վրայ աւելցուց քանի մը գաւառներ Լիկաւոնիոյ եւ Պամփիւլիոյ,* Արքեղայոսի *տուաւ զԿապպադովկիա, անկէ արտաքսելով զԱրիարաթ: Այս Արքեղայոս թէեւ հայրենի կողմանէ կը սերէր այն Արքեղայոսներէն, որոնք Հռոմայեցւոց դէմ պատերազմած էին*, բայց իւր մայրն էր Գլափիւռա բոզը: *Սակայն այս մասին Անտոնիոս իւր քաղաքացեաց աչքէն չելաւ. որովհետեւ* այս շնորհմունք իրենց

վնասով չէին եղած. ընդհակառակն չէին ներեր իւր յարաբերութիւնը Կղէոպատրայի հետ, որմէ ունեցած էր նախ երկուորեակներ՝ Աղեքսանդր եւ Կղէոպատրա եւ ի վերջոյ ուրիշ որդի մը՝ Պտղոմէոս, որուն Փիլադելփոս յորջորջանքը տուաւ, եւ անոնց տուաւ մեծ մասն Արաբիոյ, «Նաբատիոյ» որ Մալքոսի էր, եւ Իտուրիոյ՝ որուն Լիւսանիաս արքայն, թէեւ ինքը զայն թագաւոր կարգած էր, սպաննել տուած էր. պատրուակելով թէ Բակուրի կողմնակից է. դարձեալ ընդարձակ մասեր Փիւնիկիոյ, Պաղեստին, մինչեւ անգամ մաս մը Կրետէի, Կիւրենէ եւ Կիպրոս: Արդ այն ժամանակ այսպիսի կարգադրութիւններ ըրաւ» (անդ, ԽԹ, 32): — Ամինտաս վերը յիշուեցաւ, Թամբրաց գահագուրկ եղած Արիարաթն (Ժ) էր Արիոբարզանայ Բ. որդին, Արքեղայոսի տունը, որ խառնուեցաւ Մեծ Հայոց գործերուն ալ, քիչ մ'ետքը կը տեսնենք: Պողեմոն Փոքր–Հայքի հետ թագաւոր եղած է «Պոնտոսի», այն բաժնին, որուն իւր անունը տուաւ՝ «Պողեմոնական Պոնտոս»:

Յաջորդ տարին (34 ն. Ք.) վերջապէս ձեռնարկեց Անտոնիոս «առանց մեծ ջանքի վրէժ լուծել Հայէն»՝ դժբախտ Արտաւազդէ, «անոր համար անոր դուստրը կնութեան խնդրել տուաւ իւր Աղեքսանդր որդւոյն համար՝ զԿուինդոս Դելլէոս, որ յառաջ իւր տռփանաց մանուկն եղած էր, անոր (առ

Արտաւազդ) ուղարկեց եւ մեծամեծ խոստումներ ըրաւ: Վերջապէս դարնան սկիզբը յանկարծ եկաւ ի Նիկոպոլիս Պոմպէի եւ կոչեց զԱրտաւազդ եւն (ԽԹ, 39): Փոքր-Հայոց մայրաքաղաքէն եղած ձեռնարկութիւնք ու արդիւնքը յայտնի է պատմութենէ: Արտաւազդ իմացաւ դաւաճանութիւնը եւ չեկաւ: Անտոնիոս աճապարեց դէպի Արտաշատ. եւ ի վերջոյ յաջողեցաւ խաբկանօք գերել զԱրտաւազդ, զոր տարաւ յԵգիպտոս՝ պարգեւ Կղէոպատրայի: Տիրելով Հայաստանի եւ Մարաց Թագաւորի դուստրն իւր որդւոյն հետ նշանելէն ետքը»՝ բանակ թողլով ի Հայս՝ դարձաւ Անտոնիոս յԵգիպտոս: «Յաջորդ տարին» (33 Ն. Ք.) Մարաց հետ դաշնադրութիւնը վերջնական եղած էր. «Այս միջոցին, կ'ըսէ, Անտոնիոս հասաւ մինչեւ Երասխ, իբր թէ Պարթեւաց դէմ կ'ուզէ արշաւել. բայց շատացաւ Մարաց Թագաւորին հետ դաշինք դնելով: Իրարու օգնութիւն խոստացան, մին «Պարթեւաց դէմ, միւսը՝ Կեսարի դէմ, որուն համար մէկը միւսին զինուոր տուաւ: Մարացին ստացաւ նոր գրաւուած Հայաստանի մասեր, իսկ Անտոնիոս Թագաւորին Յոտապէ դուստրը իւր Աղեքսանդր որդւոյն կնութեան եւ այն նշանակները՝ որ առնուած էին Ստատիանոսի դժբախտ ճակատին մէջ: Ասոր վրայ վերջինս (Անտոնիոս), ինչպէս պատմեցինք, զՓոքր-Հայս տուաւ Պողեմոնի» եւն (ԽԹ, 44): Քանի մը խօսքով կը

պատմէ այնուհետեւ Դիոն թէ ինչպէս Մարաց Թագաւորը նախ Հռոմայեցւոց օգնութեամբ յաղթեց Պարթեւաց եւ Արտաշէսի (Արտաւազդի որդին «զոր Հայք անմիջապէս Թագաւոր հռչակած էին եւ որ ապաստանած էր Հրահատայ քով)․ «բայց երբ Անտոնիոս իւր զօրքն յետս կոչեց եւ ընդհակառակն Մարաց զօրքը պահեց, վերջինս (Մարաց Արտաւազդ) պարտուեցաւ եւ գերի բռնուեցաւ, եւ այսպէս Հայաստան ու Մարաստան կորսուեցան»՝ Արտաշէս դահ ելաւ Հայոց (30ին Ն․ Ք․)։ Երբ քիչ մ՚ետքը Պարթեւաց ներքին խռովութիւնք սկսան՝ յաջողեցաւ Մարաց Արտաւազդ փախչիլ ապաստանիլ Հռոմայեցւոց քով։ — Դառնանք Պողեմոնի։

Պողեմոն յամենայն դէպս Հռոմայեցւոց սիրելի եղած է։ Դիոն պատմելով այն տարւոյ դէպքերն, երբ Կեսար Աւգոստոս հիւպատ էր ութերորդ անգամ՝ Տիտոս Ստատիլիոս Տաւրոսի հետ (ամ շինման 728 = 26 Ն․ Ք․) կը նշանակէ․ «Այս տարին Պողեմոն արքայ ի Պոնտոս ընդունուեցաւ Հռոմայեցի ժողովրդեան բարեկամաց ու դաշնակցաց մէջ, բայց (հռոմէական) ծերակուտականաց շնորհուեցաւ առաջին նիստը (նախագահութիւն) իւր ամբողջ տէրութեան մէջ՝ ամէն ներկայացմանց ատեն»․ (անդ, ԾԳ, 25)։ — Հոս Պողեմոն միայն «Պոնտոս»ի (Պողեմոնականին) արքայ կը կոչուի։ Փոքր-Հայք կ՚երեւայ նորէն բաժնուած էր։ Եւ արդէն

*ուրիշ կարգադրութիւն եղած է յետոյ: Դիոն պատմելով այն տարւոյ դէպքերն, երբ Մարկոս Ապուլէոս եւ Պուբլիոս Սելիոս հիւպատոս էին (ամ չինման* 734 = 20 *ն. Ք.) կը գրէ. «Աւգոստոս նահանգները բոլորովին հռոմէական ոճի վերածեց. բայց դաշնակցաց թողուց իրենց սահմանադրութիւնքն եւ անոնց հողերէն ոչինչ կ'ուզէր յաւելուլ հռոմէական տէրութեան կամ նոր աշխարհակալութիւններ ընել. մանաւանդ թէ կը կարծէր թէ պէտք է բաւականանալ արդէն եղած աշխարհակալութեամբք, եւ այսպէս ալ յայտնած էր իւր կարծիքը ծերակուտի ուղղուած գրութեան մը մէջ: Ուստի պատերազմ չըրաւ, բայց Յամբլիքոսի որդւոյ Յամբլիքոսի շնորհեց՝ իւր հօրմէ ունեցած մասն Արաբիոյ, Տարկոնդիմոտոսի որդւոյ Տարկոնդիմոտոսի՝ Կիլիկիոյ իշխանութիւնը, զոր արդէն իւր հայրն ունէր,* ի բաց առեալ ծովեզերեայ մի քանի գաւառներ՝ *զորոնք* տուաւ Արքեղայոսի Փոքր–Հայոց հետ մէկտեղ, *որովհետեւ* նախկին Մեդոս թագաւորը մեռած էր: *Հերովդէսի տուաւ Զենոդորոսի մը չորրորդապետութիւնը, Միհրդատի մը՝ զԿոմագենէ, թէեւ այս շատ երիտասարդ էր դեռ, որովհետեւ ասոր հայրը սպաննած էր այն երկրին թագաւորը: Որովհետեւ Մեծ Հայոց ժողովուրդը կը տրտնջէր «Արտաբազէս» արքայի դէմ եւ թագաւոր կը խնդրէ անոր եղբայրը Տիգրան, որ այն ատեն Հռոմ կը գտնուէր, Աւգոստոս ուղար–*

կեց զՏիրերիոս, որպէս զի մերժէ թագաւորութենէ զայն եւ Տիգրան զահ հանէ» են (ԾԴ, 9)։ — Թողունք Մեծաց Հայոց խնդիրն, ուր Դիոնի հոս «Արտաբազէս» գրածն ուղղելու է Արտաշէս, ինչպէս արդէն Դիոն յառաջ անուանած էր «Արտաքսէս» (ԽԹ. 44)։ Արտաշէսի՝ հռոմէասէր կուսակցութեան կողմանէ սպաննուելէն (21 Ն. Ք.) ետքը՝ Տիբերիոս գահ հանեց անոր եղբայրը՝ Տիգրան հրամանաւ Հոկտաւիանոս Աւգոստոսի (20 Ն. Ք.)։

Կարեւորն այս պարագայն չէ. այլ այն որ Փոքր-Հայք, զոր Անտոնիոս Պողեմոնի «արքայի ի Պոնտոս» տուած էր 33ին Ն. Ք. (Դիոն ԽԹ, 33, 44). պէտք է որ քիչ մ'ետքը բաժնուած ըլլայ այն (Պողեմոնական) «Պոնտոս»էն ալ. որովհետեւ կայ «Մեդոս» արքայ մը Փոքր-Հայոց, որ մեռած էր այս տարին, երբ Հոկտ. Աւգոստոս Արքեղայոսի կու տար Կիլիկեան գաւառներով ալ ի միասին (20ին Ն. Ք.)։ Վերջին պարագայս (— Փոքր-Հայք եւ Կիլիկեան գաւառներ) — ինքնին կը ցուցնէ թէ այս Արքեղայոս չէ զատ անձ մը, երբ ուրոյն Արքեղայոս մը «արքայ Փոքուն Հայոց», ինչպէս հասկցած է ազգային բանասէր մը[34], այլ նոյն ինքն է՝ Արքեղայոս Գամրաց, զոր Դիոն ալ վերը յիշած էր (ԽԹ, 32). եւ որուն

---

34 Աստուրեան Հ. Յ., Քաղաքական վերաբերութիւններ ընդմէջ Հայաստանի եւ Հռոմայ, Վենետիկ 1912, էջ 126։

հետ, Պողեմոնէ ետքը՝ ամուսնացած էր Պիւթոդորիս, ինչպէս յառաջ բերինք Ստրաբոնի պատմածին համեմատ ալ: Եթէ լաւ կշռենք Ստրաբոնի այն տեղեկութիւնքը՝ որոշ կը տեսնուի թէ այսպէս Գամրաց հետ կրկին միացուած Փոքր–Հայքն իրական կամ յատուկ մտօք աշխարհն էր· ուստի բաժնուած էին՝ ոչ միայն Պողեմոնի «Պոնտոս»ը (Պողեմոնիում, Նէոկեսարիա, Կողոպենէ), այլ նաեւ Փոքր–Հայկական եղած ծովեզերքը: Որովհետեւ Ստրաբոն յայտնի կ՚ըսէ թէ Պողեմոն ստացաւ նաեւ զԿողքիս, եւ անոր մեռնելէն ետքը ժառանգեց կինը Պիւթոդորիս, որ կ՚իշխէ, թէ՛ Կողքեաց, թէ՛ Տրապիզոնի, թէ՛ Փառնակիայ եւ շրջակայ բարբարոսաց. (տես վերը): Զայս՝ կ՚ըսէ Ստրաբոն, խօսելով Կողքեաց՝ Պողեմոնի բաժնին մասին: Նոյնը կը կրկնուի, երբ Փոքր–Հայոց մասին կը խօսի, զոր «ստացաւ ի վերջոյ Արքեղայոս»: Իսկ, կը յաւելու, զՏիբարենացիս եւ զԽաղտիս մինչեւ Կողքիս ու Փառնակիա եւ Տրապիզոն ունի (այժմ) Պիւթոդորիս, եւն: Ստրաբոնի խօսքերէն կը տեսնուի թէ Պիւթոդորիս, որ «կին եղաւ Պողեմոնի եւ անոր հետ միասին թագաւորեց, յետոյ անոր իշխանութեան յաջորդեց»՝ ստացած էր իբր Պողեմոնի բաժին՝ բացի բուն Պողեմոնական Պոնտոսէ՝ յիշեալ ծովափնեայ մասն ալ՝ Փառնակիայէ մինչեւ Կողքիս: Բայց արդ Պողեմոն մեռած ատեն այլեւս բուն Փոքր–Հայոց արքայ չէր·

քանի որ ան կանխաւ տրուած էր «Մեղոս» արքայի եւ անոր մահուանէ ետքը՝ տրուեցաւ Արքեղայոսի Գամրաց: Սակայն յետոյ կրկին միացած ըլլալուն են Փոքր-Հայք, անջատուելով նորէն Կապպադովկիայէ: Որովհետեւ նոյն Պիւթոդորիս, կ'ըսէ Ստրաբոն, «ամուսնացաւ Արքեղայոսի (Գամրաց) հետ, եւ կենակից եղաւ անոր մինչեւ վերջը» այսինքն՝ Արքեղայոսի մահը, որով Գամրաց գահն ալ վերջ գտաւ (17 Յ. Ք.): Քանի որ Գամիրք արդէն այնուհետեւ հռոմէական նահանգ եղաւ, Փոքր-Հայք պէտք է որ բաժնուէին. եւ Պիւթոդորիս՝ ժառանգ Պողեմոնի բաժնին, ստացաւ նաեւ Արքեղայոսի բաժինը, յատուկ մտօք Փոքր-Հայքն ալ: Յամենայն դէպս ուրեմն Փոքր-Հայոց արքայից կարգն է՝ Պողեմոն Ա. «Մեղոս», Արքեղայոս Գամրաց եւ Պիւթոդորիս, որ կ'ապրէր Ստրաբոնի գրած ատեն:

Ո՞վ է սակայն այն «Մեղոս»: Եթէ ճիշդ է ընթերցուածը՝ հարկ չկայ զայն իրական անուն առնելու: Որովհետեւ «Մեղոս» կրնայ նշանակել պարզապէս «Մար». ուստի Մարաց աշխարհէ իշխան մը: Այսպէս ալ կ'ընդունին այլեւայլ բանասէրք. եւ ազգային բանասէր մը կը գրէ թէ Աւգոստոս չէր ուզեր Հայոց Արտաշէսի դէմ գործել՝ Պարթեւական պատերազմ մը յառաջ չբերելու համար. բայց «գիտցաւ թէ՛ Հայաստանի եւ թէ՛ Պարթեւաստանի մէջ Հռոմէական կուսակրու-

Թիւն մը ձեւացնել եւ որպէս զի Արտաշէսի վրայ աւելի մօտէն կարենայ հսկել, անոր դրացի դրաւ Փոքր–Հայոց գահին վրայ Մարաց Արտաւազդ թագաւորը, որ Արտաշէսին ձեռք գերի ինկած էր յառաջագոյն եւ անոր հօր ալ թշնամին եղած էր[35]»: Ըստ այսմ «Մեդոս» ըլլալու է այն «Մարաց Թագաւորը»՝ զոր վերը տեսանք, որ Պարթեւաց եւ Հայոց ձեռք գերի իյնալէն ետքը (30 Ն. Ք.) կրցած էր փախչիլ ապաստանիլ Հռոմայեցւոց քով: Քանի որ արդէն 20ին Ն. Ք. մեռած էր «Մեդոս» եւ Փոքր–Հայք կը տրուի Արքեղայոսի, շատ երկար կառավարած ըլլալու չէ: — Անցողակի յիշենք թէ շատ նման անունով «Մեդէոս» արքայ մը կը յիշուի՝ յաջորդ Լիւսիմեդեայ արքայի «Կապպադովկեան Պոնտոսի» մէկ մասին եւ այն՝ ժամանակակից: Ակտիոնի նշանաւոր ճակատամարտէն (31 Ն. Ք.) ետքն ընդդէմ Անտոնիոսի երբ Ոկտաւիանոս միահեծան եղաւ (30 Ն. Ք.), «պատժեց, կ'ըսէ Դիոն, քաղաքները տուգանքներով եւ զրկելով այն իրաւունքներէն՝ զորոնք մինչեւ այն ատեն ունէին ժողովրդական ժողովքներու մէջ, իսկ բոլոր իշխանաց ու Թագաւորաց ամէն երկիրները, զորոնք Անտոնիոսէ ընդունած էին, ետ առաւ, ի բաց առեալ Ամիւնտասայ եւ Արքեղայոսի երկիրները: Փիլոպատորէ, որդւոյ Տարկոնդիմոտոսի, եւ Լիւկոմե–

---

35 Աստուրեան, Հայաստան–Հռոմ, էջ 124:

դէսէ, որ արքայ էր մասին Կապպադովկեան Պոնտոսի, եւ Աղեքսանդրէ, որդւոյ Ցամբղիքեայ, առաւ իրենց թագաւորութիւնները: Վերջինս՝ որ իւր երկիրն ընդունած էր իբր վարձք զԿեսար թշնամանելուն համար, ճաղանաց մէջ շրջեցուց եւ յետոյ գլխատել տուաւ: Լիւկոմեդէսի երկիրը տուաւ Մեդէոսի մը, որովհետեւ տակաւին նաւամարտէն յառաջ յաջողած էր յԱսիա զՄիւսացիք Անտոնիոսէ ապստամբեցնել, եւ անոնցմով պատերազմեցաւ անոնց դէմ՝ որոնք տակաւին անոր (Անտոնիոսի) կողմնակից էին» եւն (Դիոն, ԾԱ, 2): Այս Լիւկոմեդէսը տեսանք վերը՝ Պողեմոնի հետ զինակից ընդդէմ Արշակայ, երբ կը պաշարէին Սագիւղիոն բերդը՝ «այս երկու թագաւորները»: Բերդիս դիրքն, ինչպէս ուրիշ պարագայք, կը ցուցնեն թէ Դիոն «Կապպադովկեան Պոնտոս» հին իմաստով կը գործածէ, այն որ յետոյ Գաղատական Պոնտոս յորջորջուեցաւ: Ասոր մէջ մտաւ նաեւ Պոնտական Կոմանա, որուն Լիւկոմեդէս քուրմ-իշխանը յիշուած տեսանք Ստրաբոնէ: Ջիարդ եւ է, անցնինք կրկին Պողեմոնի, որ յաջողեցաւ ի վերջոյ Բոսպորն ալ կցել իւր «ի Պոնտոս» բաժնին:

«Յաջորդ տարին, կ՚ըսէ Դիոն, հիւպատ էին Մարկոս Կրասոս եւ Կնէոս Կոռնելիոս» (ամ շինման 740 = 14 Ն. Ք.): Այս տարին, կ՚ըսէ, «Կիմմերական Բոսպորի մէջ ծագած խռովութիւնք զսպուեցան: Որովհետեւ

Սկրիպոնիոս անուն անձ մը, որ ինք զինք Միհրդատի թոռ կը հռչակէր, եւ կ՚ուզէր որ Ասանդրի մահուանէ ետքը (17 Ն. Ք.) իշխանութիւնստանայ Աւգոստոսէ, ամուսնացած էր անոր այրւոյն՝ Դինամիսի հետ, որ դուստր էր Փառնակայ եւ թոռ Միհրդատայ, եւ իր ամուսնէն (Ասանդրէ) սահմանուած էր գահաժառանգ, եւ այսպէս տիրած էր (Սկրիպոնիոս)՝ Բոսպորի։ Այս լուրն առնլով՝ Ագրիպպա անոր դէմ ուղարկեց զՊողեմոն, արքայ Պոնտոսի՝ դրացի աշխարհին Գամրաց։ Բայց Պողեմոն այլեւս կենդանի չգտաւ զՍկրիպոնիոս. Բոսպորացիք կանխաւ սպաննած էին՝ լսելով իրենց հանդէպ գործուած խաբէութիւնը։ Բայց որովհետեւ կը վախնային թէ իրենց նոր իշխան մը պիտի ըլլայ (Պողեմոն), ընդդիմացան. այսպէս ճակատ տրուեցաւ, որուն մէջ յաղթեց անոնց (Պողեմոն)։ Բայց չկրցաւ զանոնք լիովին նուաճել, մինչեւ որ Ագրիպպա Սինոպ հասաւ՝ անոնց դէմ արշաւելու։ Այս ատեն միայն զէնքերը վար դրին եւ անձնատուր եղան Պողեմոնի, որ այնուհետեւ՝ հրամանաւ Աւգոստեայ՝ զԴիւնամիս կնութեան առաւ։ Ասոր վրայ զոհաբանական զոհեր մատուցուեցան յանուն Ագրիպպայ, բայց ճաղանք չկատարեց» եւն (ԺԴ, 24)։ — Ասկէ՝ միութիւն Բոսպորի եւ Պոնտոսի մէկ բաժնին, որ տեւեց մինչեւ նահանգ ըլլալը (63 Յ. Ք.)։

Թէ Հռոմայեցիք վերջին կէտը, այսինքն

երբ երկիր մ'այլեւս հասուն կը համարէին հռոմէական վարչութեան ենթարկելու, ինչպիսի դաւեր եւ պատրուակներ կը ստեղծէին, կը ցուցնէ Գամրայ Արքեղայոսի դէպքը, որ կը վերաբերի նոյն ու նաեւ Փոքր-Հայոց որ Արքեղայոս միանգամայն արքայ էր Փոքր-Հայոց։ Արդէն Տակիտոս իւր անաչառ ոճով նկարագրած է նոյն դէպքը[36]։ Նոյնը կը նկարագրէ Դիոն այսպէս. «Ցաջորդ տարին հիւպատ էին Գայոս Կեկիլիոս եւ Լուկիոս Փլակկոս» (ամ շինման 770 = Ց. Ք. 17) Տիբերիոս, կ'ըսէ, «բարկացած էր Արքեղայոսի՝ Գամրայ արքայի դէմ։ Որովհետեւ յառաջագոյն՝ Աւգոստոսի ատեն՝ ամբաստանուած իւր ժողովրդենէ, խնդրած էր իւր (Տիբերի) պաշտպանութիւնն եւ պաշտպանութիւն ալ գտած. բայց անտես արած էր զայն, երբ Հռոդոս գացած էր (Տիբեր), մինչդեռ երբ Գայիոս Ասիա հասած էր՝ անոր մեծարանաց այցելութիւն ըրած էր։ Հիմայ Տիբերիոս զայն Հռոմ կոչեց՝ պատրուակաւ թէ մտադիր է ապստամբիլ. եւ ծերակուտի ատեանը հանեց զինքը, թէեւ այն ծերունին ոտնացաւ ունէր եւ խելքն ալ լիովին գլուխը չէր երեւար։ Ցառաջագոյն ալ ստուգիւ խելագարած էր, այնպէս որ Աւգոստոս տէրութեան հոգաբարձու մը դրած էր։ Բայց այս ատեն իրապէս (խելագար) չէր. այլ այնպէս ձեւացուց, որպէս զի

[36] Տակիտոս, Տար. Բ. գլ. 42։

իւր կեանքն ազատէ: Իրօք ալ մահուան կը դատապարտուէր, եթէ վկայ մ'անոր դէմ վկայած չըլլար թէ սպաննուած ըլլայ (Տիբերի)՝ «Եթէ վերադառնամ՝ իմ բազկիս ոյժը պիտի զգայ»: Երբ ասոր վրայ ընդհանուր բրբիչ մը ծագեցաւ, որովհետեւ (Արքեղայոս) ոչ միայն ոտքի վրայ կենալ չէր կրնար, այլ եւ ոչ նստիլ իսկ, Տիբերիոս շնորհեց կեանքը: Դարձեալ այնպէս տկար էր որ ծածկուած պատգարակով ատեան բերել հարկ եղաւ: Որովհետեւ այն ատեն արանց համար ալ սովորութիւն եղած էր, դեսպակաւ տարուիլ երբ հիւանդ էին ու ծերակոյտի առջեւ երեւալ պէտք էին, եւ Տիբերիոս անոր համար այս դէպքիս մէջ ալ թոյլ տուաւ: Իրօք ալ պատգարակի մէջէն քանի մը խօսք ըսաւ: Այս ազատեց Արքեղայոսի առ այժմ կեանքը. բայց եւ այնպէս քիչ մ'ետքը մեռաւ. այն ատեն Կապպադովկիա հռոմէական նահանգ եղաւ եւ ասպետ մը կուսակալ տրուեցաւ» եւն (Ծէ, 17):

Ստրաբոն երբ կը գրէր՝ այն դէպքը նոր պատահած էր, որով գիտէր Գամրաց Նահանգ ըլլալու վճիռը, բայց չէր գիտեր թէ ինչ բաժանումներ պիտի ընէին Կապպադովկիոյ մասանց: Ի հարկէ Ստրաբոն իւր գործը ձեռքէ չէ թողուցած եւ մինչեւ մահը յաւելուածներ ըրած, որով կան հոն մասեր՝ որ այս թուականէս շատ ետքն ալ են: Անոր համար մինչ Գամրաց մասին մէջ այնպէս անորոշ վիճակ մը կը ներկայացնէ, Փոքր-

Հայոց մասին մէջ չատ աւելի անագանագոյն տեղեկութիւններ կուտայ, ինչպէս արդէն տեսանք: Անոր համար Արքեղայոսի մահուանէ ետքը, կ'ըսէ, Պիւթոդորիս «այժմ այրի է», եւ կ'իշխէր ինչպէս Փոքր-Հայոց, եւ Տիբարենացւոց, Խաղտեաց, Փառնակիոյ ու Տրապիզոնի, այլ նաեւ վերոյիշեալ «լաւագոյն» երկիրներուն: Այս ամէնը տակաւին հռոմէական նահանգ ըլլալու յարմար չէին դատած Հռոմայեցիք: Գամրաց նահանգ ըլլալէն ետքը՝ Արքեղայոսի տրուած Փոքր-Հայք՝ տրուած էր Պիւթոդորիսի: Դժբախտաբար ծանօթ չէ թէ երբ մեռած է Պիւթոդորիս, եւ ո՛վ եղած է արդեօք անմիջական յաջորդը: Բաւական անջրպետ կայ մինչեւ յաջորդ արքայն՝ որ կը յիշուի: Կարելի է թէ տեղեկութիւններ կային Տակիտեայ քով, որ աւելի տեղեկութիւններ ունի՝ զորոնք Դիոն զանց ըրած է նշանակել: Բայց դժբախտաբար Տակիտեայ մէկ մեծ մասը կորսուած է (է.—ժ. գրքերը): Ա. դարու կիսուն մօտ կրկին կը յիշուի Փոքր-Հայոց արքայ մը՝ Թրակեան-Բոսպորական անուամբ. Դիոն պարզապէս կը յիշէ. իսկ Տակիտոս կու տայ անդրադոյն տեղեկութիւն մ'ալ որ նաեւ Մեծ Հայոց պատմութեան համար կարեւոր է: Գայիոս Կաղիգուղայի (37—41) կենսագրութեան մէջ պատմելով անոր «յաջորդ տարին, երբ հիւպատ էին Մարկոս Յուլիանոս եւ Պուբլիոս Նոնիոս» (ամ շինման 791 = Յ. Ք. 38), ի միջի այլոց կը գրէ. «Այս ժա-

*մանակ զՍոյեմոս դրաւ Իտուրական Արա-*
*բիոյ վրայ*, զԿոտիւս՝ Փոքր–Հայաստանի, եւ
քիչ մ'ետքը՝ նաեւ մասի մ'Արաբիոյ(*), իսկ
զՀռիւմետալկէս՝ Կոտիւսի տէրութեան վրայ,
Պողեմոնի տուաւ իւր հօր Պողեմոնի իշխա-
նութիւնը. *եւ տրամադրութիւնքն ծերակու-*
*տէն հաստատել տուաւ». (Դիոն, ԾԹ*, 12)։
*Ըստ երեւութին Դիոն կ'ամփոփէ հոս քանի*
*մը տարուան պատմութիւնը քանի մը բառով։*
*Կղաւդիոս կայսեր* (41—54) *առաջին տարին*
*ըրած բաշխմաց մէջ Փոքր–Հայք չեն յիշուիր*
*քանի որ Կոտիւս էր հոս արքայ։ «Ասոր*
*վրայ, կ'ըսէ Դիոն, Անտիոքոսի կրկին տուաւ*
*Կոմագենէն, զոր Գայիոս անոր տուած եւ ետ*
*առած էր. եւ զՎրացի Միհրդատ, զոր*
*Գայիոս Հռոմ կոչած* (37*ին Յ. Ք.*) *եւ բան-*
*տարգել ըրած էր, արձակեց իւր տէրու-*
*թեան երկիրը (ի Մեծ Հայս)՝ իշխանու-*
*թիւնը նորէն ստանալու։ Ուրիշ* Միհրդատի
*մը, որ համանուն հռչակաւոր թագաւորէն*
*(Միհրդատ Մեծէ) կը սերէր, տուաւ Բոս-*
*պորը, եւ* Պողեմոնի՝ *որ այն երկրին մինչեւ*
*այս ատեն իշխան էր, փոխարինութիւն*
*ըրաւ՝* Կիլիկիոյ *մաս մը տալով։ Ագրիպպայի*
*ի Պաղեստին, որ իրեն օգնած էր իշխանու-*
*թեան հասնելու, որովհետեւ ճշդիւ այն*
*ատեն Հռոմ էր, աւելի երկիր տուաւ եւ հիւ-*
*պատական պատիւ շնորհեց իսկ անոր եղ-*
*բօր Հերովդի՝ պրետորի աստիճան եւ իշխա-*
*նութիւն երկրի մը վրայ» եւն (Դիոն*, 1. 8)։
*Այն Պողեմոն, որդի Պողեմոնի, որ նախ կը*

ստանար Բոսպորի եւ Պոնտոսի թագաւորութիւնը (38—42 Յ. Ք.) յետոյ միայն Պոնտոսի, եւ ի վերջոյ կը բռնադատուէր գոհանալ Կիլիկիոյ մասի մը իշխանութեամբ, զոր ի փոխարինութիւն Բոսպորի ընդունած էր Պոլեմոն Բ (42—63), զոր տեսանք, ի Բոսպոր յաջորդ Ասպուրակայ: Տակիտոս ընդարձակ պատմած է Բոսպորի «միւս Միհրդատայ» վարքն, որ քիչ ժամանակ իշխեց եւ երբ մերժուելով իւր տեղը դրուեցաւ Կոտիւս եղբայրը՝ «պատանի անփորձ» եւ «երբեմն հաւատադրուժ եւ ապա թշնամի», ապստամբեցաւ եւ Դանդարաց երկրին տիրեց, բայց ի վերջոյ ստիպուած էր Հռոմ երթալ՝ գթութիւն հայցելու[37]:

Հռիւմետալկէսի որ Կոտիւսի տէրութիւնն ընդունեցաւ, Թրակացւոց պատմութեան կը վերաբերի: Բայց այս տունը նոյնպէս ազգականութեան կապ ունէր Պիւթոդորիսի հետ, որուն դուստրն՝ ինչպէս Ստրաբոնէ տեսանք, տրուած էր Թրակացւոց Կոտիւսի, որուն սպաննուելէն ետքը» երէց որդին իշխեց հոն: Ստրաբոնի այս կարճ տեղեկութիւնը բանասէրք կը կապեն այն ընդարձակ տեղեկութեանց հետ, զոր կու տան Տակիտոս եւ քիչ մը տարբեր Դիոն: Ըստ Տակիտեայ՝ Թրակիոյ Հռիւմետալկէս արքայի մահուանէ ետքը՝ Աւգոստոս բաժնեց այն թագաւորութիւնը, «զկէս

[37] Corn. Tacitus, Annales, Tom. I, Գիրք ԺԲ, գլ. 15, 18:

աշխարհին եւ Հռեսկուպորեայ եղբօր նորին, եւ զմիւս կէսն որդւոյ նորա Կոտեայ»: Ասոնց մէջ անմիաբանութիւն ծագեցաւ, եւ Հռեսկուպորիս՝ Հռոմայեցւոց միջամտութեան ալ հակառակ» սպաննել տուաւ զԿոտիւս, որ ուշ իմացաւ «զդաւ յեղակարծ»: Հռոմայեցիք ի վերջոյ ստիպեցին զՀռեսկուպորիս Հռոմ դատի տալ, եւ պարտաւորուած՝ աքսորուեցաւ: «Եւ բաժանեցաւ Թրակիա ընդ որդի նորա Հռիւմետալկ, որ ընդդէմ կացեալ էր հօրն խորհրդոյ եւ ընդ որդիս Կոտեայ», որոնք կրտսեր ըլլալով՝ հռոմէական խնամակալ կարգուեցաւ, եւն[38]: Յետոյ ալ խռովութիւնք անպակաս եղած են հոն: Դիոն հետաքրքիր տեղեկութիւն մը կու տայ, պատմելով Վաղարշ («Վոլոգէս») «Թրակացւոյ» մասին, որ քրմապետ էր. եւ ապստամբելով՝ յաղթեց եւ սպաննեց Կոտիւսի Հռեսկուպորիս որդին, եւ Հռիւմետալկի ալ՝ զոր Կոտիւսի հօրեղբայր եւ անոր որդւոց խնամակալ կ'ըսէ, բանակն ապստամբեցուց՝ իւր կողմը ձգելով: Բայց Լուկիոս Պիզոյ՝ Պամփիւլիոյ կուսակալը՝ նուաճեց զԹրակիա: Հռիւմետալկէս օգնական էր Հռոմայեցւոց՝ Դաղմատացւոց ապստամբութեան ատեն, եւն:

Թրակեան պատմութեան խնդիրներով զբաղիլ՝ մեր նպատակէն դուրս է: Հետաքրքրական անձ մըն է նոյնպիսի Թրակեան անուամբ Կոտիւս արքայ Փոքուն Հայոց, որ՝

38 Tacitus, Annales, II, 64:

ինչպէս տեսանք, նախընթաց իրերէն իբր 20 տարի ետքը՝ Փոքր-Հայոց թագը կը ստանար (38 Յ. Ք.)։ Կոտիւս, թէեւ Թրակեան տնէ, մայրենեօք իրաւունք մ'ունէր այս գահուն վրայ. որովհետեւ որդի էր Տրիփենեայ՝ դստեր Պիւթոդորիսի եւ Զենոնի Ա։ Եւ անոր համար այն միջոցին երբ Տրիփենեայ որդին Պողեմոն Բ. կ'առնուր Բոսպորի եւ Պոնտոսի թագաւորութիւնը՝ վարչակցութեամբ ալ մօր, կրտսերագոյնը Կոտիւս կը ստանար Փոքուն-Հայոց գահը։ Կոտիւս յամենայն դէպս բաւական երկար իշխած ըլլալու է։ Այն պարագայէն որ Տակիտոս իւր ԺԱ. գրոց մէջ, որ՝ ընդհանրապէս առեալ՝ ամի շինութեան 800 (= 47 Յ. Ք.) տարւոյ դէպքերը կը պատմէ, կը յիշէ նաեւ զԿոտիւս արքայ փոքուն Հայոց, այլեւայլ գիտնականք (— այսպէս նաեւ Լէման յետոյ յիշելիք յօդուածին մէջ) Միհրդատի Վիրի դարձը, ու Կոտիւսի այն գործը յիշեալ 47 Յ. Ք. տարին կը դնեն։ Սակայն՝ ինչպէս դիտած է նաեւ ազգային բանասէր մը[39] Տակիտոս այն տեղ քանի մը տարի կանուխ եղած դէպքերը յիշատակած է։ Տակիտոս կը սկսի այս մասն խօսքերովս՝ «Ընդ այն ժամանակս Միհրդատ արքայ Հայոց (Վիր) որ ըստ ասացելոցս յառաջագոյն[40] առ Գայիոս կայսր ածեալ էր (37ին), դարձաւ ի թագաւորութիւն իւր խրատու Կղաւդեայ, վստահացեալ

[39] Աստուրեան, Հայաստան-Հռովմ, էջ 154—155։
[40] Tacitus, Annales, XI, 8։

յօգնականութիւն Փարսմանայ եղբօր իւրոյ արքային Վրաց, որ գրէր առ նա զաղմուկ Պարթեւաց եւ զերկպառակութիւն պետութեան յընտրութիւն թագաւորի եւ զիրաց աշխարհին մնալ անխնամ»: Արդ թէեւ Տակիտեայ «յառաջագոյն ասացեալ» մասը կորսուած գրոց մէջ ըլլալու է, ուստի չունինք մանրամասնութիւններ, բայց Վիրի նախորդ թագաւորութեան պատմութիւնը կայ Տակիտեայ քով ալ (գիրք Զ, գլ. 31—44) ինչպէս յետոյ համառօտիւ պիտի յիշենք: Այս տեղ նկատենք որ Տակիտոս բաւական երկար կը պատմէ Պարթեւաց այս երկպառակութիւնքն, որոնք տաղտկացած Գոտարզայ անգթութենէն՝ «հրաւիրեցին առ իւրեանս զՎարդանն՝ զայր քաջայանդուգն» որ յանկարծակի հասնելով՝ հալածեց զԳոտարզ եւ տիրեց աշխարհին (42 Յ. Ք.): Բայց «Գոտարզ օգնականութեամբ Դահաց եւ Վրկանաց զօրացեալ՝ յաւել ի պատերազմ. եւ հարկ եղեւ Վարդանայ մեկնել ի բաց ի Սելեւկիոյ, եւ բանակել ի դաշտս Բակտրիոյ»[41]: Ասոր վրայ կը յաւելու Տակիտոս թէ այս խռովութենէն օգտուեցաւ Միհրդատ Վիր՝ օգնութեամբ Հռոմայեցւոց. եւ թէեւ Կոտիւս արքայ Փոքր-Հայոց «յամեցոյց եւեթ գյաղթութիւն», այլ հրովարտակ մը Կղաւդեայ զինքը ետ կեցուց: Տակիտեայ խօսքէն, զոր յետոյ յառաջ պիտի բերենք, կրնայ հետեւցուիլ թէ

---

[41] Tacitus, Annales, XI, 8:

*Կոտիւս, որուն հետ միաբանած էին «ոչ սակաւք յաւագանւոյն Հայոց»՝* թեկնածու էր *Հայոց գահուն: Առ ժամանակեայ հաշտութիւն մ'եղաւ, կը շարունակէ Տակիտոս, Գոտարզայ եւ Վարդանայ մէջ եւ թագաւորութիւնը պահեց Վարդան, իսկ Գոտարզ «մեկնեցաւ գնաց ի խորս Վրկանաց», եւ «ի դառնալ Վարդանայ՝ անձնատուր եղեւ Սելեւկիա յեօթներորդում ամի ապստամբութեանն»* (43*ին Ց. Ք.*)[42]*: «Յետ այսորիկ առեալ Վարդանայ զամուր ամուր գաւառս,* պատրաստէր նուաճել անդրէն զՀայս. *բայց Վիբիոս Մարսոս՝ կուսակալ Ասորւոց՝* (42—44) *արգել զնա, սպառնացեալ ելանել ընդդէմ նորա ի մարտ: Յայնժամ եւ Գոտարզ՝ որ ստրջացեալն էր ընդ հրաժեշտ իւր ի թագաւորութենէն... եւ զօրաժողով լեալ՝ խաղաց ընդդէմ նորա (Վարդանայ) յԵրինդ գետ, ուր սաստիկ մղեցաւ մարտ առ ի խափանել զանցս նորա: Եւ յաղթող եղեալ Վարդանայ՝ նուաճեաց հզօր զինուք մինչեւ ցեզր Սինդեայ գետոյ որ բաժանէ զԴայս յԱրեաց աշխարհէ»: Բայց Պարթեւք չիշխեցին աւելի յառաջ խաղալ, եւ Վարդան «արձանս կանգնեալ, անդ վկայս՝ զի ոչ ոք յԱրշակունեաց յառաջ քան զինքն հարկատու իւր արարեալ էր զազգսն զայնոսիկ՝ դարձաւ փառօք մեծաւ յաշխարհ իւր»: Բայց երկար չապրեցաւ, որովհետեւ «դա-*

---

[42] *Անդ* XI, 9:

րան կենաց սորա գործեալ՝ սպանին զնա ի հեծանել նորա յորսս անկասկած»․ այսպէս մեռաւ Վարդան ի տիս պատանեկութեան» (45 Յ․ Ք․)։ Գոտարզ այնուհետեւ կրկին թագաւորեց, բայց իւր խստութեան եւ զեղխութեան պատճառաւ Պարթեւք «ի ծածուկ առ ինքնակալն» ուղարկեցին՝ հայրենի աթոռն արձակելու «զՄիհրդատ զորդի Հրահատայ՝ որ ի պատանդի կայր առ մեզ» (47 Յ․ Ք․)[43]։ Մինչեւ այստեղ Տակիտոս կարգաւ կը պատմէ գոնէ եօթն տարուան պատմութիւնը Պարթեւաց։ Եւ ասոր մէջ հիւսուած Միհրդատ Վիրի եւ Կոտիսի դէպքը կրնայ միայն Կղաւդեայ կայսեր առաջին տարիները եւ Վարդանայ ալ թագաւորութեան սկիզբներն ըլլալ։ Գոտարզ թագաւորած կ՚ըսուի՝ ընդհատութեամբ՝ 40—51 տարիները, բայց իւր բուն չորեքդրամեան դրամք («արքայից արքայ») կը սկսին 44/45 եւ աւելի անընդհատ 46էն, այսինքն Վարդանայ մահուանէ ետքը։ Վարդանայ իբր 40 տարւոյ կարծուած դրամը սխալ ընթերցման արդիւնք է․ իւր դրամները կը սկսին 42 Յ․ Ք․ տարւոյ Յուլիսին եւ իւր վերջին դրամն է 45 տարւոյ Օգոստոսին։ Միհրդատայ Վիրի ալ չաւանքն ու Կոտիսի դիմադրութիւնը կրնար ուրեմն տեղի ունենալ միայն այս միջոցին (42ին եւ քիչ մ՚ետքը)։

---

43 Անղ. XI, 10։

*Նաեւ Յովսեպոս կը յիշէ զԿոտիւս, ինչպէս նաեւ զՊողեմոն Բ: Երկար խօսելով* Ագրիպպայ (Ա.) *մասին, Հերովդի Մեծի Թոռան, որուն Կղաւդիոս տուած էր ո՛չ միայն ինչ որ «ի Յուդայաստան եւ ի Սամարիա իւր հաւուն Հերովդի Թագաւորութեան կը վերաբերէր», այլ նաեւ աւելցուցած էր ուրիշ մասեր ալ, եւ որ իբր այսպիսի՝ Թագաւորեց* 41—44 *տարիները, կը գրէ՝ ի մէջի այլոց՝ հետեւեալ գովութիւնն ալ. «բայց հռչակաւոր էր առ այլ արքայս: Արդ եկն առ նա* Անտիոքոս *արքայ* Կոմմագինեայ, *եւ* Ճամշիգրամ (*Σαμψιγέραμος*) Եմեսացւոց, *եւ* Կոտիւս, որ թագաւորեաց Փոքուն Հայոց (*Κότυς, τῆς μικρᾶς Ἀρμενίας αὖτος ἐβασίλεογε*), *եւ* Պողեմոն՝ *որ կալաւ զիշխանութիւն Պոնտոսի* (*Πολέμων τὴν Πόντου κακτημένος δυναστείον*)․ *իսկ* Հերովդէս, *որ եղբայր նորա էր, իշխեաց* Քաղկիդեայ»: *Ասոնց, կ'ըսէ, մեծ հիւրընկալութիւն ցուցուց են*[44]:

*Ի վերջոյ յիշենք հետաքրքրական պատմութիւնը՝ Պողեմոնի հրէական կրօնից անցնելու եւ կրկին լքելու զայն, երբ Պողեմոն «Կիլիկիոյ արքայ էր»: Յովսեպոս կը խօսի* 52 *Յ. Ք. տարւոյ դիպաց մասին, պատմելով թէ Կղաւդիոս կայսր իւր իշխանութեան ԺԲ. տարին Ագրիպպայ Փիլիպպեայ տուաւ չորրորդապետութիւնն եւ ուրիշ երկիրներ,*

---

44 *Յովսեպոս, Հնախօսութիւն Հրէից, ԺԹ. ը.* 1:

*բայց առաւ զՔաղկիդէ՝ որուն իշխած էր չորս տարի, եւ կ'անցնի պատմելու իւր քերց ամուսնութիւնքն, որոնցմէ զԴրուսիլա ամուսնացուց «Ազիզի արքայի Եմեսացւոց», որ յանձն առած էր՝ աղջկան կամաց համեմատ՝ թլփատուիլ: Ապա կ'անցնի խօսելու Բերենիկեայ մասին: Ասիկայ, քոյր Դրուսիլայ, դուստր Ագրիպպայ Մեծի, նախ նշանուած էր Մարկոսի Աղեքսանդրի Ալաբաքեայ որդւոյն, որուն մահուանէ ետքը՝ ամուսնացած էր Հերովդի հետ, արքային Քաղկեաց, Ագրիպպայ Մեծի եղբօր հետ, եւ ունեցած էր որդիներ՝ զԲերենիկիանոս եւ զՀիւրկանոս: Այս Հերովդէս մեռաւ Կղաւդեայ կայսեր իշխանութեան ութերորդ տարին* (48—49 *Յ. Ք.*)*: Այդ ատոր մասին կը գրէ. «Իսկ Բերենիկէ զկնի մահուան Հերովդի, որ այր նորա էր եւ հօրեղբայր, բազում ժամանակս կեցեալ այրի, ի տարածանել համբաւոյ թէ ընդ եղբօրն ննջիցէ,* հաւանեցոյց զՊողեմոն, *որ էր թագաւոր* Կիլիկիայ, թլփատել՝ (*πείθει Πολέμονα Κιλικίος δὲ ἦν οὗτος βασιλεὺς, π ε ρ ι τ ο μ ε ν ο ν* ...) ածել զնա (*զԲերենիկէ*) յամուսնութիւն. *քանզի այսպէս կարծէր զստութիւն զրպարտութեանցն ըմբերանել*: Եւ Պողեմոն առ յանձն, *մանաւանդ վասն* մեծութեան ընչից *նորա* (*διὰ τὸν πλοῦτον αὐτῆς*). *բայց* ոչ ընդ երկար (*οὐ ἐπὶ πολῦ*) տեւեաց ամուսնութիւնն. *այլ* Բերենիկէ ելիք զՊողեմոն, *որպէս ասէին՝ վասն* զեղխութեան (*δο'*

ἀκολογίαν) նորա։ Իսկ սա չլինէր ինչ փոյթ՝ որպէս յամուսնութեանն նոյնպէս եւ ի կրօնս Հրէից տեւեալ բաւելոյ. (ὁ δὲ ἄρα τοῦ τε γάλου καὶ τοῦ τοῖς ἔθησι τῶν Ἰουδαίων ἐλμένειν ἀπήλλακτο· այսինքն՝ ի լուծանել ամուսնութեանն՝ ի բաց եկաց եւ ի կրօնից Հրէից) [45]»։ Քիչ մ'ետքը կը տեսնենք որ քրիստոնէական աւանդութիւն մը զՊոլեմոն ոչ միայն քրիստոնեայ, այլ նաեւ եպիսկոպոս ըրած է։

Որչափ ալ որոշ չաւանդուի, հաւանական է որ Կոտիս մնաց արքայ Փոքուն Հայոց, մինչեւ որ նոյն գահը Ներոն տուաւ Արիստաբուղեայ Քաղկեաց (54 Յ. Ք.)։ Թէ ի՛նչ եղած է Կոտիս այնուհետեւ, եւ կամ ի՛նչ հասկնալու է Դիոնի այն տեղեկութիւնը թէ Կոտիս «քիչ մ'ետքը» ընդունեցաւ «նաեւ մաս մ'Արաբաց»՝ դժուար է ըսել, քանի որ այս «Արաբաց» ալ յամենայն դէպս սխալագրութիւն մ'ըլլալու է որեւէ նման անուան մը։ Այս մասին, կամ գոնէ Կոտիսի սերնդոց, կամ առ հասարակ Պոլեմոնեան տան մասին անկարեւոր չէ արձանագրութիւն մը, զոր գտած է Լէման Փոքր-Հայոց հարաւային կողմերը եւ զոր լուսաբանած է ամէն կողմէ։ Քանի որ այս՝ կարեւոր է Փոքր-Հայոց համար աւելորդ չենք համարիր յառաջ բերել Լէմանայ լուսաբանութիւնքը, զոր նախ հրատարակած է ուրոյն յօդուածի մը մէջ,

45 Յովսեպոս, անդ Ի. է. 3։

եւ նոյնը յէականս կրկնած իւր «Հին եւ արդի Հայաստան» երկին մէջ, ուր դրուած է նաեւ արձանագրութեան մէկ նմանատիպը[46] :

Գիտնականս ի Մարբերդ ծանօթացած էր տեղւոյն հայ–բողոքական հաստատութեան քարոզչին հետ, որ հաղորդած էր թէ իւր հայրենի գիւղը Վանք համանուն ժայռաբերդին վրայ, որ Կալայ («ղալէ») կը կոչուի, քանդակուած է «բեւեռագիր» արձանագրութիւն մը, որուն կարելի է հանիլ միայն երկու սանդուխ իրարու կցելով, «Վանք ժայռաբերդը կամ մանաւանդ քարայր–քաղաքը, զոր այսուհետեւ այցելեցի, Հայաստանի ինծի ծանօթացած տեղերու ամէնէն հետաքրքրականաց մին գտայ» : Վանք անունը, կ'ըսէ, ժայռաբերդէս անցած ըլլալու է անոր կից գիւղին, «որուն դիրքը» Արաբկիրի–ջրոյ (Արաբկիր–չայ) վարի ընթացքին ձախ ափը, Հաստիկ (Hastek) գիւղէ քիչ մը վեր, ուղիղ նշանակուած է Taylorի քարտէսին վրայ[47], թէեւ Տէյլըր, որ Արաբկիրէ գետն ի վար կ'երթար աջ ափին վերաբերող երկրին մէջէն, չէ հանդիպած այս տեղը: Նաեւ Եօրք, որ վերջին գիտական ուղեւորն եղած է այս կողմերուն, չէ հանդիպած Վանք: «Իւր ուղե–

---

[46] Lehmann-Haupt C. F., Armenien Einst und Jetzt, Berlin 1910, I. Band, S. 486—494 :

[47] Taylor, Journal of the Geographical Society, 35, էջ 314 :

*գիծը տարբեր է թէ՛ Տէյլըրի եւ թէ՛ իմ ուղեգծէս»։ Իւր ուղեգիծն եղած է՝ առանց Արարկիր հանդիպելու՝ «Մալաթիայէ դէպի Վանք* Այրիքիւկ *եւ* Սարաճըզի *վրայէն, երկու լի օրուան ճամբով (իբր 95 կիլոմետր)․ մինչեւ Վանքէ Ակն* (Կիւզճէ, Չիթ *եւ* Աւզուտ, *գիւղերու ճամբով) մէկ լի օրուան ճամբայ է (իբր 53 կիլոմ․) ամբողջն էապէս դէպ ի հիւսիս ուղղութեամբ»։ Իբր Հռոմէական կամ կանուխ–բիւզանդեան հնութիւն հանդիպած է ճամբուն վրայ նախ «Հին–Մալաթիայէ («Էսկի–Մալաթիա») քիչ մ'եաքը՝ Մալաթիա—Սեբաստիա ուղղագնաց խճուղւոյն ձախակողմը* հռոմէական մղոնաքարի *մը», որ թէեւ հրատարակուած է, բայց սրբագրութեան պէտք ունի։ Քիչ մ'եաքը կ'անցնուի «Քառասուն–աչք» կամուրջը* («Քըրքգէօզ–քէօփրիւ»), *որ աւելի ճշդիւ բաց ի գլխաւոր աչքէն, գետոյն այս կողմը 10 եւ այն կողմը 12 նեղ կամարներ ունի»։ Այս՝ լաւ պահուած միջին դարեան կամուրջներէն է, զոր հոս եւ հոն կը գտնենք, բայց հին (հռոմէական) կամրջի մը տեղը պէտք է որ բռնած ըլլայ։ Որովհետեւ՝ ինչպէս նաեւ մղոնաքարը կը ցուցնէ՝ խճուղին կը հետեւի հին հռոմէական ուղւոյն, եւ այն՝ այն գլխաւոր պողոտային, զոր գործածած են նաեւ Ղուկուլլոս եւ Կորբուղոն՝ Հայաստան արշաւելու համար,* Մալաթիոյ, Իզօլուի *եւ* Քէօմիւրխանի (*Սարարոնի ԺԲ*, 35 *եւն* Տոմիսան) *վրայէն եւ* Խարբերդի *դաշտէն։ Տիգ–*

րխսն, այսինքն՝ արդի Արղընի–Ջուրը («Արղանա–սու»), արեւմտեան Տիգրիսի ակնաղբիւր գետն՝ անցնելէն ետքը Ծոփքը կը լքնար եւ կը մտցուէր բուն Հայաստան»։ Կորբուղոնի կրկին արձանագրութիւնքն ի Կեզրիկ՝ Մեղրէ–Խաբերդի դաշտին մէջ[48], անդրադոյն նշանակներ, եւ այս՝ իմ համոզմամբս դէպ ի Տիգրանակերտ տանող՝ հռոմէական ճամբան»։

«Վանքէ իբր 1 ժամ վարը՝ Արաբկիրչայի վրայ յանդգնածիր կամարով մը կամուրջը» յունական–քրիստոնէական արձանագրութիւն մ'ունի։ «Գետ ի վար եղած կողման (— միւս կողմը լիովին եղծուած է —) խուրաքանչիւր քար միակ յունարէն տառ մը կը կրէ. եւ այսպէս կազմուած քրիստոնէական արձանագրութիւնն, որ ըստ տառերու նկարագրին համեմատաբար հին ժամանակէ է», հրատարակուած է։ Եօրք այս կամուրջը չէ տեսած. բայց կը նկարագրէ իբր կէս ժամ աւելի գետն ի վար հռոմէական կամրջի մ'աւերակները եւ ասկէ 1 անդղ. մղոն աւելի վար Թրքական լաւագոյն ժամանակէ կամրջի մ'աւերակները»։ Արաբկիրչայի դրութեան պատմական–աշխարհագրութեան մասին խօսած է Տոմաշէկ[49]։ «Արաբկիր–չայի այս մասին Գեաւուր–եազը–չայ

[48] Lehmann-Haupt, անդ էջ 477—478։

[49] Տոմաշէկ, Zur historischen Topographie von Kleinasien im Mittelalter. Wien 1891, pp. 106.

(«անհաւատներու գրոց գետ») յորջորջանքը, զոր Տէյլըր լսած էր, կրնայ մասամբ՝ ինչպէս ինքը կ'ընդունի՝ այս կամրջէն յառաջ եկած ըլլալ. բայց թերեւս նաեւ արձանագրութիւնն իր բաժինն ունեցած է»։

«Վանֆի կալայն կրճին անմիջական ափն է, որուն խորքէն կը սուրայ Արաբկիր-չայ գետը հոս դարձուած մը կ'ընէ եւ ժայռափն ալ յէականս անոր կը հետեւի, այնպէս ամփիթատրաձեւ կիսաբոլորակ մը կը ձեւանայ։ Ամբողջ ժայռը փոխուած է վիմափոր-քաղաքի մը, ուր մասնաւորապէս աչքի կը զարնեն պաշտպանութեան յատկացուած մասերէն, — փողանցքներ քանի մը դստիկոն վրայէ վրայ՝ նետաձգութեան ծակերով։ Գետն ի վար ամէնէն հեռուն կը գտնուի վիմափոր սենեակ մը կողակով մը, որուն յատակը բարձրացուած է, եւ որուն կռնակի որմը յատակէն աւելի եւս բարձրացած ըլլալովը խորշ մը կը կազմէ։ Ասոր մէջ, կեցած է, ապառաժ ժայռէն կոփուած, սեղան մը կամ մկրտարան մը («մկրտութեան քար») ջրոյ ելքի մասով։ Յայտնապէս՝ ինչպէս ուրիշ վիմափոր-քաղաքներու մէջ՝ հոս ալ քրիստոնէական պաշտաման նուիրեալ վայր մըն է, ուսկից կը մեկնուի տեղւոյն (Վանֆ) անունը։ Սրահին յառաջակողման մասը 4·50 մետր լայն է, $4^{1}/_{2}$—5 մետր՝ խոր, ամբողջին խորութիւնն ըլլալով իբր $6^{1}/_{2}$ մետր։ Այս ժայռափոր եկեղեցւոյն աջ կողմը՝ գետն

ի վար՝ ժայռին վրայ կը գտնուի յունարէն արձանագրութիւնը. եւ 50 մետր աւելի գետն ի վար կայ ժայռափոր մատուռ մը, որուն առաստաղը ճշգրիտ տակառաձեւ կամար մը կը կազմէ. (խորութիւն 2,65. լայնութիւն՝ 1,94. բարձրութիւն՝ 2 մետր): Ձախ որմին վրայ կան շարք մը շատ նրբաքանդակ եւ զարդարուն խաչեր: Այս մատուռան յատակը 4,03 մետր վեր է այն ճամբէն՝ որ ժայռին դարաւանդի վրայ հոն կը տանի, եւ յատակէն իբր $1/2$ մետր աւելի վերն է դրացի արձանագրութեան վարի եզրը: Աւելի գետն ի վար կայ շարք մը 6 իրարու կցուած (բնակարան–)վայրերու այլեւայլ մեծութեամբ, որոնց կը կցի ջրամբար մը եւ վերը յիշուած նետաձգութեան ծակերով փողանցքներէն մին: Ժայռաբերդիս վրայ աւելի մանրամասնութեանց մէջ մտնել այս տեղւոյս չի վերաբերիր»:

Արձանագրութեանս իրօք երկու իրարու կցուած սանդխով (իբր 6 մետր) միայն կարելի է հասնիլ: Արձանագրութիւնը 10 տող է, յոյժ չափականով, այլեւայլ տեղեր խնդրական. բայց ընդհանուր իմաստն է. «Աստ հանգչի դշխոյն Աթենայիս (ἄνασσα Ἀθηναΐς), զոր երբեմն ես | ածի սիրով (ξύννυν «բարեսէր, սիրող») յամուսնութիւն մեր. | Որ ոք նմա յանցանելն վարդ եւ կամ այլ | ծաղիկ ձօնիցէ, ունիցի (բարեկամ) զամենայն երկնաւորս (**πάντας ἐπου-**

ϱavίους) · | իսկ որ այլ ոք եկեսցէ ամբարիշտս խոկացեալ, | ունիցի չարակամս զամենայն սանդարամետականս (πάντας ὑποχθονίους) · | Գրող (որ գրէ զայս) Այիմարիէս (Ἀειμαρίης)՝ համանուն հօր, | կաթողին սիրեալ՝ մինչդեռ կենդանի էր՝ զամուսին սակաւակեաց, | որոյ հայր էր համանուն հօր իմոյ | եւ մայր՝ Անտոնեայ դուստր Լուկիոսի (μητρὸς τ' Ἀντωνίης Λουκίου θυγατέρος) :

«Արձանագրութեան ներքեւ ժայռը ներս քաշուած է, այնպէս որ այսպիսով կազմուած կամարին յատակը գերեզմանի մը բաւական տեղ կրնար ըլլալ: Եւ որովհետեւ հոս թեթեւ խոռոչ մը նշմարելի էր, փորել տուի եւ ոսկերաց քանի մը դոյզն մնացորդներ երեւան ելան, բայց թէ մարդկային ոսկերք են՝ խնդրական կը թողունք: Եթէ հոս էր գերեզմանը, շատոնց եւ հիմնովին կրկտուած ըլլալու է: Գերեզմանի մէջ դրուած իրերու որեւէ հետք գրեթէ չկայ»:

Էական կէտն է՝ Ո՞վ էր այս դշխոյն Աթենայիս. «Թաղման կերպն կը ցուցնէ ամուսնոյն հարստութիւնն ու ճոխութիւնը, իսկ «դշխոյ» յորջորջանքը գուշակել կու տայ թագաւորական կամ իշխանական ծագումը»: Անշուշտ այս բառը կրնար չափազանցութեամբ գործածուիլ (ἄνασσα նաեւ «տիրուհի»), բայց «այս մեկնութիւնը վերջին ապաւէնն է, երբ բառացի մեկնութիւնն

անկարելի ըլլայ»: Նոյնպէս հարկ չկայ ընդունելու թէ «Լուկկիոս (Անտոնիոս), Աթենայիսի հայր, տնէ մըն էր՝ որ հռոմէական քաղաքացիական իրաւունքն ստացած ըլլայ Անտոնեան գերդաստանէ (gens Antonia) եղող որեւէ կուսակալէ մը»: Այս դէպքին՝ թէեւ նոյն տնէն այլեւայլ կուսակալներ կը յիշուին, դժուար է որոշել: Բայց արդ «արձանագրութիւնս կը գտնուի Փոքր-Հայոց հողին վրայ: Քաղաքականօրէն եւ կրթականօրէն սերտ կապուած դրացի երկու երկիրներու մէջ՝ ի Պոնտոս ու ի Գամիրս՝ Աթենայիս անունը կը գտնուի արքունի տան անձանց մէջ, եւ յետոյ ալ սիրուած ըլլալու է այն գերդաստանի անդամներէն: Արդ թէ՛ Փոքր-Հայք եւ թէ՛ Պոնտոս՝ ինչպէս ծանօթ է՝ ժամանակ մը Պողեմոնեանց արքունի տան ներքեւ էին, որոնք իրենց սերունդը՝ կանացի կողմանէ՝ յառաջ կը բերէին Մ. Անտոնիոս եռապետէն, որուն Անտոնիայի հետ ամուսնութենէ ծնած դուստրը Անտոնիա իբր հիմնադիր (Εὐεργετίς Ἀντωνία) կը համարուէր նոյն տան[50]: Ուստի այս տան հետ նախ կապելու ենք բնականապէս նաեւ մեր «դշխոյն Աթենայիս»:

«Արձանագրութիւնը Փոքր-Հայոց հողին վրայ կը գտնուի, եւ Աթենայիսի մօր Անտոնիա անուն ամենամեծ հաւանականու-

---

[50] Lehmann-Haupt, անդ էջ 492:

թեամբ մեր աչքին առջեւ կը պարզէ Փոքր–Հայոց փոփոխալից պատմութեան ինքնայատուկ մէկ շրջանը։ Եռապետն Մարկոս Անտոնիոս ամուսնացած էր՝ ի միջի այլոց՝ իւր Անտոնիա հօրեղբօր Անտոնիա դստեր հետ։ Այս ամուսնութենէ ծնած իւր դուստրը՝ Անտոնիա՝ ամուսնացուց Տրալլէսի հարուստ մէկ Ասիացւոյն հետ, Պիւթոդորոս անուն։ Այս ամուսնութենէ ծնաւ Անտոնիա Պիւթոդորիս, որ ամուսնացած էր Պոլեմոնի Ա. հետ, որ արքայ էր Պոնտոսի եւ Փոքր–Հայոց։ Ասոնց դուստրը՝ Անտոնիա Տրիւփենա՝ ամուսին էր Թրակացւոց արքային Կոտիսի եւ անոնց որդւոց՝ Պոլեմոնի Բ. եւ Կոտիսի շնորհեց Գայիոս Կալիգուլա կայսրն, որ անոնց պէս թոռանթոռ էր Անտոնիոսի եւ անոնց հետ միասին կրթուած, իշխանութիւններ ի Փոքր–Ասիա։ Պոլեմոն Բ. ընդունեցաւ իւր հաւուն «Պոլեմոնի Ա». պոնտական պետութիւնը. իւր կրտսերագոյն եղբայրը Կոտիս՝ զՓոքր–Հայս։ Առաջնէն առաւ Ներոն 63 Յ. Ք. անոր պոնտական թագաւորութիւնը. երկրորդն ալ Փոքր–Հայքը կորանցուցած ըլլալու է ամէնէն ուշ 54 Յ. Ք. որովհետեւ այս տարին Ներոն այն փոքր երկրին վրայ դրաւ զԱրիստոբուլոս, որդին Հերովդէս արքայի Քաղկիսի ի Լիբանան»։

«Ինչպէս Թ. Մոմզէն կը շեշտէ, այն

Պողեմոնեանք, որոնք իրօք թագ կրած են, որչափ կը նշմարուի՝ չեն չեշտեր իրենց ազգակցութիւնը Անտոնեանց գերդաստանին հետ: Բայց յետոյ կան չարք մը անձինք՝ որ կը կրեն «Մարկոս Անտոնիոս Պողեմոն» անունը: Ծանօթ են «(Մ·) Անտոնիոս» անունը կրող՝ M. 'Αντώνιος Πολήμων ἀρχιερεὺς δυνάστης 'Ολβέων եւն («Մ· Անտոնիոս Պողեմոն քրմապետ իշխան Ոլբէացւոց» եւն, տես Prosopoys I, p. 103)· անոր որդին M. 'Αντώνιος Ζήνων ἱερεὺν («Մ· Անտոնիոս Զենոն քուրմ») ի Լաւոդիկէ· սոփեստէսն 'Αντώνιος Πολύμων (Անտոնիոս Պողեմոն, տես Prosop. I, p. 105)՝ Ազրիանու տեն եւ վերջապէս միլեսեան դրամի մը վրայ՝ Վաղերիանոս կայսեր օրով (252—263 Յ· Ք·) կ'երեւայ 'Αντώνιος Πολέμων (տես Prosop. I, p. 103): Ասոնք ամէնքն ալ ազգականութեան սերտ աղերս ունենալու են Պողեմոն Բ·ի հետ, որուն Գայիոս կայսրն՝ իր իշխանութեան սկսելէն քիչ մ'ետքը՝ շնորհեց անոր հաւուն իշխանութեան մեծագոյն մասը, եւ որ նախ կը կառավարէր իր մօր՝ Անտոնիա Տրիփենայի հետ, որ Թրակացւոց Կոտիւս արքայի կին էր: Յայտնապէս երբ այս ինքնուրոյն ինքնիշխանութիւնը վերջ գտաւ, սկսած է չեշտուիլ իրենց վերաբերիլը «Անտոնիա գերդաստանին» (gens Antonia) եւ իրենց ազգակցութիւնն այն գերդաստանէն սերած

*կայսերաց հետ։ Եթէ, ինչպէս Ռամսէյ*[51] *եւ Հիլ*[52] *գտնականք «ոչ առանց հաւանակա-նութեան՝ կ՚ընդունին, վերջիչեալ «Մ. Ան-տոնիա Պոլեմոն» նոյն է Պոլեմոն Բ.ի հետ, այս փոփոխութիւնը կատարուած ըլլալու է իր անձին մէջ։ Երբ Կղաւդիոս կայսրը 41ին Յ. Ք. անկէ առաւ Բոսպորի իշխանու-թիւնը՝ ի փոխարինութիւն տուած էր անոր զՈղբա, եւ երբ Ներոն 63 Յ. Ք. առաւ անկէ նաեւ Պոնտոսի թագաւորութիւնը, մնացած էր իրեն միայն Կիլիկիոյ այն մասին իշխա-նութիւնը։ Արդ կարելի էր որ այնուհետեւ ինքն իսկ սկսաւ պաշտօնապէս կրել Անտո-նեանց անունը։ Այն ժամանակ կրնանք Պո-ղեմոնեանց ճիւղագրութիւնն ուղղակի շա-րունակել մինչեւ իր որդին՝* Մ. Անտոնիոս Զենոն։ *Ուր որ պէտք էր բազմաթիւ եղ-բարքն իրարմէ զանազանել՝ կրնար* Մարկոս *անուան տեղ ուրիշ անուն մ՚ընտրուած ըլլալ եւ այս յատկապէս նախընտրած ըլլալ եօա-պետին եղբարց անուանքն, ի մասնաւորի անոր՝ որ յԱսիա երբեմն դեր կատարած է։ Եւ երբ այսպիսի անուն մ՚անգամ մը գործա-ծուած էր՝ կրնար նաեւ ժառանգական*

---

[51] Ramsay W. M., Report Presented To The Wilson Trustees (*ի թերթին* Revue des Etudes Anciennes) 1902, *էջ* 10։

[52] Hill M. G. F., Revue numismatique de M. Svoronos, *Հմմտ.* Ramsay, *անդ էջ* 10։

ըլլալ: Այսպէս կարելի է մեկնել Լուկիոս անուան երեւալը յետնագոյն Պողեմոնեանց քով, որոնց սերունդը ինչպէս տեսանք՝ մինչեւ Գ. դար կը վկայուի: Գայիոս միեւնոյն ժամանակ Փոքր–Հայոց իշխանութիւնը տուած էր Պողեմոնի Բ. կրտսեր եղբօր Կոտիւսի, որ ունէր զայն տակաւին 47ին Յ. Ք. (Տակ. ԺԱ, 9). բայց մինչեւ 54 Յ. Ք. կրնայ կառավարած ըլլալ, որ տարին Ներոն այն փոքր աշխարհին վրայ դրաւ զԱրիստաբուղոս՝ որդին Հերովդի արքային Քաղկիսի եւ Մարիամնեայ: Թէ արդեօք Կոտիւս 54ին իբր փոխարինութիւն կամ թէ աւելի յառաջ ընդունած ըլլայ մաս մ'Արաբիոյ (Դիոն, ԾԹ, 12, 2) թէ արդեօք հոն բնակած ըլլայ, եւ թէ այսպիսով իւր գերդաստանին մէկ մասը ի Փոքր–Հայս մնացած, այս ամէնը մասամբ մթին է, մասամբ անյայտ: Ինչ որ կ'արժէր Պողեմոնի Բ. համար, պիտի արժէ նաեւ այն Կոտիւսի համար: Ինքն ալ, ցորչափ թագաւոր էր, կրած ըլլալու չէ Անտոնեանց անունը. բայց իւր սերնդոց քով սպասելի է այս անուան հանդիպիլ: Ամէնէն յառաջ ասոնց մէջ փնտռելու ենք զԼուկիոս (Անտոնիոս), Աթենայիսի հայրը: Սակայն քանի որ մէկ կողմանէ դրացիական սերտ կապեր կային Փոքր–Հայոց եւ արեւելեան Պոնտոսի միջեւ եւ միւս կողմանէ այնպէս քիչ բան գիտենք այս Կոտիւսի բախտին մասին, լաւագոյն է չպնդել յատկապէս դերդաստանին Փոքր–Հայական ճիւղին մասին

միայն։ Կը բաւէ իբր հաւանական նկատել Պողեմոնեանց տան հետ աղերս ունենալը։ Լ․ Անտոնինոս կրնար այն ատեն ամէնէն կանուխ Պողոմոնի Բ․ եւ Կոտիսի յաջորդող առաջին սերնդեան վերաբերիլ։ Իր Թոռնուհին Աթենայիս դնելու է իբր 130ին Յ․ Ք։ Բայց նոյն դիւրութեամբ կրնանք նաեւ քանի մը սերունդ վար իջնել։ Քիչ չատասահման մըն է այն պարագան որ արձանագրութիւնը թէեւ ունի քրիստոնէական Թուականութեան սկզբան համար նկարագրական տառերու պէսպիսական ձեւերը ΕΘCⲰ, բայց բոլորովին ազատ է այն կապագրերէ ու համառօտութիւններէ՝ որոնք տիրող կ'ըլլան յետագայ դարերու մէջ[53]։ Ժամանակի այս որոշման դէմ չէ յամենայն դէպս Λούκιος ձեւը, որ միայն յԱ․ դարու իբր համազօր կ'երեւայ հնագոյն Λεύκιος ձեւի քով։ «Արձանագրութեանս համեմատ Աթենայիսի թէ՛ այրը, թէ՛ հայրը եւ թէ՛ աները Այիմարիէս (’Αειμα- ϱίης) անունը կը կրեն։ Ուստի հաւանօրէն ազգակցութեան կապ կար երկու ամուսնոց միջեւ, եւ թերեւս չատ աւելի մերձաւոր, քան ինչ որ արձանագրութիւնը կ'ըսէ, եթէ հայրերու այս յամենայն դէպս աչքի զարնող համանունութեան տեղ ընդունինք անոնց նոյն անձն ըլլալը։ Խորթ եղբօր ու քեռ միջեւ ամուսնութիւն մ'արդէն դիւրաւ կրնայ մեկ-

53 Lehmann-Haupt, Armenien Einst und Jetzt, էջ 493 եւ յջ․։

նուիլ ազնուական ընտանիքի մը համար՝ որ հելլենական հովերով կեանք մ՚ունէր: Արդ թէ այսպիսի էր իրաց վիճակը՝ հաւանական կ՚ընէ այն պարագան որ այսչափ յաճախ կրկնուած է Այիմարիէս անունը, որ՝ որչափ ծանօթ է՝ լիովին եգական է: Ամէնէն աւելի հաճելին էր ընդունիլ թէ սոնք Փոքր-հայական տեղացի իշխանք էին, որոնք երկրին մէկ մասը կը կառավարէին հռոմէական դերիշխանութեան կամ կուսակալութեան ներքեւ, եւ կամ անոնց սերնդէն ըլլան: Այս ատեն «դշխոյ»ին (ἄνασσα) ամուսինն ալ կերպով մը «արքայ» մըն էր (ἄναξ, թագաւոր, իշխան), իշխան մը՝ որ իրաւունք չունէր թագաւորի տիտղոսը կրելու»:

«Աթենայիսի ամուսնոյն տեւական բնակութիւնը դժուարաւ կրնանք մտածել թէ եղած ըլլայ Վանքի քարայր-քաղաքի մէջ, — որ տեւական բնակութեան համար ճոխագոյն յարդարուած վայրեր չունի, ինչպէս ունի օրինակի համար Հասանկէփ — այլ աւելի յԱկն, թերեւս այն ժայռին վրայ, որ ցնորեցուցիչ բարձրութեամբ կ՚ամբառնայ քաղաքին վրայ եւ այսօր կը կրէ միջին-դարեան բերդի մը մնացորդները»:

«Արդեօք հանդուցեալը թաղել ուզած են յատկապէս նուիրակա՞ն տեղ մը: Տեղւոյ զննութիւնը հաւանական կ՚ընէ թէ աղերս մը կայ դամբանագրիս եւ անոր երկու կողման դրացի վայրերուն միջեւ, որոնք — ի վերջոյ

քրիստոնէական — պաշտաման նուիրեալ էին : Բայց ատոր՝ որչափ կրնանք նշմարել՝ տառերու նկարագրի կողմանէ էական տարբերութիւն չկայ մեր արձանագրութեան եւ վերը յիշուած կամրջին քրիստոնէական արձանագրութեան միջեւ : Արդ քանի որ առաջին Պողեմոնի դուստրը եւ երկրորդին մայրը՝ Անտոնիա Տրիփենա, եւ նոյնպէս ինքն իսկ Պողեմոն Բ.՝ քրիստոնէական դրուցաց մէջ դեր մ՚ընդունած են, ոչ առանց պատմական արձագանգի, կրնար՝ եթէ Այիմարիէս եւ Աթենայիս ծածուկ քրիստոնեայք ըլլային, անդրադոյն նպաստ մ՚ըլլալ՝ պաստոնք Պողեմոնեանց տան վերագրելու : Եւ այս նպաստն այնչափ աւելի հաճոյական կ՚ըլլար՝ որչափ որ «Պողեմոն» անուան պակսիլն ու Լուկիոս անունը փոխանակ Մարկոս անուան՝ կրնան տարկութիւն մը նկատուիլ մեր տուած մեկնութեան դէմ : Այսու հանդերձ արձանագրութեան խօսքերն այսպիսի գաղափար մը չեն թողուր որ ծնանի : Որչափ ալ մեծ ըլլար քողարկելու պէտքը եւ կրօնները միաբանելու միտութիւնը, Ա. կամ Բ դարու քրիստոնեայ մը չէր կրնար մտաբերել կոչելու «զամենայն երկնաւորս» եւ «զամենայն սանդարամետականս» դից : Նոյնպէս մկրտութեան քար մը որ ժայռափոր մատրանց մին ձախակողմը կը ցուցնէ, յամենայն դէպս չէ ապացուցուած Դ. դարէն յառաջ, թերեւս եւ ոչ ալ այս դարուս համար, եւ նաեւ քրիստոնէա-

*կան խաչերը — գոնէ ինչպէս քանդակուած են հոս պատերու վրայ, եւ այլուր չեն ապա-
ցուցուած ուղղակի այսչափ խոր հնութեան համար — իրենց ձեւովը նոյնպէս անագանա-
գոյն ժամանակ մը կը ցուցնեն: Ուստի քրիստոնէական վայրերս անդրադոյն փաստ մը չեն ընծայեր զԱթենայիս Պողեմոնեանց տան վերագրելու մասին: «Աւելի պէտք ենք յիշել թէ ամէն կողմ, — եւ յատկապէս ի Հայաստան — քրիստոնէական պաշտօնը յա-
ճախ կը կապուի հեթանոսական պաշտա-
մանց հնագոյն վայրերու հետ: Արդ այսպիսի վայրի մը գոյութիւնը կրնար մասամբ պատ-
ճառն եղած ըլլալ դամբանին այն տեղն ըն-
տրելու: Սակայն թերեւս նոյն իսկ այն գե-
րեզմանը եւ այն ձօնքն՝ զորոնք նուիրելու կը յորդորէ արձանագրութիւնը, կա՛մ անեցու-
ցած ըլլան արդէն գոյութիւն ունեցող դամ-
բարանի մը համբաւը, կա՛մ ինքնին առիթ տուած ըլլան բարբարոսական պաշտաման մը ծագելուն ցայնվայր ոչ նուիրական տեղը (թերեւս նախնեաց պաշտաման «զոհա-
րան» մը ἱεροθέσεον)· եւ յետոյ քրիստոնէու-
թիւնն ալ պահած է վայրը· իբր նուիրական: Աթենայիսի ալ մահը կրնայ պատահած ըլլալ ժայռաբերդխս մէջ, երբ պատահաբար հոն կը գտնուէր, օրինակի համար՝ պատերազմի հարկի առեն: Ինչ ալ ըլլայ՝ իւր ամուսնէն այնպէս վաղամեռիկ բաժնուածը, ըլլայ Պո-
ղեմոնեանց երբեմն արքայական սերնդէ, ըլ-
լայ ազնուական տիկին մը գերդաստանէ մը՝*

որ հռոմէական քաղաքացիութեան իրաւունք ունէր. անհամեմատ գեղեցիկ դերեզման մ՚ունեցած է, հիանալի լեռնային երկրի մը մէջ, շատ վերեւն այն խորունկ կիրճին վրայ, ուսկից ամեհի ու գալարափրփուր մռնչելով կը սուրայ Արաբկիր–ջուրը»[54]։

Այս ընդարձակ լուսաբանութեան վրայ քանի մը դիտողութիւն միայն կը մնայ ընել։ Տրիւփենայ եւ Պոլեմոնի մասին քրիստոնէական գրոյցները լիովին այնպէս չեն մեր մէջ. այլ դոնէ վերջինն ազգային դոյն առած է, այսինքն՝ նոյն իսկ թարգմանական բնագրաց մէջ, Թեկղի՝ ընտիր լեզուաւ վկայաբանութեան մէջ նոյնպէս մնացած է Տրիւփենա, որ Թեկղի պաշտպան ու իբր մայրագիր կ՚ըլլայ յԱնտիոք. եւ «էր անդ տիկին մի թագաւորազն մեծատուն, Տրիփոնիա անուն, որոյ մեռեալ էր դուստր իւր» եւն[55]։ Սա կ՚ողբայ թէ «Ահա այս երկիցս անգամ առնի թախիծ սգոյ ի տան իմում. եւ չիք ոք որ օգնէ ինձ. զի ո՛չ դուստր իմ կենդանի է որ մեռաւն, եւ ոչ ոք յազգատոհմէ իմմէ ի թիկունս իմ»[56], եւ վերջապէս ուղղակի ալ կ՚ըսուի թէ երբ կարծեցին թէ Տրիփոնիա մեռաւ, «դողաց ամենայն քաղաքն» նաեւ դատաւորք վախ–

---

[54] Lehmann-Haupt, Armenien Einst und Jetzt, էջ 495։

[55] Վարք եւ վկայաբանութիւնք սրբոց, Վենետիկ 1874, Ա. Հատոր, Պատմութիւն վարուց Թեկղեայ, էջ 523։

[56] Անդ էջ 525։

ցան թէ «գուցէ իբրեւ լսիցէ կայսր զայն գործ՝ զոր գործեմք եւ կորուսանիցէ զքաղաքս, զի Տրիփոնիա տիկինն յազգէ կայսեր, որ կայր առ դրանն թէատրոնին՝ եւ մեռաւ» են[57]:

Ուրիշ արիւն ունէր Փոքր-Հայոց նոյն արքայն, որ իւր գահը պարտական էր Ներոնի քմահաճոյքին, որ բաց աստի փորձեց ուրիշ մ'ալ Մեծաց Հայոց գահը բարձրացնել. այն միջոցին՝ երբ Պարթեւք ի վերջոյ վճռեցին ուժգին միջամտել հայ Արշակունեաց գահը հաստատելու յանձին Տրդատ-Տիրիթի, ինչպէս վերջապէս յաջողեցան, Ներոնի մնալով առերեւոյթ յաջողութիւնն՝ անձամբ պսակելու զՏրդատ ի Հռոմ (66ին): Այս շրջանի համար՝ Ներոնի առաքած հռոմէական զօրավարին՝ Դոմիտիոս Կորբուղոնի՝ լի սնապարծութեամբք յիշատակագիրն է, զոր նաեւ Տակիտոս՝ առ ի չգոյէ լաւագոյն աղբեր՝ գործածած է[58]: Տակիտոս կը գրէ. «Ի վերջ կոյս այսր ամի հասին համբաւք շարագոյժք, յարձակելոյ զարձեալ Պարթեւաց՝ յափշտակել զՀայաստան եւ հալածել անտի զՀռադամիզդ՝ որ բազում անգամ տիրեալ անդ եւ վարեալ անտի ի բաց, ի պատերազմէ եւս յայնժամ լեալ էր ձեռնթափ[59] (54 Յ. Ք.): «Մինչդեռ այս եւ հանգոյն այսմ զրոյցք յու-

57 Անդ էջ 528:

58 Տակիտոս, ԺԵ. 25:

59 Տակիտոս, ԺԳ. 6:

ղէին համարձակ, հրամայեաց Ներոն գնդի մանկտւոյն՝ զոր ի մերձաւոր գաւառաց ժողովեալ էր, եւ լեգէոնացն խաղալ գնալ մերձ ի Հայաստան. եւ Ագրիպպայ եւ Անտիոքոսի՝ երբեմն թագաւորաց՝ ազդ արար ունել զօրս պատրաստական մտանելոյ յերկիր Պարթեւաց եւ կամուրջ զԵփրատաւ արկանել. եւ զՓոքրն Հայաստան ետ Արիստոբուղեայ, եւ զԾոփաց գաւառն՝ Սոհեմեայ, հանդերձ արքունական սպասուք. ի դէպ ժամանակի ոսոխ եւս Վողոգեսի (Վաղարշ) յարեաւ յայնժամ որդի նորա Վարդան. վասն որոյ մեկնեցան Պարթեւք ի սահմանացն Հայոց, իբր թէ այլում պատեհի թողեալ զպատերազմն»[60]: Վաղարշայ Ա. (51 — իբր 61 յետոյ՝ Վաղարշ Բ.) դէմ ոսոխ ելաւ Վարդան, որմէ դրամներ կան 55—58 տարիներէն[61]: Ներոն զօրավար կարգած էր զԴոմիտիոս Կորբուղոն: Վաղարշ իրօք՝ ի սկզբան Վարդանայ յառնելու հետեւութեամբ ստիպուեցաւ հաշտ ընթացք բռնել Հռոմայեցւոց հետ, պատանդ իսկ տալով (55ին): Մնացեալ տարիներէն մեզի համար հոս երկու կէտ միայն պէտք է: Նախ կ՚ըսէ դարձեալ Տակիտոս թէ Կորբուղոն «ազդ արար եւ Անտիոքոսի արքայի դիմել ի մերձակայ սահմանս: Քանզի Փարասմանայ (Վրաց) սպանեալ զորդի իւր զՀռա(դա)միզդ (երբեմն արքայ Հայոց)՝ որպէս

---

[60] Տակիտոս, ԺԳ. 7:

[61] Petrowicz A., Arsaciden-Münzen, Wien 1904, էջ 130—132:

դաւաճան, ի ցոյց հաւատարմութեան իւրոյ առ մեզ՝ յառաջին թշնամութիւնն ընդդէմ Հայոց պնդագոյնս դառնայր: Եւ Իննեքացիք, երիցագոյնք ի դաշնակիցս Հռոմայեցւոց, յայնժամ նախ կոչեցեալք ի նոցանէ յօգնականութիւն, խաղային դային ընդ լերինս ափափայս Հայաստան աշխարհի[62]»: Ասոր վրայ էր որ փորձ եղաւ բանակցութեան Տըրդատ–Տիրիթի եւ Կորբուղոնի, որ դարանի երկիւղիւ չյաջողեցաւ (57ին Ց. Ք.): Ի՞նչ են այս «Իննեքացիք»: Նշանաւոր բանասէր մը կը կարծէր՝ «Թերեւս Խաղտիք»[63]: Բայց «Խաղտիք» արդէն Հռոմէական էին, եւ դժուարաւ ուրոյն «երիցագոյն» դաշնակից կրնային ըլլալ, քանի որ կապ ունէին Փոքր-Հայոց եւ Պոնտոսի հետ եւ անոնց պատմութեան մասնակից: Լաւագոյն է նորագոյն բանասէրի մ'ընտրած ընթերցուածը թէ Հայաստանի «աւերման գործի մէջ իր դաշնակիցները մեծագոյն դեր մը կը խաղային, գլխաւորապէս Մոսկեանք եւ Վրացիները, որոնց Փարսման թագաւորը» էին[64]: Բաց աստի արդէն այս ժամանակ երբեմնի Փոքր-Հայոց–Խաղտեաց վերաբերող Տրապիզոն՝ Կորբուղոնի բանակի պարենաւորման գլխաւոր նաւահանգիստ եղած էր, ինչպէս բացայայտ կը վկայուի թէ «Թագաւորն (Տիրիթ) նենգ ինչ կասկածեալ ի դիմեցմանէ

[62] Տակիտոս, ԺԳ. 37:

[63] Գաթըրճեան, Տիեզերական Պատմ. Բ. էջ 112:

[64] Աստուրեան, Հայաստան եւ Հռոմ, էջ 171:

զօրացն մերոց ի բազում այլեւայլ տեղիս, եւ կամ առ ի խափանել զհամբարս՝ որ գային առ մեզ յԵւքսինեանն Պոնտոսէ եւ ի Տրապիզոնէ, վաղվաղակի մեկնեցաւ ի բաց. այլ ոչ կարաց զպաշարս մեր արգելուլ, զի անձէին ընդ լերինս՝ ուր ի պահ կային զօրք մեր[65]»: Այնուհետեւ ալ Գամրաց նահանգի բանակներու պաշարն ու սպառազինութիւնն այս նաւահանգստէն կու գար, որ քիչ մ՚ետքն հանդրուան ալ ընտրուեցաւ հռոմէական «Պոնտական տորմղին» (classis Pontica)[66]: Նոյնպէս արդէն այն միջոցին կարեւոր զօրավայր մ՚եղած էր, հռոմէական մեծ զօրանիստն Եփրատի վրայ՝ Մելիտինէ: Հոս կը ժողվէր Կորբուլոն Պետոսի մեծ ձախորդութենէ ետքը մնացեալ բանակն եւ նոր եկածները, որոնց մէջ «Հինգերորդն (լեգէոն) որ կայր ի Պոնտոս՝ զերծ ի կոտորածէն, դարձեալ եւ զՀնգետասաներորդն այն ինչ հասեալ, եւ զԴրօշս ընտրելոց Լիւրիկեցւոց եւ Եգիպտացւոց. եւ որչափ ինչ հեծեալ եւ հետեւակ եւ օժանդակ զօրք էին արքայից՝ համախմբեալ մերձ ի Մելիտենէ. ուստի պատրաստեալն էր անցանել յայնկոյս ընդ Եփրատ»[67] եւն (63 Յ. Ք.): Այս «արքայից» մէջ էր ի հարկէ Փոքր-Հայոց Արիստոբուղոս ալ, ինչպէս արդէն կրկին

65 Տակիտ. ԺԳ. 39:
66 Տակիտ. ԺԵ. 6:
67 Տակիտ. ԺԵ. 26:

*հրաման ընդունած էր։ Ներոն փորձեց հակ-արքայ մը կարգել՝ ընդդէմ Տրդատ-Տի-րիթի, այն է՝ զՏիգրան, Արքեղայոսի թոռը։ Այս անձին մասին Տակիտեայ տուած ան-նպաստ նկարագիրը քիչ մ'ետքը կը տեսնենք։ Այս տեղ պէտք են այն զինուորական կար-գադրութիւնքն որ տեսնուեցան՝ նոյն ձեռ-նարկը գլուխ հանելու։ «Եւ տուան Տիգ-րանայ ի զօրաւիգն հազար այր ի լեգէոնա-կանաց, գունդք երեք նիզակակցաց եւ թեւք երկու հեծելոց, առ ի դիւրաւ պահպանել զնորոգ թագաւորութիւնն. եւ* յանձնեցան կողմանք Հայաստանի *սահմանակցաց նորա*, Փարսմանեայ, Պողեմոնի, Արիստոբուղեայ եւ Անտիոքոսի. *եւ Կորբուղոն դարձաւ յԱսորիս» եւն*[68]*։ Տիգրանի գահ ելլելը* (60*ին Ց. Ք.*) *շատ կարճատեւ եղաւ։ Յա-ջորդ տարին Պարթեւք արդէն ստիպած էին Հռոմայեցիներն ու զՏիգրան Հայաստանէ ելլելու, եւ նոր եկող Պետոս զօրավարն ալ, որ բացի երեք լեգէոններէ՝ ձեռքին տակ ունէր «օժանդակ գունդ* Պոնտոսի, Գաղա-տիոյ եւ Կապպադովկիոյ[69]», *եւ արշաւանք սկսաւ ի Հայաստան* (61*ի աշնան*) *յաջորդ գարնան պաշարուելով ջախջախիչ պարտու-թիւն կրեց ի «Հռանդէա քաղաքը»՝ Արա-ծանւոյ եզերքին վրայ, Արշամաշատէ ոչ*

---

68 *Տակիտ. ԺԴ.* 26։
69 *Տակիտ. ԺԵ.* 6։

հետու (62ին Յ. Ք.) Պատմութեան մնացեալ մասը մեզի համար աւելորդ է։

Հաւանօրէն Արիստոբուլոս՝ որդի Հերովդի Քաղկեայ արքայի է, եւ յիշեալ Տիգրանի պէս Հերովդեանց սերնդէ, վերջին արքայն էր Փոքր-Հայոց, որուն մինչեւ դրամը գտած է Կլեմոն ի Բուրգ։ Ցամենայն դէպս Փոքր-Հայոց Նիկոպոլիսն հռոմէական պետութեան կցուած էր, Պողեմոնական Պոնտոսի հետ, արդէն Ներոնիատեն․ որով հետեւ քաղաքին թուականութիւնը կը սկսի 64ին Յ. Ք.։ Մնացեալ Փոքր-Հայք ամբողջովին քիչ մ'աւելի ուշ նահանգ եղած կ'երեւայ, Վեսպասիանու ատեն (69—79)։ Այսպէս աւարտեցաւ այս հետաքրքրական շրջանը՝ հռոմէական մանրապետութեանց եւ յատկապէս Փոքր-Հայոց ու Խաղտեաց։ Այնուհետեւ իբրեւ հռոմէական եւ յետոյ բիւզանդեան գաւառներ էին անոնք։

Նախ քան շարունակելը քանի մը խօսք ալ այս պէսպէս արքունեաց մասին, որոնք իշխեցին Փոքր-Հայոց, գլխաւորաբար քանի մ'անձանց նկատմամբ, որոնց նկարագրութիւնը դասական հեղինակաց կողմանէ հետաքրքրական լոյս կը սփռէ այն ոգւոյն մասին՝ որ կը տիրէր հոս կամ հոն։ Ըստ ինքեան՝ ազգային ոգւոյ մասին խօսք չի կրնար ըլլալ այս իշխաններու համար, որոնք հռոմէական իշխանաց քմահաճոյքը կը դնէր ու վար կ'առնուր կամ կը տեղափոխէր։ Երբ Արիստոբուլոս մը Քաղկիսէ,

Լիբանանու ստորոտէն, Փոքր–Հայք կ՚անցնէր թագաւորելու, կամ Եմեսիոյ նոյնպէս փոքրիկ իշխանութենէ Սոյեմոսի կը տրուէր Ծոփք, որեւէ հողեկան կապ չէր կրնար ըլլալ այս նորեկ իշխանաց եւ այն աշխարհաց հայ ժողովրդեան միջեւ: Իշխողի մը նկարագրէն կախում ունէր՝ այնպիսի կապ մը ստեղծելու: Գաղատիոյ Դիոդորիոս Հռոմայեցւոց ձեռքէն կը ստանար Փոքր–Հայքը, բայց նաեւ Արտաւազդայ՝ Տիգրանայ Մեծի որդւոյն դուստրը կնութեան կ՚առնուր իւր որդւոյն[70], այսպիսի ընտանեկան կապով Մեծ Հայոց հետ՝ սիրելի ընելով զինքը նաեւ իւր իշխած ժողովրդեան: Ընտանեկան կապերու տեսակէտով այս իշխանական տներու շատերը ճշմարտապէս աշխարհաքաղաքացի կրնան կոչուիլ: Ամէնէն լաւ օրինակն է՝ Փոքր–Հայոց երկարատեւ իշխող եւ Ստրաբոնէ այնպէս գովուած Պիւթադորիս դշխոյն: Ինքնին թոռ էր Անտոնիոս եռապետի, իւր մայրն Անտոնիա՝ որ դուստր էր Անտոնիոսի եւ անոր Անտոնիա կնոջ. ամուսնացած էր Պիւթադորոս անուն հարուստ Տրալլացւոյ հետ, զոր Ստրաբոն «Ասիապետաց» թուէն կը դնէ եւ որ «թագաւորական հարստութիւն ունէր[71]», Պոմպէի բարեկամը: Անոր դուստրն էր Պիւթադորիս, «որ այժմ կը թագաւորէ ի Պոնտոս» (ἐν τῷ Πόντῳ), ինչ–

[70] Եւտրոպիոս Դ, 14:

[71] Ստրաբոն, ԺԲ. 55—56:

պէս նոյն տեղ կը գրէ Ստրաբոն։ Բայց արդ Անտոնիոս եռապետ իւր միւս կնոջմէ՝ Հոկտաւիայէ՝ ունէր դուստր մ'ալ՝ նոյնպէս Անտոնիա (կրտսեր), որ ամուսնացաւ Ներոն Կղաւդիոս Դրուսոսի հետ, եւ որոնցմէ ծնան Գերմանիկոս եւ Տիբերիոս կայսր[72]։ Պիւթոդորիս ուրեմն հեռաւոր ազգական էր նաեւ Հռոմայ կայսերական տան հետ։ Ամուսնացած Պոնտոսի արքային Պողեմոնի հետ, յետոյ՝ Գամրաց Արքեղայոսի, իւր դուստրը տուած Կոտիւսի Թրակացւոյ, աւելի եւս համաշխարհային կապերով դշխոյ մըն էր ուրեմն Փոքր-Հայոց Թագուհին, որ կ'իշխէր նաեւ ոչ-հայ աշխարհաց ալ, ինչպէս վերը նշանակուեցան։ Կարելի՞ էր սպասել այսպիսի արքունիքէ մը հայ ոգի։ Սակայն եւ այնպէս տեղական պարագայք հոս հզօրագոյն եղած կ'երեւան այն ատեն։ Գոնէ իւր որդին՝ որու մասին Ստրաբոն, ինչպէս տեսանք, կ'ըսէր թէ իւր ատեն Հայոց Մեծաց արքայ եղաւ, հայ հոգւով կը նկարագրուի Տակիտոսէ։ Սա կը կոչուէր Զենոն՝ իւր հաւուն անուամբ։ Այն միջոցին, երբ Հռոմայեցիք ու Պարթեւք անընդհատ վէճի մէջ էին Հայաստանի մասին, որուն գահուն թեկնածու կ'ըլլար անգամ «արքայից արքայ»՝ բայց Պարթեւներէ մերժուած՝ Վոնոն (16—17 Յ. Ք.) Տիբեր կայսրը կը յանձնէր Գերմանիկոսի՝ Զենոն Հայոց գահը հանել

72 Աստուրեան, Հայաստան-Հռոմ, էջ 148—49։

*Հայոց իսկ խնդրանօք։ Աւելորդ չէ Տակիտեայ այս տեղին յառաջ բերել. «Անդուստ ի սկզբանէ կեղակարծ էր հաւատարմութիւն Հայոց ըստ բնաւորութեան իւրեանց եւ ընդ դրից աշխարհին*[73]*. զի ի բազում գաւառաց մերոց տուեալ՝ մինչեւ ի Մարս տարածանի՝ ի մէջ երկուց մեծամեծ ինքնակալութեանց, դրդուեալ յաճախ՝ ընդ Հռոմայեցիս ատելութեամբ, եւ ընդ Պարթեւս նախանձու։ Յետ ընկենլոյ զՎոնոն ի թագաւորութենէ՝ չէր նոցա թագաւոր. եւ* խնդրէին զՁենոն որդի Պողեմոնի արքային Պոնտացւոց. զի սա ի մանկութենէ ըստ բարուց եւ ըստ սովորութեանց նոցա կենցաղավարեալ՝ յորսս եւ ի խրախուճս եւ որ այլ ինչ ախորժելի են բարբարոսաց, սիրելի լեալ էր աւագանւոյն եւ ռամկին[74]։ *Արդ Գերմանիկ յԱրտաշատ քաղաքի, ըստ հաւանութեան աւագանւոյն, առաջի բազմութեան եդ ի գլուխ նորա զթագ արքունի, եւ ամենեքեան ողջունեցին զնա թագաւոր՝ կոչելով զնա յանուանէ քաղաքին* Արտաշէս[75]»։ *Զարմանալու չէ ուրեմն որ այս խռովայոյզ ժամանակի մէջ Զենոն–Արտաշէսի բաւական երկար թագաւորութիւնը* (18—34 *Յ. Ք.*) *խաղաղ անցաւ։ Բայց աւելի կարեւոր այն պարագան է որ Պիւթագորիսի մը արքունեաց մէջ՝ իւր իսկ որդին հայ «բարբա–*

---

[73] *Տակիտ. Բ.* 56։
[74] *Տակիտ. Բ.* 56։
[75] *Անդ Բ.* 56։

րոս» սովորութեանց եւ բարուց համեմատ կրթուած էր։ Փոքր-Հայք տակաւին համեմատաբար նոր էին օտար իշխանութեան ներքեւ, տակաւին չէր եկած այն վիճակին՝ ուր կը գտնենք զինքն յետոյ, այսինքն գրեթէ լիովին հելլենացած՝ գոնէ աւագանին ու քաղաքները։ Այն Փոքր-Հայք, որ ազգային մեծ առուգութիւն ցուցուցին՝ ձուլելով պոնտական ազգերու մաս մ'ալ (հմմտ. յետոյ «Հայախաղտիք»)․ եւ որոնք մինչեւ ծով հնազանդեցուցին, տակաւին վառ պահած էին ազգային ոգին՝ ոչ միայն Միհրդատայ Մեծի օրով, որուն գլխաւոր ոյժերէն էին, այլ նաեւ յետոյ՝ եւ ինչպէս Զենոնի օրինակը կը ցուցնէ, իրենց ազդեցութիւնը գերիշխող էր Պիւթադորիսի ատեն։

Հետաքրքրական պարագայ մըն է որ վերը յիշուած Կոտիս՝ Փոքր-Հայոց արքային մասին ալ նման տրամադրութիւն մը կը պատմէ Տակիտոս, համակրութիւն մը Հայոց հանդէպ՝ որոնց շահուն գործակից ալ կ'ըլլայ, թէեւ Հռոմէ կ'արգելուի ի վերջոյ։ Զենոն-Արտաշէսի երկար թագաւորութենէ ետքը կրկին սկսած էին հին խռովութիւնքն ու վէճերը։ Արտաւան Գ. Պարթեւաց «ի մեռանել Արտաշիսայ (Զենոն-Արտաշէսի) արքայի զերիցագոյնն յորդւոց իւրոց զԱրշակ կացուցեալ էր իշխան՝ Թագաւոր Հայաստանի»։ Ասոր դէմ հռոմէական քաղաքագիտութիւնն էր որ «զՄիհրդատ զիշխանն Վրաց կոչեաց առ ի նուաճել զՀայաստան,

հաշտեցուցեալ զնա ընդ եղբօր իւրում Փարսմանայ՝ որ թագաւորէրն ի Վիրս»։ Միհրդատ Վիր յաջողեցաւ, եւ «նենգաւ» կաշառաբեկ ընելով ծառաները՝ սպաննել տուաւ զԱրշակ. «զատն հրապուրիչք՝ որ բազում կաշառօք ստիպեցին զպաշտօնեայս Արշակայ յանօրէնութիւն. եւ Վիրք զօրու ծանու խուժեալ ի Հայաստան՝ առին զԱր–տաշատ քաղաք» (35 Յ. Ք.)[76]: Արտաւան «զորդի իւր զՈրոդ» պսակեց թագաւոր Հայոց եւ բանակաւ ուղարկեց Հայաստան. բայց Միհրդատ կրցաւ իւր դիրքը պահել, եւ ճակատու մը մէջ մինչեւ անգամ Փարսման «այր քաջայանդուգն» վիրաւորեց զՈրոդ, եւ «ի լուր համբաւոյ սպանութեան նորա աճա–բեկեալ Պարթեւաց թողին Աղուանից զյաղ–թութիւն»[77]: Արտաւան չլքեցաւ եւ յաջորդ տարին (36ին Յ. Ք.) նոր բանակ ուղարկեց. բայց Տիբերեայ առաքած հռոմէացի զօրա–վարը Ղուկիոս Վիտելլիոս «համախմբեալ զլեգէոն՝ սպառնայր խաղալ ի Միջագետս» եւ Արտաւան «մեկնէր յաշխարհէն Հայոց», գլխաւորաբար որովհետեւ Հռոմայեցիք յա–ջողած էին բուն Պարթեւաց մէջ ալ դժգոհու–թիւն սերմանել, հակառակ ելլելով նախ Հրահատ եւ աւելի՝ Տրդատ որ արքայից արքայ եղաւ: Ապստամբութիւնք երկար չտեւեցին եւ Արտաւան կրկին տէր էր, եւ

[76] Տակիտ. Զ. 32—33։
[77] Անդ Զ. 35։

*Հայք անշուշտ կրկին Պարթեւաց ձեռքն էին: Ցամենայն դէպս՝ որչափ ալ բուն պատճառներն անծանօթ են, նոյն իսկ Գայիոս Գալիգուլայ կայսրն էր որ զՄիհրդատ, խարկանօք Հռոմ կոչելէն ետքը, շղթայի զարկած էր* (37 Յ. Ք.)*: Բայց արդ յաջորդ Կղաւդիոս կայսրը օգտուիլ ուզելով Արտաւանայ մահուանէ ետքը* (40 Յ. Ք.) *Պարթեւաց մէջ ծագած ներքին խռովութիւններէ եւ երկպառակութենէն որ Գոտորզի* (40—51) *եւ Վարդանայ* (42—45) *միջեւ, կրկին արձակեց զՄիհրդատ Վիր ի Հայս՝ թագն առնելու, «խրատուք Կղաւդեայ, վստահացեալ յօգնականութիւն Փարսմանայ եղբօր իւրոյ արքային Վրաց, որ գրէր առ նա զազմուկ Պարթեւաց եւ զերկպառակութիւն պետութեան յընտրութիւն թագաւորի եւ զիրաց աշխարհին մնալ անխնամ»: Այս առթիւ է որ կը տրուի զմեզ շահագրգռող տեղեկութիւնը: «Մինչդեռ արեւելից բաժանեալ էին զօրութիւնք եւ ի տարակուսի կային ազգք, եղիտ Միհրդատ պարապ մտանելոյ ի Հայաստան, նուաճեալ զօրութեամբ հռոմէական զօրականին զամուրս բարձունս, եւ ապստամբութեամբ Վրաց ընդ դաշտս. զի ոչ* կարացին Հայք *զդէմ ունել նմա՝* յետ պարտութեան Դեմոնաքայ զօրավարին իւրեանց, *դիմագրաւելոյ ի պատերազմ:* Կոտիւս արքայ Փոքուն Հայոց, ընդ որում միաբանեալ էին ոչ սակաւք յաւագանոյն, յամեցոյց եւեթ զյաղթութիւնն. *այլ ի հրո-*

*վարտակէ* ինքնակալին ստիպեալ ձեռնթափ լինել[78], *եւ յարեցան ամենեքեան ի Միհրդատ, յորմէ* սարտուցեալն էին ի սկզբան թագաւորութեանն վասն տարապարտ բռնութեան *նորա*[79]»: *Միհրդատ Վիր տիրեց ուրեմն նորէն Հայոց գահուն (իբր 42ին Յ. Ք.): Մնացեալը մեզի համար հոս կարեւոր չէ:*

*Կրնայինք ըստ ինքեան այսպիսի համակրանք մ'առ Հայս սպասել ուրիշ երկու իշխաններէ, զորոնք Հայոց Մեծաց գահը բարձրացուցին Հռոմայեցիք՝ երբ իրենց շահն այնպէս կը պահանջէր, Պարթեւաց դէմ գործիք ունենալու: Իրենց* Տիգրան *անունն իսկ կրնար ցուցնել թէ գոնէ կաթիլ մ'արիւն ալ կար անոնց երակաց մէջ՝ Տիգրաններու արիւնէն: Եւ սակայն ո՜րչափ տարբեր նկարագիր կու տայ Տակիտոս՝ գոնէ երկրորդին մասին, զոր ուղղակի ստորաքարշ կը կոչէ: Զարմանալի ալ չէր: Հոս դերիշխողն ուրիշ արիւն էր: Այս իշխանք շատ շատ իրենց հանւոյ կողմանէ, եթէ սա հայ արքայից դուստր մըն էր, կապ ունէին հայութեան հետ. այլուստ՝ սերունդ են Գամրաց Արքեղայոսի մէկ դստեր եւ բուն Հայրենեօք՝ սերունդ Հերովդեանց կողմնակի ճիւղին, որ այն ամուսնութեամբ Գամիրք անցած էր: Վերն այլեւայլ անգամ առիթ*

---

[78] *Տակիտ. ԺԱ. 9:*
[79] *Տակիտ. ԺԱ. 9:*

եղաւ յիշելու այս Արքեղայոսն, եւ նաեւ իր նախահարց մէկ քանին՝ երբ Կոմանայ քըրմապետաց առթիւ յառաջ բերինք Ստրաբոնի տուած տեղեկութիւնքն: Արքեղայոսեանց տան նախահաւուն, որ թերեւս մակեդոնացի մըն էր, անունն անծանօթ է: Միհրդատայ Մեծի ժամանակ նշանաւոր եղան երկու եղբարք, մին Արքեղայոս (Ա.), զօրավար (մեռած 73է ետքը Ն. Ք.) միւսը՝ Նէոպտողոմէոս, ծովապետ՝ նոյն Միհրդատ Եւպատորի: Թողլով զԴիոգենէս, որուն այս Արքեղայոսի (Ա.) որդին ըլլալը բոլորովին ապահով չէ, որովհետեւ կրնայ միայն փեսան ըլլալ (մեռած 85 Ն. Ք.) որդին էր իրօք այն բախտախնդիր Արքեղայոսն (Բ.), Կոմանայ քըրմապետը, որ վերը յիշուեցաւ, եւ որ յաջողեցաւ կնութեան առնուլ զԲերենիկէ՝ Պտղոմէոսի Աւղէտէսի, եւ վեց ամիս ալ իշխել Եգիպտոսի (սպաննուած 55ին Ն. Ք.): Այս Արքեղայոսէ (Բ.), բաց ի դստերէ մ'որուն անունը ծանօթ չէ, որդին էր Արքեղայոս (Գ.), նոյնպէս քըրմապետ Կոմանայ, որուն Գղափիւրա (Ա.) կինը Դիոն, ինչպէս վերը տեսանք, «բոզ» կը կոչէ: Ասոնց որդին էր վերջապէս Արքեղայոս Դ. Փիլոպատրիս Կտիստէս, Գամրաց արքայն (36 Ն. Ք. — 17 Յ. Ք.) զոր յաճախ տեսանք. Արդ ասոր երկրորդ կինը ծանօթ Պիւթադորիսն եղաւ. բայց առաջին կնոջ անունն անծանօթ է ու ցեղը վիճական, թէ գամրացի արդեօք եթէ հայ արքունի տնէ էր: Նախ

*քան այս խնդրոյ մասին քանի մը խօսք ըսելը՝ չարունակենք ճիւղագրականը՝ Գամրայ Արքեղայոս ունեցաւ համանուն որդի մը՝ Արքեղայոս Ե. իշխան Կղիտայ ի Կիլիկիա: Իսկ մեզի համար կարեւորն է իւր* Գղափիւռա *(Բ.) դուստրը, որ ամուսնացաւ* Աղեքսանդրի *հետ, որդւոյ Հերովդի Մեծի եւ Մարիամնեայ, որուն մասին անընդհատ ամբաստանութիւններ ընելով հօր քով, թէեւ միջոց մը հաշտեցաւ նաեւ Արքեղայոսի միջամտութեամբ, բայց ի վերջոյ մահուան դատապարտուեցաւ եւ խեղդամահ եղաւ (4 Յ. Ք.) ինչպէս ընդարձակ պատմած է Յովսեպոս*[80]*: Գղափիւռա յետոյ ամուսնացաւ Յուբայի՝ Լիբիոյ արքային հետ. բայց այս կէտը մեզի համար կարեւորութիւն չունի: Արդ Գղափիւռայ եւ Աղեքսանդրի երկու որդիք եղան, զորոնք կը յանձնանձէր Հերովդէս,* Աղեքսանդր *եւ* Տիգրան *որ արքայ եղաւ Հայոց Ե, ուրիշ գիտնոց՝ Դ): Այս Տիգրանայ եղբօր Աղեքսանդրի որդին է միւս* Տիգրան *(Զ.), զոր Ներոն փորձեց Հայոց արքայ կարգել: Վերջնոյս որդին է այն Աղեքսանդր, իշխան Եղէուսայ, որ կնութեան առած էր զՅոտապէ՝ դուստր Անտիոքոսի Դ. Կոմագենեայ, որով խնամացած նաեւ այս փոքրիկ թագաւորութեան հետ, մինչդեռ Հերովդեանց ճիւղ մ'ալ կ'իշխէր*

---

[80] Flavii Josephi, Opera omnia, vol. IV, 16, Lipsia, Teubner 1893, էջ 34:

Թաղկեաց մանրապետութեան, եւ խնամութեան կապեր կային նաեւ Եմեսիոյ իշխանութեան հետ:

Բուն խնդիրն է ուրեմն՝ ի՞նչ տնէ էր Արքեղայոսի Գամրայ առաջին կինը: Կրկին կարծիք կայ. նախ՝ թէ ըլլայ Գամրայ տնէն՝ Արխարաթայ Ժ. դուստրը. եւ երկրորդ՝ Հայոց Մեծաց արքունի տնէ: Եւ Յուստի երկուքն ալ նշանակած է, առաջինն՝ երկրայութեամբ Արքեղայոսեանց ճիւղացանկին մէջ[81], երկրորդն՝ իբր աւելի որոշ Տիգրաններու շարքին մէջ, երբ այս Տիգրանայ մասին կը գրէ «Տիգրան Դ.» (— կամ ուրիշ հաշուի համաձայն՝ Ե. —) որդի Աղեքսանդրի, որդւոյ մը Հերովդի եւ Մարիամնեայ, եւ Գղափիւռայ դստեր Արքեղայոսի Գամրայ (որ հայ արքայադուստր մը կնութեան առած էր), այր Երատոյի Բ, իշխեց 10 Ն. Ք. մերժուեցաւ 16ին եւ մեռաւ 36ին. յաջորդ էր Արդաւազդայ Մարաց եւ Հայաստանի» եւն[82]: Խնդիրն իրօք ալ որոշ կ'ըլլայ՝ երբ Մոմզէնի հետ այս Տիգրանայ համար առնունք Աւգոստոսայ քանդակել տուած Անկիւրիոյ, հռչակաւոր Յիշատակարանին նոյն խօսքը թէ «էր Հայոց թագաւորական ցեղէ սերած» (Ե. 30): Յիշատակարանիս այս մասն՝ հնագոյն պատճէնի մը համեմատ

---

81 Justi, Iranisches Namenbuch, Marburg 1895, էջ 403:

82 Justi, Անդ էջ 324:

Թարգմանած էր Գաթըրճեան այսպէս[83]. «Զմեծն Հայաստան (Armeniam majorem, յն. պատճէն՝ Ἀρμενίαν μὲν τὴν μείζονοι) ի սպանանել թագաւորի նորա Արտաքսեայ (Artaxia, Արտաշէսի), յորժամ կարողն էի առնել ընդ նահանգաւ՝ լաւ համարեցայ ըստ օրինակի նախնեացն մերոց տալ զայն թագաւորութիւն զՏիգրանն որդի Արտաւազդայ, թոռն Տիգրանայ արքայի, ի ձեռն Տիբերեայ Ներոնի որ որդեգիր իմ էր յայնժամ: Յետ այնորիկ յորժամ յետս եկաց եւ ապստամբեաց ազգն այն՝ նուաճեցի ի ձեռն Գայեայ որդւոյ իմոյ, եւ ետու Արիոբարզանայ որդւոյ Արտաւազդայ արքայի Մարաց՝ զի առաջնորդեսցէ, եւ յետ նորա մահուն՝ որդւոյ նորա Արտաւազդայ: Իբրեւ սա սպանաւ՝ զՏիգրանն որ էր յարքունի տոհմէ Հայոցն՝ առաքեցի ի դոյն թագաւորութիւն». թարգմանութիւնը մինչեւ անգամ շատ աւելի կրնար ցուցնել քան ինչ որ Տիգրանայ, որդւոյ Աղեքսանդրի կը պատշաճէր իրականին. — «որ էր յարքունի տոհմէն Հայաստանի» ըստ յունական խմբագրութեան (τὸ ἦν ἐκ γένους Ἀρμενίου βασιλικοῦ) եւ ըստ լատինականին՝ «որ էր սերեալ յարքունի տոհմէ Հայոց» (qui erat et regis genere Armeniorum orientus): Զարմանալի չէ ուրեմն թէ ազգային

83 Գաթըրճեան, Տիեզերական Պատմութիւն, Բ հտր. էջ 97:

*բանասէրք աւելի խիստ մտօք ըմբռնած են, եւ նոյն Գաթըրճեան անոր համար կը գրէր՝ «զՏիգրան զոմն ի տոհմէ Թագաւորացն Հայոց, որպէս հաւանութեան թուի՝* ի թոռանց Արտաւազդայ Ա.»: *Իսկ Գարագաչեան մինչեւ անգամ կը գրէ «յայնժամ Օգոստոս կը ղրկէ·* Տիգրան զոմն Արշակունի, այսինքն՝ ի զաւակէ Արտաքսիասայ»: *Այսու հանդերձ խիստ մտօք առնելու չէ· եւ Յ. Ասատուրեան իրաւունք ունի երբ չընդունելով Գարթհաուզէնի ալ կարծիքը, որ Արտաշիսի Բ.* († 20 *Ն. Ք.) որդի կը համարի, կը հետեւի Մոմզէնի, որ յաջող կերպով կը մեկնէ այս Տիգրանայ «հայկական» ծագման խնդիրը՝ պարզապէս հանւոյն կողմանէ: Պատմութեան ընթացքն ալ, զոր կրնանք քաղել մատենագիրներէ եւ որուն վկայ են նաեւ դրամները, նոյնը կը ցուցնէ: Ի հարկէ Անկիւրիոյ Յիշատակարանին մէջ չեն յիշուած ամէն արքայք, ինչպէս՝ թողլով միւս մատենագիրքը, նոյն իսկ Տակիտեայ տեղեկութիւնք կը ցուցնեն: Զարմանալի կերպով ինքն ալ Տակիտոս չէ յիշած ճշդիւ խնդրոյ առարկայ այս Տիգրանը: Համեմատութեան համար յառաջ բերենք Տակիտեայ խօսքերը*[84]. *«Ամբարձաւ յայնժամ Արտաւան (Գ.) յազգէ Արշակունեաց՝ որ սնեալ էր ի Դահս... իսկ Վոնոն պարտեալ խոյս ետ ի Հայաստան՝ որ անտերունչն* (vacua) *էր*

---

[84] *Տակիտոս, Գիրք Բ.* 3, 4:

յայնժամ (16 Ց. Ք.) եւ ընդ զօրութիւն Պարթեւաց եւ Հռոմայեցւոց տարակուսեալ (infida)՝ վասն եղեռանն Անտոնիոսի, որոյ նենգաւ բարեկամութեան կալեալ զԱրտաւազդ արքայ Հայոց եւ արկեալ ի շղթայս, եւ ապա սպանեալ էր․ վասն որոյ որդի նորա Արտաշիաս (Artaxias, Արտաշէս) յիշատակաւ հօրն ոխացեալ ընդ մեզ, զօրութեամբ Արշակունեաց զպետութիւն իւր եւ զանձն կացոյց յակաստանի: Այլ ապա յիւրոցն սպանեալ դաւով, տուաւ ի կայսերէ թագաւոր Հայոց Տիգրան, եւ Տիբերիոս Ներոն էած զնա ի Հայաստան: Ո՛չ Տիգրան եւ ո՛չ որդիք նորա ընդ երկար կալան զաթոռն․ թէպէտ եւ զազգ եւ զթագաւորութիւն՝ ըստ արտաքնոցն (= բարբարոսական) սովորութեան՝ խառնեալ էր նոցա ամուսնեօք ընդ միմեանս: Զհետ նոցա հրամանաւ Աւգոստեայ թագաւորեալ Արտաւազդ, մերժեցաւ եւ նա՝ ոչ առանց մերոցն կոտորածի: Յայնժամ ընտրեցաւ Կ. Կեսար (= Գայիոս Կեսար) առնել խաղաղութիւն Հայաստանի: Սա զԱրիոբարզան ազգաւ մար, զայր անձնեայ եւ արիասիրտ[85], կացոյց թագաւոր Հայոց ըստ կամաց նոցա․ այլ ի յանկարծամահն լինել նորա, ոչ առին յանձն Հայք թագաւորել որդւոց նորա: Ապա եւ զիշխանութեան Երատոյայ (Erato) ուրումն կնոջ զփորձ առեալ, զնա եւս մերժեցին (ի սուղ

85 Անդ գիրք Բ, գլ. 4:

ժամանակի), եւ տարակուսեալ լքեալ անտէրունչք քան թէ ազատք, զփախստական վոնոն կացուցին թագաւոր» են: Մնացեալը հոս պէտք չէ մեզի համար:

Այս երկու ժամանակակցաց համեմատութենէն իսկ, — թողլով միւս մատենագրաց տեղեկութիւնքն, կը տեսնուի թէ Արտաշէսի Բ. սպանմանէն (20 ն. Ք.) յետոյ գահ ելած էր Տիգրան Բ. (կամ Գ.), որդի Արտաւազդայ թոռն Տիգրանայ Մեծի, նոյն տարին, Տիբերեայ ձեռօք, որուն օգնական պիտի ըլլար ի հարկին նաեւ Արքեղայոս արքայ Գամրաց եւ Փոքր-Հայոց (20 ն. Ք.): Թէպէտ Տակիտոս կ՛ըսէ. «ո՛չ այս Տիգրան եւ ո՛չ որդիք նորա ընդ երկար կալան զաթոռն», գոնէ իբր 20 տարի տեւած է անոնց իշխանութիւնը: Հոս չենք ուզեր միջամուխ ըլլալ թուականաց եւ ո՛չ ալ դրամոց ճշդրիտ ընծայման խնդիրներուն: Որովհետեւ մինչ այլեւայլ գիտնականք, (այսպէս նաեւ Յուստի[86]) այս Տիգրանայ Բ. (Գ.) կու տան 20—6 ն. Ք. տարիները, եւ Տիգրանայ Գ. (կամ Դ.) եւ Երատոյի՝ 6—5 ն. Ք. եւ 2 ն. Ք. մինչեւ 2 յ. Ք. (Երատոյ՝ 6—1 ն. Ք.) Աստուրեան՝ առաջնոյն կու տայ հազիւ տարի մը (20—19 ն. Ք.) եւ Տիգրանայ Գ. (Դ.) եւ Երատոյի 19 ն. Ք. — 1 յ. Ք. տարիները[87]: Արդ ճշդիւ այս վեր-

86 Justi, Namensbuch, էջ 34:

87 Հայաստան եւ Հռովմ, էջ 128—130:

ջինները չի յիշեր Անկիւրիոյ Յիշատակարանը, եւ զարմանալի ալ չէ Հռոմէացւոց կամաց դէմ՝ Պարթեւաց օգնութեամբ գահ ելած էին, ինչպէս կը պատմէ արդէն Դիոն Կասիոս[88]: Բաց աստի դրամներն ալ կը վկայեն Տակիտեայ տեղեկութեան թէ «անոնք թագաւորութեան եւ բարբարոս սովորութեամբ ամուսնութեան ալ անկողնոյ հաղորդ՝ քոյր եւ եղբայր» էին. այսինքն՝ Տիգրան Գ. (Դ.), որդի Տիգրանայ Բ. (Գ.), եղբայր եւ այր միանգամայն Երատոյի Ա., որ դրամոց վրայ ինքզինքը յայտնապէս «քոյր» կը նշանակէ[89]: Միեւնոյն պատճառաւ Անկիւրիոյ յիշատակարանը չի յիշեր նաեւ զԱրտաւազդ որ ըստ Տակիտեայ «հրամանաւ Աւգոստոսի թագաւորեալ, մերժեցաւ եւ նա՝ ո՛չ առանց մերոցն կոտորածի»: Թէ այս ըլլայ նաեւ Դիոն Կասիոսի ԾԴ, 9 յիշած «Արտաւազդէս» Մեծաց Հայոց, որուն տեղ Աւգոստոս կ'ուղարկէ անոր եղբայրը Տիգրան՞, յամենայն դէպս գոնէ խնդրական է. որովհետեւ այնտեղ պատմուածը կը յարմարի միայն Արտաշեսի Բ.: Սակայն հաւանական է թէ իրօք այս Արտաւազդ ըլլայ «որդի Արտաւազդայ (որդւոյ Տիգրանայ Մեծի). եղբայր Արտաշեսի (Բ.) եւ Տիգրանայ Բ. (Գ.),

---

88 Դիոն Կասիոս, Գիրք ԺԴ. 9:

89 Langlois V., Numismatique de l'Arménie, Paris 1859, էջ 39, տխտ. III հմմտ. Աստուրեան, Անդ էջ 129, ծն. 1:

*հօրեղբայր Տիգրանայ Գ. (Դ.) եւ Երատոյի»: Երբ Գարագաշեան*[90] *այս Արտաւազդայ մասին կ՚առնու Վելլէոս Պատերկուլոսի (Բ, 94) խօսքն, ուր կ՚ըսուի թէ Տիբեր՝ Աւգոստոսէ ուղարկուած՝ բանակաւ Հայաստան մտաւ, հնազանդեցուց երկիրն «եւ զթագաւորութիւնն ետ* Արտաւազդայ», *միտ չէ դրած թէ Վելլէոսի այս տեղւոյ ընթերցուածը գոնէ խնդրական է, եւ պէտք է կա՛մ ուղղել* Տիգրան Բ. (Գ.), *զոր Տիբեր գահ հանեց, կամ յաւելուլ Տիգրան անունն ալ, ինչպէս գիտնոց ոմանք կ՚ուզեն*[91]*: Այս Արտաւազդն է սակայն այն «Արբակէս», զոր Դիոնի մէկ հատակոտորը կը յիշատակէ: Դիոնի այս երկու բաժնով Հատակոտորը կը պատմէ թէ «երբ Հայք ապստամբեցան եւ Պարթեւաց հետ միացան, Աւգոստոս շատ հոգերու մէջ էր եւ չէր գիտեր ի՛նչ ընել»: Ինքը ծեր էր, կ՚ըսէ, Տիբերիոս բացակայ, եւ ուրիշ աւագ մը չէր համարձակեր ուղարկել: Գայիոս եւ Լուկիոս ալ շատ երիտասարդ էին եւ անփորձ: Բայց ի վերջոյ «որովհետեւ կարիքն շատ ստիպողական էր, ընտրեց զԳայիոս, անոր տուաւ անթիհիւպատի* (proconsul) *իշխանութիւն, եւ ամուսին մ՚ալ, որպէս զի անով ճոխութիւն մը ստանայ, եւ*

---

90 *Քննական Պատմութիւն Հայոց, Թիֆլիս* 1895, *Բ. էջ* 188:

91 *Ասատուրեան, Հայաստան եւ Հռովմ, էջ* 121, *ծն.* 1 *եւ* 2:

տուաւ անոր խորհրդականներ» ։ Թշնամիք երբ լսեցին Գայիոսի գալը բանակցութեանց սկսան, ո՛չ միայն Հրահատ (Ե․) Պարթեւաց, այլ նաեւ Տիգրան Հայոց ։ «Տիգրան, կ՚ըսէ, անմիջապէս չուղարկեց դեսպաններ․ բայց որովհետեւ քիչ մ'ետքը Արքակէս (= Արտաւազդ) հիւանդացաւ ու մեռաւ, կարծեց թէ ազատեցաւ իր հակառակորդէն, եւ ընծաներ ուղարկեց Աւգոստոսի թղթով մ՚ալ, որուն մէջ իր անուան չէր կրած թագաւորի տիտղոսը եւ խաղաղութիւն խնդրեց պաղատագին․ Աւգոստոս հաւանեցաւ․ եւ Պարթեւաց պատերազմէ մը վախնալով՝ ընծաներն ընդունեցաւ եւ հրամայեց անոր, վստահութեամբ երթալ առ Գայիոս յԱսորիս ։ Հրահատ (Պարթեւաց) ալ յետոյ զիջաւ՝ յանձն առնլով Հայաստանէն ելլելու» եւն․ (Դիոն, ԺԵ, 10) ։ Գայիոսի ձեռնարկութիւնն ուրեմն յաջողած էր առանց Պարթեւական Պատերազմի գալու․ Գայիոսի եւ Հրահատայ Ե․ միջեւ կռուած դաշանց համաձայն (1 Ն․ Ք․) ։ Պարթեւք ձեռնթափ կ՚ըլլային Հայաստանէ, մինչդեռ Հրահատայ եղբարքը՝ զորոնք յետ կը պահանջէր, Հռոմ կը մնային նորէն իբր պատանդ (Ցիշատակարան Անկ․ Ե, 54) ։

Դաշամբս որոշուած պիտի ըլլար Հայոց բախտն ալ, որ առանձին մնացին ։ Հռոմայեցւոց բուն թեկնածուն՝ Արտաւազդը, զոր Աւգոստոս հակարքայ հանած էր (6 Ն․ Ք․), բայց չէր յաջողած, նոյն տարին մեռաւ, ինչպէս տեսանք ։ Հռոմէ՛ական էր կու–

սակցութիւնն է անշուշտ այն՝ զոր Տակիտոս կ'ակնարկէ թէ «ըստ կամաց նոցա» էր, երբ Հայոց թագը տրուեցաւ «Արիոբարզանեայ որդւոյ Արտաւազդայ արքայի Մարաց» (Յիշատակարան Անկ.)։ Թէ ինչո՛ւ Հռոմայեցիք ճշդիւ այս ընտրեցին՝ դժուար չէ գուշակել մինչդեռ ի Հռոմ անշուշտ կրնար գտնուիլ իշխան մ'որ աւելի իրաւունք ալ ունենար։ Պատճառն ալ անձնական արժանիքը չէր անշուշտ, զոր Տակիտոս այնչափ կը գովէ («այր անձնեայ եւ արիասիրտ)․ այլ՝ քաղաքական։ Ատրպատականի այս «Մարաց» թագաւորները, որոնք ըստ ինքեան Հայոց հետ ալ խնամութեամբ կապուած էին, ճիգ մ'ունէին բնականապէս ինչպէս Հայոց՝ նոյնպէս Պարթեւաց գերիշխանութենէ ազատիլ եւ օգտուիլ ալ պարագաներէ։ Առ այս պատշաճ երեւցած էր արդէն Արտաւազդայ Ա․՝ որդւոյ Արիոբարզանայ Ա․, դաշնակցիլ Հռոմայեցւոց հետ, ինչպէս վերը տեսանք․ Արտաւազդ պարտուած եւ նաեւ գերի ինկած, յաջողեցաւ փախչիլ Հռոմայեցւոց քով, եւ ի վարձ՝ առաւ Փոքր-Հայոց գահը (տես վերը՝ «Մեդոս»), որդին ալ՝ Արիոբարզան Բ․՝ հօր հետ այն ատեն փախած էր եւ Հռոմ ալ սնած։ Երբ Աւգոստոս արեւելք եկաւ՝ կարգադրելու գործերը, Արիոբարզան ստացաւ նորէն Ատրպատականի գահը (20 Ն․ Ք․)։ Աւգոստոս Անկիւրիոյ Յիշատակարանին մէջ կը պարծի թէ Պարթեւք եւ Մարք դեսպանաց ձեռօք իրենց իշխանները թա-

*պաւոր խնդրեցին եւ ընդունեցան, ի մասնաւորի «Մարք՝ զԱրիոբարզան (Բ.) զորդի Արտաւազդայ (Ա.) արքայի, զԹոռն Արիոբարզանայ (Ա.) արքայի» (Զ. 33): Բայց ճշդիւ այս ատեն Արիոբարզան նորէն երկրագուրկ փախստական մըն էր (1 Ն. Ք.), որովհետեւ Պարթեւք զինքը մերժած էին իր իշխանութենէն: Հօր պէս՝ որդին ալ վարձատրուելու էր, այս անգամ՝ իբր արքայ ալ Հայոց Մեծաց: Բայց դիւրին չեղաւ գործադրութիւնը: Երատոյ նոյն տարին հրաժարած էր կամ ստիպուած հրաժարիլ: Թէ նաեւ Տիգրանայ մահը նոյն տարին եղած ըլլայ, ինչպէս կը հետեւցուի Դիոնի խօսքէն, գոնէ խնդրական է: Դիոն ի հարկէ ի միասին կը յիշէ երկու պարագայքս. բայց թէ իր խօսքին կերպը եւ թէ այն պարագան որ նոյնը կը յիշուի (2 Յ. Ք.) տարւոյ դիպաց առթիւ՝ կրնայ նաեւ ցուցնել թէ վերջին տարիս միայն պատահած էր մահը: Դիոնի պատմածն է այսպէս. «Պարթեւաց դէմ պատերազմի չեկաւ իրը. որովհետեւ Հրահատ երբ լսեց թէ Գայիոս իբր հիւպատ (= անթիհիւպատ, «պրոկոնսուլ») Ասորիք կը գտնուի, եւ դարձեալ կը կարծէր թէ չէր կրնար վստահիլ իւր հպատակաց հաւատարմութեան, խաղաղութիւն կնքեց այն պայմանաւ որ Հայաստանէն ելաւ եւ իւր եղբարք ծովէն անդին պիտի մնային: Բայց Հայք, թէեւ* Տիգրանն բարբարոսաց դէմ պատերազմի մը մէջ պարտուած (սպանուած) էր,

եւ Երատոյ ալ իշխանութենէ հրաժարած, *երբ Արիոբարզան մարի մը՝ որ յառաջագոյն Տրդատի հետ Հռոմայեցւոց քով ապաստանած էր, վարչութեան (գայխոնի) ներքեւ դրուեցան*, յաջորդ տարին՝ *երբ Պուբլիոս Վինիկիոս եւ Պուբլիոս Վարոս հիւպատոս էին (ամ շինման 755 = Յ. Ք. 2)* զէնք առին ասոնց դէմ: *Բայց կարեւոր բան մը չկրցան գործել: Ադդոն (Ἄδδων) անուն մէկը՝ որ Արտագերից (Ἀρτάγειρα) կը տիրէր, հրապուրեց զԳայիոս պարսպին մօտենալու, իբր թէ* Պարթեւաց արքայի *գաղտնիքներն անոր յայտնել կ'ուզէ եւ վիրաւորեց զայն: Անկէ ետքը պաշարուեցաւ, բայց երկար ատեն դիմադրեց: Բայց երբ վերջապէս քաղաքն առնուեցաւ՝ ոչ միայն Աւգոստոս, այլ նաեւ Գայիոս առաւ ինքնակալի տիտղոսը:* Ասոր վրայ զՀայաստան ընդունեցաւ Արիոբարզան, *եւ անոր քիչ մ'ետքը մեռնելէն ետքը՝* իւր որդին Արտաւազդ՝ *Աւգոստոսէ ու ծերակուտէն» (Դիոն, ԺԵ, 11): Գայիոս այն առած վէրքէն մեռաւ քիչ մ'ետքը (իբր 4 Յ. Ք. տարւոյ սկիզբը, եթէ ոչ աւելի կանուխ): Ըստ այսմ Արիոբարզանայ իրական պահակալութիւնն եղած է հազիւ 2ին Յ. Ք., թերեւս նաեւ յաջորդ տարին, երբ արդէն «պատահաբար» մեռաւ, եւ յաջորդեց որդին* Արտաւազդ: *Արտագերս բերդի դէպքը կը պատմեն ուրիշ ժամանակակիցք ալ, անոնք քիչ մ'այլազգ գրելով իւրաքանչիւրը, եւ յաւելլով այլեւայլ մանրամասնութիւններ:*

Վելլէոս, որ այս Գայիոսի արշաւանացս ընկերացող էր, կը կոչէ «Ադրուոս»։ Ստրաբոն՝ «Ադովր»։ Հետաքրքրական են Փլորոսի «Դոննէս» ձեւը, եւ Սեքստոս Ռուփոսի՝ «Դոմնէս»։ Կարելի է թէ անունը բուն «Ատոմ» ըլլայ, ինչպէս երկրայութեամբ կ'առաջարկէ Ասատուրեան[92]։ Զիարդ եւ իցէ՝ Արիոբարզանի մահուանէ ետքը՝ Արտաւազդ որդին ալ երկար չդիմացաւ, թէեւ չենք գիտեր ճշդիւ իր վերջին տարին (իբր 3—10 Յ. Ք.)։ Անկիւրիոյ Յիշատակարանն որոշ կ'ըսէ թէ Արտաւազդ սպանուեցաւ, իսկ Տակիտոս թէեւ այս Արտաւազդայ անունը չի տար, իր համառօտախօսութեամբն ալ կը հասկցնէ պարագաները գրելով թէ Հայք չհանդուրժեցին անոր (Արիոբարզանայ) տոհմի թագաւորութիւնը։ Արտաւազդայ համանուն որդին եւ տոհմն առ հասարակ անցաւ ի Հռոմ եւ Ատրպատականի Մարաց թագաւորութիւնն ալ վերջ գտած էր, յաջորդելով հոն արշակունի տոհմը։ Արիոբարզանու որդւոյ Արտաւազդայ յարմար է այն դրամն, որ ի նշան երախտագիտութեան առ Օգոստոս՝ մէկ կողմն ունի կայսեր պատկերն՝ արձանագրութեամբս «Աստուածային Կայսեր Բարերարի»[93]։

Արդ ասկէ ետքն է որ Օգոստոս, ինչ-

---

92 Հայաստան եւ Հռոմ, էջ 143։

93 Babelon E., Les Rois de Syrie, d'Arménie et de Commagène, Paris 1890, p. CCVI.

պէս կ'ըսէ Անկիւրիոյ Յիշատակարանը, «զՏիգրանն՝ որ էր յարքունի տոհմէ Հայոց, առաքեցի ի դոյն թագաւորութիւն»: Այս Տիգրան Դ., ստուգիւ ուրիշ մէկը չի կրնար ըլլալ, բայց Գամրայ Արքեղայոսի թոռը, Աղեքսանդրի եւ Գղափիւռայ որդին (իբր 10 կամ 10 Յ. Ք.): Թէ ո'րչափ ատեն իշխեց՝ յայտնի չէ: Բայց յամենայն դէպս՝ երկարատեւ չէր թագաւորութիւնը: Եթէ ի լռութենէ ապացոյց մը հոս արժէք ունի՝ այն պարագայէն որ Աւգոստեայ անկիւրական Յիշատակարանին մէջ Հայոց թագաւորաց շարքն անով կ'աւարտի, կրնար հետեւցուիլ թէ տակաւին կ'իշխէր մինչեւ Աւգոստոսի մահը (14 Յ. Ք.): Տակիտոս, որ հոս ի կարգին ամենեւին չի յիշեր այս Տիգրանը, կը յիշէ զԵրատոյ Բ: Արիոբարզանայ տոհմի մերժուելէն ետքը յաւելլով, ինչպէս տեսանք, թէ Հայք «այն ատեն փորձեցին կնոջ մ'իշխանութիւնն ալ, որուն անունն էր Երատոյ, եւ զայն ալ կարճ ժամանակէն մերժելով, վարանած ու անիշխան, աւելի անտէրունչ քան թէ յազատութեան, փախստական Վոնոնը թագաւոր դրին (16 Յ. Ք.): Ուստի 11—16 Յ. Ք. տարիներու մէջ տեղի ունեցած են Տիգրանայ թագաւորութիւնը, Երատոյի Բ. սակաւ ժամանակեայ իշխանութիւնը, անտէրնչութեան միջոց մը եւ Վոնոնի գահ ելլելը:

Անցողակի դիտենք ա՛յս Տիգրանայ ընծայելու է յամենայն դէպս դրամ մը, զոր

*շատերը կ՚ընծայէին նոյնպէս Տիգրանայ Գ. (Դ) եւ Երատոյի Ա, այն պատճառաւ որ առոր յետակողմն ալ դշխոյին պատկերը կայ*[94]*: Բայց արդ կարեւոր որոշիչ կէտ մը կայ, որուն մտադիր չեն եղած այն գիտնականք: Մինչ Տիգրան Գ (Դ) իւր դրամին վրայ «արքայից արքայ» Տիգրան տիտղոսը կը կրէ, այս դրամը կը կրէ «արքայ մեծ* Նոր (Նէոս), Տիգրան»[95]*: Նախընթաց Տիգրանայ համար, որ Տիգրաններու հարազատ սերունդ էր եւ իւր հայրենի գահը պաշտպանեց դէն ի ձեռին եւ Պարթեւաց օգնութեամբ՝ ընդդէմ Հռոմայեցւոց, որեւէ իմաստ չունի* «Նոր *Տիգրան» մը: Բայց նոյնը լիովին յարմար է Հերովդի սերնդէ Տիգրանի մը, որ Տիգրաններու սերնդոց գահուն համար ստուգիւ «Նոր» մըն էր: Ցետակողման պատկերն է ուրեմն* Երատոյի *Բ, որ այս Նոր Տիգրանէ ետքն ալ միջոց մը առանձին իշխեց:*

*Նոր Տիգրանիս «հայկական» սերունդն ըստ այսմ մեկնելու է՝ միայն մամի կողմանէ: Ց. Աստուրեան, որ Մոմզէնի տուած այս մեկնութիւնը կ՚ամփոփէ, կը գրէ. «Հաւանականաբար Տիգրանին մեծ մայրը (որ է կին Աղեքսանդրոսի), Հայոց արքունական տնէն էր. ինչպէս որ Յովսեպոս Հնախ.* 17. 1, 1—2. 18, 5, 4. *Հր. Պատրմ.* 2, 11,

---

[94] Langlois V., Numismatique de l'Arménie, Paris 1859, *էջ* 39, *տախտակ* 5:

[95] *Անդ էջ* 39, *տախտակ* 6:

16 եւ Տիգրան անուններէն կարելի է դուշակել. (Հմմտ. Dessau, Prosopogr. III, 149)[96]: Վերջին մատեանս առձեռն չունինք՝ տեսնելու թէ աւելի որոշ փաստ մը բերուած է: Բայց Յովսեպոսի քով, որ այս Տիգրանն ու իւր եղբօրորդին, Տիգրան քանի մ'անգամ յիշուած են, պայծառ բան մը չկայ՝ իրենց մամին մասին:

Առաջին տեղւոյ մէջ Յովսեպոս նախ կ'ըսէ թէ Հերովդէս «զդուստր Արքեղայոսի արքայի, զամուսին Աղեքսանդրի, առաքեաց (յետս) առ հայրն, յիւրոցն տուեալ ի բաց զօժիտս», որպէս զի իրենց մէջ վէճ չըլլայ. (Հնախ. Հր. ժէ, ա, 1): Աղեքսանդրի պանմանէ ետքն ուրեմն մայրը վերադարձեր էր ի Գամիրս, բայց ո՛չ զաւակները: Ընդհակառակն՝ «Հերովդէս սնուցանէր զմանկունս որդւոց իւրոց ամենայն հոգաբարձութեամբ. եւ էին Աղեքսանդրի ի Գղափիւռայ արուք երկու. եւ Արիստոբուղեայ՝ ի Բերենկեայ դստերէ Սողոմեայ արուք երեք եւ աղջկունք երկու»: Կ'աղօթէր, կ'ըսէ, թէ այս զաւակներն իրենց հարց պէս դժբախտ չըլլան. այլ «աճեցեալք առաքինութեամբ եւ գիտութեամբ արդարութեան, հատուսցեն փոխարէնս խնամոցն՝ զոր առնէր»: Երբ չափահաս եղան՝ խորհեցաւ ամուսնացնել, եւ նախ նշանեց «երի-

96 Աստուրեան Յ., Հայաստան եւ Հռովմ, էջ 144—145, ծն. 3:

ցագոյն որդւոյ Աղեքսանդրի՝ գղուստր Փե-
րորայ եւ որդւոյ Արիստոբուղեայ՝ գղուստր
Անտիպատրի» են: Մնացեալն՝ որ երկար
ալ է, կարեւոր չէ հոս. միայն թէ վերջը
կ'ըսուի թէ Անտիպատեր յաջողեցաւ ամուս-
նութեանց այլեւայլ ծրագրեր փոխել տալ.
այնպէս որ «Անտիպատրի որդին գղուստր
Փերորայ» պիտի առնուր (անդ, ժէ, ա, 2):
— Յաջորդ տեղին կը խօսի Գղափիւռայի
երազի մը եւ մահուան մասին, ի վերջոյ
կին եղած էր նաեւ Արքեղայոսի որդւոյ Հե-
րովդի (ի կնոջէն Մաղթակ. Սամարացի):
Այս Արքեղայոս, եղբայր Փիլիպպեայ, ամ-
բաստանուեցաւ՝ ի Հռոմ եւ աքսորեցաւ ի
Վիեննա Գաղղիացւոց, ինչպէս երազի մը
մէջ տեսած էր: Արդ, կ'ըսէ, նման բան մը
պատահեցաւ նաեւ «Գղափիւռայ կնոջ նորա
որ էր դուստր Արքեղայոսի, զոր՝ որպէս
ասացաք, մինչդեռ կոյսն էր, առ ի կնու-
թիւն Աղեքսանդր որդի Հերովդի, եղբայր
Արքեղայոսի: Այլ իբրեւ սպանաւ Աղեք-
սանդր ի հօրէն, ամուսնացաւ ընդ Յոբայ
(Յուբայ) արքային Լիբէացւոց, եւ ի մեռա-
նել Լիբէացւոյն՝ մնացեալ այրի առ հօրն
իւրում ի Գամիրս կեայր» Զայս կնութեան
առաւ Արքեղայոս «արձակեալ զՄարիամնէ
զամուսին իւր. այսչափ փոխեաց զնա սէր
Գղափիւռայ»: Արդ, կ'ըսէ, Գղափիւռա «մինչ-
դեռ ամուսին էր Արքեղայոսի», երազ տե-
սաւ, յորում առաջին այրն Աղեքսանդր
երեւնալով զինքը կը յանդիմանէ թէ մոռնա-

լով իւր սէրն ու ծնած որդիքն, ո՛չ միայն Լիբէացւոյն հետ ամուսնացաւ, այլ նաեւ «երրորդ անգամ» ամուսնացաւ, եւ այն՝ «յանպատշաճս եւ առանց ամօթոյ ի տուն իմ մտեր, ամուսնութեամբ կեցեալ ընդ Արքեղայոսի՝ առն քում, այլ եղբօր մերում»: Եւ կ՚ըսէ թէ զինքն չէ մոռցած, պիտի ազատէ այն անամօթութենէն եւ նորէն իրեն պիտի առնու: Երբ Գլափիւրա այս երազը կը պատմէ իւր ընկերակից կանանց, «յետ սակաւ աւուրց մեռաւ» (Հնախ. Հր. ԺԷ, ԺԳ, 4): Գլափիւրայ մասին այս միեւնոյն պատմութիւնը նոյն ոճով կրկնած է Յովսեփոս նաեւ իւր «Հրէական Պատերազմին» մէջ: Հոս զԱրքեղայոս ազգապետ կը կոչէ եւ կ՚ըսէ թէ երազէն ետքը հազիւ «երկու օր ապրեցաւ» (Հր. Պտրզմ. Բ, է, 4): — Մեզի համար կարեւորագոյն է այն ընդարձակ հատածն, ուր Յովսեպոս Հերովդի որդւոյ երկար ճիւղագրութիւն մը կ՚ընէ: Այս երկար կտորին վերջին մասն է. «իսկ Աղեքսանդրի» որդւոյ Հերովդի արքայի, որ ի հօրէն սպանաւ, ծնան որդիք Աղեքսանդրոս եւ Տիգրան (*Ἀλέξανδρος καὶ Τιγράνης*) ի դստերէն Արքեղայոսի արքային Կապպադովկացւոց: Եւ Տիգրան թագաւորեալ Հայոց (*Τιγράνης μὲν βασιλεύων Ἀρμενίας* ի լինել զնմանէ ամբաստանութեան ի Հռոմ, մեռաւ անորդի (*κατηγοριῶν αὐτοῦ ἐπὶ Ῥώμης γενυμένων, ἄπαις τελευτᾷ*): Այլ Աղեքսանդրի եղեւ որդի Տիգրան՝ համանուն եղ-

քորն (Ἀλεξάνδρῳ δὲ Τιγράνης δρώνυμος τῷ ἀδελφῷ γίνετοι παῖς), եւ առաքեցաւ ի Ներոնէ արքայ Հայոց (καὶ βασιλεὺς Ἀρμενίας ὑπὸ Νέρωνος ἐκπέρπιτοι). Եւ եղեւ սորա որդի Աղեքսանդրոս: Սա առ ի կին զՅովտապէ դուստր Անտիոքայ արքային Կոմմագենացւոց: *Իսկ Վեսպասիանոս զսա կացոյց* թագաւոր կղզւոյն (νησῖδος) ի Կիլիկիա: *Իսկ* սերունդ Աղեքսանդրի *վաղվաղակի անդստին իսկ ի ծնանելն՝* եղիք զպաշտօն (τῆς θρασπείον) *բնիկ Հրէից, փոխեալ ի* հայրենի սովորութիւնս Հելլենացւոց (πρὸς τὰ Ἕλλησι πάτρια) *իսկ այլոց. դստերաց Հերովդի դէպ եղեւ մեռանել առանց որդւոց»* *եւն* (*Հնախ. Հր. ԺԸ, ե*, 4):

*Հրէական Պատերազմին մէջ ալ, որուն թարգմանութիւն կամ նոր խմբագրութիւն մ'ըրած է Ստեփանոս Լւովցի*[97], *նոյները կը կրկնուին: Յիշելով Անտիպատրի ատելութիւնն այն զաւակաց դէմ, որոնցմէ կը վախնար իր յաջորդութեան վտանգ մը, կ'ըսէ.* «*Զի էին* Աղեքսանդրի որդիք երկու՝ *ի* Գղափիւրայ, *Աղեքսանդր եւ* Տիգրան. *իսկ Արիստոբուղեայ՝ ի Բերենիկեայ դստերէ Սաղոմեայ՝ որդիք Հերովդէս եւ Ագրիպպաս եւս Արիստոբուղոս, իսկ դստերք՝ Հերովդիան եւ Մարիամնէ»: Արդ զԳղափիւրա Հերովդէս յղեաց հանդերձ պաշտատականաւն՝ ի Կապ–*

97 *Ստեփանոս Ռօշքա, Վիպասանութիւն Հրէից, էջմիածին* 1787:

պադովկիա, յորժամ սպան զԱղեքսանդրոս. իսկ զԲերենիկէ Արիստոբուղեայ՝ ամուսնացոյց ընդ մօրեղբօրն Անտիպատրի» են (Հր. Պատմ. Ա, ժը, 1)։ — Խօսելով Քաղկեաց թագաւորի մասին կը գրէ. «Յետ այսորիկ մեռաւ եւ Հերովդէս արքայ Քաղկեաց (τῆς Χαλκίδος, Քաղկիդէ), թողեալ ի Բերենիկեայ՝ ի դստերէ եղբօրն՝ որդիս երկուս, զԲերենիկիանոս եւ զՀիւրկանոս. իսկ յառաջին կնոջէ՝ ի Մարիամնեայ՝ զԱրիստոբուղոս[97]։ Միւս այլ եղբայր նորա Արիստոբուղոս մեռաւ առանց իշխանութեան (ἰδιώτης, «ռամկական») թողեալ զՅովտապէ դուստր։ Արդ սոքա էին, որպէս ասացի, որդիք Արիստոբուղեայ՝ որդւոյ Հերովդի։ Իսկ Արիստոբուղոս եւ Աղեքսանդր ի Մարիամնեայ ծնան Հերովդի, զորս հայրն եսպան։ Բայց սերունդք Աղեքսանդրի թագաւորեցին Հայոց Մեծաց». (ἡ δὲ 'Αλεξάνδρου γενεὰ τῆς μεγάλης 'Αρμενίας ἐβασίλευσε. Հր. Պատմ. Բ, ժա, 6)։

Ասոնք են Յովսեպոսի տուած տեղեկութիւնքն այս Տիգրաններու մասին, որոնց առաջինն՝ ինչպէս տեսանք՝ Աւգոստեայ Յիշատակարանին մէջ «յարքունի տոհմէ Հայոց» կը կոչուէր։ Յովսեպեայ ճիւղագրականք կը ցուցնեն թէ բուն ի՛նչ տոհմ էր։ Առաջին Տիգրանայ համար Յովսէպոս յայտնի ալ կ՚ըսէ թէ Հերովդի ձեռքին տակ մեծցաւ։ Եթէ ուզենք՝ կրնանք այս Տիգրանայ մասին ալ առնուլ Յովսեպոսի միւս տեղեկութիւնը

թէ Աղեքսանդրի սերունդը հրէական կրօնքն ու ծէսերը չէր պահեր, այլ «Հելլենացւոց» կրթութիւնն ընդունած էր· այսինքն՝ այն կրթութիւնը, զոր կ՚ընդունէին արդէն այս ժամանակի ամէն իշխանքն, նաեւ Հայկականք ու պարթեւանք, որոնք ի Հռոմ կամ այլուր հռոմէական իշխանութեան ներքեւ կ՚ապրէին: Թէ ինչ պտուղ կու տար այս կրթութիւնը՝ յայտնի է անկէ որ այլեւայլ հայ եւ պարթեւք իշխանք ընդունելի չեղան իրենց ժողովրդենէ ճիշդ այս պատճառաւ: Երկրորդ Տիգրանայ մասին Տակիտեայ տեղեկութիւնը բացորոշ է· առաջնոյն մասին դժբախտաբար Տակիտոս բան մը չէ ըսած, քանի որ եւ ոչ յիշած է անոր թագաւորութիւնը: Բայց նաեւ Տակիտոս յիշած է անոր մահը, զոր Յովսեպոս ալ «ինչպէս տեսանք, համառօտիւ կ՚ակնարկէ թէ ի Հռոմ ամբաստանուեցաւ եւ մեռաւ անորդի: Այն բաղմաթիւ սպանութեանց մէջ, որ կատարուեցաւ Տիբերեայ օրով, կը յիշուի այս Տիգրան ալ, որ շատոնց մերժուած էր Հայոց գահէն ու ի Հռոմ կ՚ապրէր: Այս տարին՝ երբ «Կ. Պլաւտիոս եւ Սեքս. Պապինիոս հիւպատոս» էին (ամ շինման 789 = Յ. Ք. 36) կը պատմուի Լ. Արուսեոսի «անգութ սպանումն, եւ «Վիբուլենեայ Ագրիպպայ ապետին հռոմէացւոյ» ինքնասպանութիւնն թունով, որ արդելք չեղաւ դահճաց փութալու «եւ զկոկորդն վաղ խուկ անշնչացեալ արկին ի խեղդ»: Հոս անմիջապէս կը կցէ

*Տակիտոս. «Ոչ կարաց եւ ոչ* Տիգրան, երբեմն թագաւոր Հայոց, *զերծանել ի պատուհասէ. եւ* արքայն ընդ քաղաքացիս մատնեցաւ ի մահ: *Կ. Գալբա եւ Բլեսեանք երկոքին անձնամահ եղեն» եւն: Բնագրին մէջ չեշտուած է այն կէտը թէ թագաւորութեան աստիճանը չկրցաւ զինքն ազատել*[98]:

*Աւելի հետաքրքրական Տակիտեայ տեղեկութիւնն Երկրորդ Տիգրանայ մասին, որ նախընթացին եղբօրորդին էր: Վերը տեսանք արդէն թէ ի՛նչ պարագայից մէջ Ներոն ճշդիւ այս երկրորդ Տիգրանը՝ Հայոց գահ հանել փորձեց (60ին Յ. Ք.) ընդդէմ Պարթեւ Տրդատ–Տիրիթի: Այս Տիգրանայ Ե կամ Զ) մասին կը գրէ Տակիտոս. «Եւ յղեցաւ* թագաւոր Հայոց *ի Ներոնէ* Տիգրան, յարքայազանց Կապպադովկացւոց, թոռն Արքեղայոսի արքայի, *այն՝ որ ի* բազում ամաց պատանդ ի Հռոմ կացեալ՝ մինչեւ ի ծառայութիւն խոնարհեալ էր[99]: Ոչ յամենեցունց եգիտ ընդունելութիւն. *զի տակաւին կէսք կամէին զոք յԱրշակունեաց. այլ բազումք ատեցեալ ի գոռոզութենէ Պարթեւաց՝ լաւ համարէին զառաքեալն ի Հռոմայեցւոց անուն ունել ի թագաւոր: Եւ տուան Տիգրանայ ի զօրաւիգն հազար այր ի լեգէոնականաց, գունդք երեք ի նիզակակցաց, եւ թեւք երկու հեծելոց, առ ի դիւրաւ*

---

98 *Տակիտ. Զ*, 40:

99 *Տակիտ. ԺԴ*, 26:

պահպանել զնորոգ թագաւորութիւնն: Եւ յանձնեցան կողմանք Հայաստանի՝ սահմանակցաց նորա, Փարսմանայ, Պողեմոնի, Արիստոբուղեայ (— Փոքր-Հայոց —) եւ Անտիոքոսի: Եւ Կորբուղոն դարձաւ յԱսորիս». եւն[100]: Վերջին պարագային տեսանք արդէն, եւ թէ՝ այնու ամենայնիւ երկար չտեւեց այս Տիգրանայ ալ թագաւորութիւնը, որ մերժուեցաւ Պարթեւներէ: Բայց կարեւորը Տակիտեայ այն նկարագրական է՝ զոր կուտայ կարճ խօսքով մը՝ այս Տիգրանայ: Հիւրմիւզեանի թարգմանութիւնը, զոր յառաջ բերինք, որչափ ալ ճիշդ, չի տար բնագրին խորութիւնը: Գարագաշեան, որ թարգմանաբար յառաջ բերած է Տակիտեայ այս մասերը, Տակիտեայ այս մասն իմաստին աւելի յարմարագոյն դրած է այսպէս. «Տիգրանս այս, ծնեալ յերեւելի տոհմէ Կապպադովկացւոց, էր թոռն Արքեղայոսի արքայի. այլ արգելեալ բազում ժամանակս ի Հռոմ իբրեւ պատանդ, բերէր յանձն ոգի վատ եւ գետնաքարշ՝ իբր եւ զգերույ» եւն[101]: Նման բացատրութիւն մը կը գործածուի յետոյ ալ, որ այս Տիգրան ուղղակի «տարածին» ալ կը կոչուի: Երբ, կ՚ըսէ, Պարթեւաց Վաղարշ լսեց Կորբուղոնի ըրածները (— առումն Արտաշատու եւ հրձիգ ըլլալը, անձնատրութիւն Տիգրանակերտի եւ առումն

---

100 Տակիտ. ԺԴ, 26:

101 Գարագաշեան, Պատմ., էջ 220:

միջնաբերդին, Տրդատայ–Տիրիթի Հայաստանէ ելելը —), «եւ զի Տիգրան օտարազգի թագաւորեալ էր ի Հայաստան»[102] կը խոհէր վրէժ առնուլ, բայց կը վարանէր: «Այլ մինչդեռ ի վարանս անդ կայր, գրգռեցաւ ի գուր նորոց թշնամանաց. զի Տիգրանայ մեկնեալ ի Հայաստանէ» ապստամբէր անդադար ի սահմանակիցս իւր յԱդիաբենս. Հինահար արարեալ շուրջանակի: Նախարարք աշխարհին դառնապէս բողոք բարձեալ առէին: Յո՞ր վայր արհամարհեալ զտանիմք, զի ոչ եւս զօրավար հռոմէացի նեղէ զմեզ, այլ պատանի յանդուգն՝ կեցեալ զամս բազումս ընդ ստրուկս ի պատանդ», եւն: Պատմութեան մնացեալ մասն՝ որ երկար է, առնուած Կորբուլոնի ստայօդ Յիշատակագրութենէն, բնականապէս գեղեցիկ կը ցուցնէ Հռոմայեցւոց իրերը՝ քան որ իրականին էին: Երբ Վաղարշ «եդ ի գլուխ Տիրիթայ թագ» եւ զՄոնեսէս կ'ուղարկէ բանակաւ «եւ հրամայեաց վանել զՏիգրան ի Հայաստանէ», եւ յառաջ կը խաղար դէպ ի Տիգրանակերտ, «ոչ անդէտ եւ անպատրաստ եգիտ զՏիգրան»: «Անկեալ էր նա ի Տիգրանակերտ քաղաք ամուր՝ պաշտպանեալ ի բազմութենէ զօրաց, եւ ի բարձրաբերձ պարսպաց, եւ ի Նիկեփոր գետոյ՝ որ պատի զմասամբ պարսպացն ոչ դոյզն ինչ լայնու-

102 Տակիտ. ԺԵ, 1—2:

թեամբ. եւ պարկէն ընդարձակ չուրջ ածեալ էր ուր ուրեք ոչ յոյժ դժուարին եւ անցք դետոյն էին յամուրս անդ զօրք հռոմէացիք պաշարապինդք» եւն: Եթէ հաւատանք տեղեկութեանց, պաշարումն անյաջող էր. որովհետեւ «Պարթեւք ի պաշարումն քաղաքաց տարտամք ի մօտոյ, ճիգն ընդունայն անօսր նետիւք գործէին ի հեռուստ, եւ ոչ ահ ի պարսպապահս արկեալ»: Ադիաբենաց յարձակումը, կ'ըսէ, մերժուեցաւ: Միով բանիւ «պաշարումն քաղաքին ի դերեւ ելեալ էր. Տիգրանայ ոչ պակասէին զօրք եւ ոչ համբարք, եւ լեգէոնք յղեալք ի Հայս եւ այլք յԱսորիս՝ պատրաստ կային ի մտանել»: Մինչդեռ իբր թէ Պարթեւաց հեծելազունդը «վաստակաբեկ» էր, եւ ձիանն՝ անճարակ, վասն բազմութեան մարախից ծախելոյ զամենայն դեղ դալար եւ զտերեւ ծառոց»: Վերջապէս Վաղարշ զինադադար կ'առաջարկէ, «եւ հրամայեալ Մոնէսի թողուլ ազատ զՏիգրանակերտ, մեկնեցաւ ինքն ի բաց»[103]:

Եթէ ճիշդ ըլլար այս ամէնը՝ Տիգրանայ ալ յաջողութիւնը լիովին կ'ըլլար: Մինչդեռ, երբ Վաղարշ կը մեկնէր, Տիգրան ալ կ'ելլէր Հայաստանէ եւ Հռոմայեցիք ստիպուած էին ելլել Տիգրանակերտէ: Տակիտոս՝ պատմելով ալ Կորբուլոնի այս քաջագործութիւնքը, գիտցած է քննադատել, եւ անոր համար կը յաւելու. «Զայսուիկ բազումք

103 Տակիտ. ԺԵ, 4—5:

յերկիւղէ Թագաւորին եւ ի սպառնալեաց Կորբուղոնի համարեալ, դրուատեօք բարձրացուցանէին զնա․ այլք զաղտնածածուկ իմն համախոհութեան տային զդադարումն մարտին երկուստեք, եւ զմեկնելն Տիգրանայ յաշխարհէն Հայոց հեռի կալով Վողոգեայ (— այսինքն՝ ի մեկնելն ի բաց Վաղարշու)․ եւ այլն․ Առ ի՞նչ յետս կոչել ի Տիգրանակերտ քաղաքէ զբանակն հռոմէական, եւ առ իմէ՞ լքանել ի խաղաղութեան զպաշտպանեալն ի պատերազմի․ լաւագո՞յն թերեւս էր ձմերել ի ծայր Կապպադովկիոյ, ի հիւղս հարեւանցի կանգնեալս, քան յոստանին՝ որ այն ինչ ի նորանէ էր պաշտպանեալ» եւն։ Իրօք ալ երբ Կեսեննիոս Պետոս զօրավարը կու գայ, «էած զբանակն յայնկոյս Տաւրոսի՝ առնուլ անդրէն զՏիգրանակերտ, որպէս ասէրն, եւ աւերել զգաւառս՝ զորս Կորբուղոնի թողեալ էր ազատ» եւն։ Դիոն Կասիոս, որ գործածած է նոյնպէս Կորբուղոնի այս յիշատակագիրը, ունեցած չէ այս քննադատական ոգին։ Անոր պատմութեան համեմատ՝ աւելի Պետոսի չարաչար պարտութենէ ետքն ըլլալու է Հայաստանի պարպուիլը Հռոմայեցւոց կողմանէ։ Անշուշտ Պետոսի պարտութիւնն որոշիչ եղաւ։ Արածանւոյ մօտ այս պարտութենէն (62 Յ․ Ք․) մինչեւ Կորբուղոնի եւ Տրդատայ տեսակցութիւնը, ուր միաբանութիւն եղաւ՝ Տրդատայ անձամբ Հռոմ եր-

*թալով պսակուելու* (64), *նոյնպէս երկարապատում նկարագրութիւնքն, աւելորդ են մեզի համար: Օտարածին Տիգրան այլեւս գործ չունէր հոն յամենայն դէպս: Իւր իշխանութիւնն եղած է շատ կարճ* (60—61 Յ. Ք.): *Տրդատայ պսակումն ի Հռոմ քիչ մ'ետքն եղաւ, զոր նոյնպէս մանրամասն նկարագրած են պատմագիրք*[104] (66 Յ. Ք.): *Ասով ղոնէ բաւական ժամանակ մը Հայաստան դադրեցաւ այնպէս խաղալիք ըլլալէ. թէեւ նաեւ իւր յաջորդ պատմութեան մէջ այսպիսի միջամտութիւնք եւ օտար թագաւորներ չէն պակսիր: Տրայիանոս, ինչպէս ծանօթ է, մինչեւ անգամ ուղղակի հռոմէական նահանգ ընել փորձեց զՀայաստան, որ սակայն տեւական չէր կրնար ըլլալ: Բայց լաւագոյն օրինակ է օտարազգի արքայից՝ Սոյեմոսը: Եթէ Ներոն Եմեսիոյ իշխանին Սոյեմայ կու տար զԾոփքս, ինչպէս վերը տեսանք, այս կրնար հասկցուիլ այս միջոցին: Բայց արդ դարէ մ'ետքը Լուկիոս Վերոս Հայաստանի գահը կու տայ ուրիշ Սոյեմոսի մը* (164 Յ. Ք.) *որ ծերակուտական էր ի Հռոմ, եւ որ՝ ինչպէս անունը կը ցուցնէ, Եմեսիոյ իշխանական տնէն ըլլալու էր, թէեւ Եմեսիոյ այն իշխանութիւնը շատոնց դադրած էր: Հոս ալ «հայկական» ծագում մը պէտք էր. եւ ահա կ'խմանանք թէ*

---

[104] *Տակիտ.* ԺԶ, 23—24, *Դիոն,* Կ, 1—3, *Սուետոն,* Ներոն 13 *եւն:*

այս ի մօրէ արշակունի մըն էր, որ ի վերջոյ կրնայ ըլլալ, եւ հայրենեօք ալ «աքամենեան»: Այս վերջին պարագան ի հարկէ միայն այն ատեն կրնայ ընդունուիլ, եթէ ստուգիւ Սոյեմոսն էր այն արքայն, որ յաջորդեց Վաղարշի (140է ետքը Յ. Ք.) եւ որուն անունը չի յիշուիր, այլ միայն կ'որոշուի «Աքամենեան» (Աքամենիդէս)· յորջորջանօք: Բայց այս կէտերը մեր ծրագրէ դուրս են: Յամենայն դէպս այս ալ՝ ի միջի այլոց՝ օրինակ մըն է թէ, երբ շահը կը պահանջէր, ինչ դիւրութեամբ կը գտնուէին տեղեկութիւններ՝ «հայկական» ընելու անձ մը, որ Հայոց գահը պիտի ստանար:

Ի վերջոյ, ինչպէս տեսանք, տարբեր չէին մեր այս «յարքունի տոհմէ Հայոց» Տիգրանն ալ եւ իւր եղբօրորդին, իրականին՝ Հերովդի սերնդենէ, մայրենեօք՝ Արքեղայոսեան, շատ շատ մամի կողմանէ՝ հայ: Եթէ նաեւ Տակիտոս «օտարածին» կը կոչէր զասոնք, լիովին օտարածին էր այն Արիստոբուղոս, զոր տեսանք արքայ Փոքուն Հայոց՝ կարգուած Ներոնէ: Բնական է որ Յովսեպոս այս վերջնոյս ալ ճիւղը եւ զինքը յիշած է քանի մ'անգամ: Վերն արդէն յառաջ բերինք Յովսեպայ մէկ խօսքն, ուր յիշուած էր Փոքուն Հայոց Արիստոբուղոսը (Հր. Պատմ. Բ, ժա, 6): Նոյնը կը կրկնէ Հնախօսութեան մէջ ալ, ուր կը խօսի Հերովդի՝ Քաղկեաց արքայի (τῆς Χαλκίδος βασιλεὺς) մասին: «Հերովդէս, կ'ըսէ, եղ-

բայր Ագրիպպայ Մեծի արքայի, մեռաւ յութերորդ ամի իշխանութեան Կղաւդեայ կայսեր, (48 Յ. Ք.), թողեալ երիս որդիս, զԱրիստոբուղոս՝ որ ծնեալ էր նմա յառաջին կնոջէն (ի Մարիամնեայ), եւ ի Բերենիկեայ՝ ի դստերէ եղբօրն՝ զԲերենիկիանոս եւ զՀիւրկանոս: Իսկ զիշխանութիւն նորա ետ Կղաւդիոս կայսր յԱգրիպպա կրտսեր» (Հնախ. Հր. Ի, ե, 2): Այս Արիստոբուղոս, որդի Հերովդի, եղբօր Ագրիպպայ Մեծի, ամուսնացած էր Սողոմէի հետ, որ Հերովդի դուստրն էր ի Հերովդիադայ, եւ ունեցած է երեք որդիներ՝ Հերովդէս, Ագրիպպա եւ Արիստոբուղոս, ինչպէս նշանակած է Յովսեպոս՝ Հերովդի սերնդոց ընդարձակ ճիւղագրութեան մէջ (Հնախ. Հր. ԺԸ, ե, 4): Բնականապէս գիտէ Յովսեպոս ասոր Փոքուն Հայոց թագաւոր դրուիլը. «Յառաջին ամի իշխանութեան Ներոնի (— սկսած՝ 13 Հոկտ. 54 Յ. Ք.) մեռեալ Ազիզայ՝ արքայի Եմեսացւոյ, պայազատեաց յիշխանութեան եղբայր նորա Սոյեմոս (Σόεμος). իսկ զառաջնորդութիւն Փոքուն Հայոց (τὴν δὲ τῆς μικρᾶς Ἀρμενίας προστασίαν) ընկալաւ ի Ներոնէ Արիստոբուղոս, որդի Հերովդի արքայի Քաղկիդեայ: Եւ կայսրն շնորհեաց Ագրիպպայ զմասն Գալիլեայ» եւն (Հնախ. Հր. Ի, ը. 4): Նոյնը կը կրկնէ Հր. Պատերազմին մէջ, խօսելով Ներոնի մասին թէ «արդ զՓոքր Հայս ետ Արիստոբուղեայ որդւոյ Հերովդի ի թագաւորել». (μικρᾶς

'Αρμενίαν δίδωσι μὲν βασιλεύειν 'Αριστοβούλῳ τῷ 'Ηρώδου. Հր. Պատմ. Բ, ժդ, 2) ։

Անցողակի նշանակենք թէ Յովսեպոս ինչպէս կը յիշէ զՏիգրան Մեծ, նոյնպէս զՏրդատ–Տիրիթ, որու մասին ալ կը պատմէ այն դէպքը, զոր Խորենացի կը պատմէ Տրդատ Մեծի մասին[105] ։

Քաղկեաց փոքր թագաւորութիւնն, որուն Արիստոբուղոս արքայն՝ Եմեսացւոց Սոյեմոսի հետ կը յիշուի իբր օժանդակ Պետոսի դաւադրական արշաւանքին Կոմմագինեայ Անտիոքոսի դէմ, փոքր թագաւորութեանց մէջ ամէնէն ուշ հռոմէական նահանգ եղաւ (90 Յ. Ք.) ։ Եմեսիոյ իշխանութիւնը նոյնպէս վերցուած էր, եւ նաեւ Կոմմագինեայ թագաւորութիւնն, որ միջոց մը (17—38 Յ. Ք.) նահանգ եղած, կրկին թագաւորութիւն ստացած էր, վերջնականապէս ձուլուեցաւ 72ին Յ. Ք. ։ Քիչ մը յառաջ նահանգ եղած էին Փոքր-Հայք ալ, ինչպէս յիշեցինք ։ Աչքի կը զարնէ որ Հայոց՝ Մեծաց ու Փոքուն՝ դահերու թիկնածուաց մէջ չկայ Կոմմագինեայ տնէ անձ մը. տուն մ'որ զոնէ Փոքր–Հայոց գահուն շատ աւելի իրաւունք ունէր քան Արիստոբուղոս մը ։ Այն հետաքրքրական յիշատակարանքն, զոր կանգնել տուած էր մա–

---

105 Խորէն. Պատմ. Բ, գլ. Ձբ. էջ 225 ։

նաւանդ ի Նիմրուտ–տաղ Եփրատայ մօտ, անդրեօք իւր նախնեաց եւ արձանագրու–թեամբք, ինչպէս արձանագրութիւնքն յար–դի Գերդեր (հին՝ Արշամիա) եւ շրջակայքն, որչափ ալ այժմ թերակատար են, կը ցու–ցնեն թէ Անտիոքոս Ա, Թէոս (69)—34 Ն. Ք.), որդի Միհրդատայ Կալլինիկեայ, որ Տիգրանայ Մեծի հետ էր եւ նաեւ աներ Որոնդի Պարթեւաց, իւր ցեղը կը դնէ «ի Պարսից եւ ի Մակեդոնացւոց» (Սելեւ–կեանց), եւ թէ ինչ մօտօք կը հասկնայ: Ար–ձանագրութիւնք բաւական որոշ կը ցու–ցնեն նախնեաց մէջ մէկ կողմանէ քանի մը հատ ալ «Արուանդ»ներ, յատկապէս «Արուանդ, որդի Արտաասուրայ» որ փեսայ էր Արտաշէսի Բ Աքամենեանց, որ Քսենո–փոնի ժամանակ Արեւելեան Հայաստանի Որոնդէս սատրապն է: Եթէ մէկ կողմանէ այս տոհմը կը կապուի Որոնդներու հետ, միւս կողմանէ իւր նախնեաց մէջ որոշ կը յիշուին Ծոփաց–Փոքր–Հայոց արքայքս Սա–մէս եւ Արշամ (գոնէ երեք անձինք), որոնք ցեղական կապ ունին «Արուանդէս» սատ–րապի հետ: Տեղւոյս չէ այս մանրամասնու–թեանց միջամուխ ըլլալ: Բայց այսչափն իսկ կը ցուցնէ թէ Կոմմագինեայ տունն, որչափ ալ ի հարկէ, օտար արեան ալ ընդունեցաւ, սերտ կապ ունէր Ծոփաց հին արքայից հետ: Նոյն իսկ Անտիոքոսի Ա. քանդակը հետաքրք–քրական է. հայկական խոյրով եւ գդեստով մը, որ շատ կը յարմարի Ստրաբոնի իբրեւ

հայկական նկարագրածին. ուստի կրնանք նոյնը մերձաւորապէս օրինակ մը համարիլ նոյն ժամանակի նաեւ հայ տարազին: Այս թագաւորութեան արքայից դրամներն ուսումնասիրած է Բաբըլոն յաճախ յիշուած երկին մէջ, բնականապէս ի նկատի ունենալով պատմականն ալ[106]:

Այժմ դառնանք կրկին Փոքր–Հայոց ու Խաղտեաց վիճակին՝ իբր հռոմէական նահանգ:

Փոքր–Հայք նահանգ, Գաղատական, Պոլեմոնական եւ Կապպադովկեան Պոնտոս:

— Եթէ քիչ մ'ընդարձակ Միհրդատայ Մեծի պարտութենէ ետքն՝ հռոմէական դերիշխանութեան ներքեւ եղած մանրապետութեանց շրջանին մասին խօսեցանք, պատճառն այն է՝ որ այս շրջանն ամէնէն հետաքրքրականն էր Փոքր–Հայոց եւ Խաղտեաց համար: Իբր մէկուկէս դար շնորհուած էր Փոքր–Հայոց՝ որչափ ալ հռոմէական հսկողութեան եւ ընդհանուր վարչութեան ներքեւ, անկախ կամ գոնէ կիսանկախ կեանք մ'ունենալ՝ իբր թագաւորութիւն: Այսուհետեւ իրերը կը փոխուին: Փոքր–Հայք ալ ստիպուած էր հետեւիլ միւս աշխարհներու, որոնք հետզհետէ կորսնցուցին իրենց իշխանութիւնները, եւ ձուլուեցան հռոմէական պետութեան մէջ՝ իբր նա–

106 Babelon, Les rois de Commagène, pp. CCVIII, եւ էջ 217—220:

հանգ, լիովին ենթարկուելով եւ յամենայնի հռոմէական իրաւանց: Եւ Փոքր-Հայք, որոնք բախտ չունեցան մասնակցելու Մեծ Հայոց պատմութեան, ա՛յլ եւս որեւէ ձեւի տակ անկախութիւն մը չկրցան ունենալ: Նոյն իսկ հայութիւնը հոն անհետանալու ճամբուն մէջ էր, ա՛յնպէս հելլենացաւ ընթացս ժամանակաց՝ կենդրոններէն սկսելով՝ բովանդակ երկիրը, մանաւանդ նաեւ քրիստոնէութեան տարածմամբ, տիրող ըլլալով բնականաբար յունական եկեղեցին եւ յունարէն լեզուն աստուածային պաշտամանց մէջ: Անշուշտ հայ ժողովրդեան մաս մը, յատկապէս գիւղական բնակչութիւնը, պահած էր լեզուն: Գոնէ կան այս մասին այլեւայլ նշաններ: Բայց այնպէս աղօտ են այս մասին տեղեկութիւնք, որ մինչեւ Դ դարու վերջերը հազիւ նշմարանքներ միայն կրնանք գտնել: Քաղաքականօրէն Փոքր-Հայք՝ իբր ուրոյն աշխարհ՝ ամփոփ սահմանները՝ մնաց այնուհետեւ ալ: Յետոյ մինչեւ անգամ Հռոմայեցիք պատշաճ տեսան ստեղծել «Հայք» նահանգ մը, զայն կրկին բաժնել, կցելով անոր այլեւայլ պոնտական եւ գամրական մասեր: Այս իրերը համառօտիւ պիտի տեսնենք: Հայութեան տեսակէտով՝ Մեծ Հայոց քաղաքական մահը բերաւ Փոքր-Հայոց հայութեան նոր կենդանութիւն: Այն վայրկենէն որ Ծոփաց ու Աղձնեաց մէկ մասը («Ազգի» կոչուած) հռոմէական եղան, եւ մանաւանդ այն ատենէնէն՝ երբ Մեծ-Հայոց

ուրիշ բաժին մ՚ալ (Բարձր Հայք) անցաւ Հռոմէական պետութեան, Փոքր–Հայք միութիւն ունեցաւ այն բաժնի հայութեան հետ: Բայց նաեւ Պարսից բաժնէ անընդհատ դաղթականութիւնք աւազաց ու ժողովրդեան վերակենդանացուցին ոչ միայն բուն Փոքր–Հայքն, այլ նաեւ աւելի անդին՝ աւելի կամ նուազ հոծ հայութիւն մը կազմելով:

Հռոմէացիք հետզհետէ միայն ձուլեցին պետութեան մէջ այս մանրապետութեանց այլեւայլ մասերը, զորոնք՝ ինչպէս տեսանք՝ ըստ կամս բաժնած ու բաշխած էին այլեւայլ անդամներ: Թէեւ արդէն Պոմպէոս ստեղծած էր ընդարձակ «Պոնտական նահանգ» մը (64), այս ալ տակաւին յարմար չդատուեցաւ, եւ անոր մասեր տրուեցան այլեւայլ իշխանաց: Սակայն արդէն նոյն Պոմպէոս հիմ դրած էր այն դրութեան, որ երկիրները հասուն պիտի ընէր՝ հռոմէական նահանգ ըլլալու: Իւր հիմնած քաղաքակրթական կենդրոնները՝ այլեւայլ նորակերտ քաղաքային հիմնարկութիւնները, կենդրոն պիտի ըլլային՝ հելլենացնելու երկիրը՝ եւ վարչական կենդրոններ ըլլալու՝ իւրաքանչիւրին ենթարկեալ գաւառաց: Ասոնց մէջն են՝ թողլով ուրիշները՝ Դիոսպոլիս՝ հին Կաբիրայի տեղը, — որ միջոց մը «Սեբաստէ» կոչուելուն՝ շփոթուած է շատերէ բուն Սեբաստիոյ հետ, — յետոյ Նէոկեսարիա կոչուած (այժմ Նիքսար), որ երկար ատեն մայրաքաղաքի դեր կատարած է «Պոնտոսի»

— *Թերեւս արդէն Պոմպէոսէ հիմնարկուած* Մեգալոպոլիս, *հին Կողոպենէ գաւառի մէջ, Աւգոստոսիատեն* Սեբաստիա *կոչուած, որ ցայժմ ալ նոյն անունը կը կրէ, որ յետոյ հռոմէական «Հայոց» (Հայաստանի) մէկ բաժնին մայրաքաղաք պիտի ըլլար. — եւ մանաւանդ բուն Փոքր–Հայոց մէջ՝* Նիկո–պոլիս Պոմպէի, *մերձ արդի Բուրգ, որ Փոքր–Հայոց մայրաքաղաքն ըլլալու սահ–մանուած էր: Նշանակալից երեւոյթ մըն է որ Նիկոպոլսոյ շրջանն աւելի կանուխ առնուեցաւ պետութեան մէջ քան մնացեալ Փոքր–Հայքը: Որչափ ալ Թերեւս ապահով չըլլայ թէ Պոմպէոսէ հիմնարկուած ըլլայ, ինչպէս Պրոկոպիոս կը յիշէ (Շին. Գ. դ, տես յետոյ) նաեւ* զԿողոնիա, *արդի Շա–պին–Գարահիսար, իւր լատինական անունն իսկ կը ցուցնէ՝ հին լատինական կեդրոն մ'ըլլալը, ինչպէս էր մանաւանդ* Սատաղա *զօրանիստը: Այս երեք կեդրոններն ինքնին բաւական էին՝ երկիրը լիովին հռոմէական–յունական ազդեցութեան ենթարկելու: Այսուհանդերձ Ստրաբոնի «բարբարոսա–կան» բաժնին վերաբերող Փոքր–Հայք ամէ–նէն ուշ հասուն համարուեցան՝ պետութեան մէջ մուծուելու, ենթարկուելով Կապպա–դովկիա նորատեղծ նահանգին:*

*Մեր աշխարհները շատոնց արդէն կցուած էին պետութեան: Պափղագոնիոյ ներքնաշխարհը տրուած էր Պափղագոնիոյ իշխանաց՝ Պիւղեմենէսի եւ Ատտաղոսի,*

արեւմտեան եւ արեւելեան կէսերու բաժնուած, իսկ Գաղատիա՝ Դիոտարոսի։ Այս Թագաւորին մահուանէ ետքը (40 Ն. Ք.) Անտոնիոս թէ՛ Ատտաղոսի մասը եւ թէ՛ Գաղատեան տուաւ Կաստորի, Դիոտարոսի թոռան, մօր կողմանէ։ Վերջինոյս ալ մահուանէ ետքը (36 Ն. Ք.) Գաղատիա անցաւ Ամինտասի, իսկ մնացեալը տրուեցաւ Կաստորի որդւոյն՝ Դիոտարոսի Փիղադեղփոսի։ Իսկ ասոր մահուանէ ետքը (6—5 Ն. Ք.) այս մասն, որուն մայրաքաղաքն էր Գանգրա, հռոմէական պետութեան հետ ձուլուեցաւ[107]։

Ընդհանուր առմամբ Աղիւսի եւ Հիրիկի միջեւ եղած երկրամասն, որ նաեւ «Ծովային Կապպադովկիա» (Կապպադովկեան Պոնտոս) կը կոչուէր, գաղատական վարչութեան օրերէն ի վեր սովորական յորջորջանքն առած է՝ «Գաղատական Պոնտոս»։ Այս կցուեցաւ պետութեան հետ 3—2 Ն. Ք. եւ միացուեցաւ Գաղատիա նահանգին։

Գամիրք, ինչպէս տեսանք, արդէն Արքեղայոսի ատեն, հռոմէական խնամակալութեան ներքեւ առնուած էին. եւ Արքեղայոսի խաբկանօք ի Հռոմ դատի կոչուելէն ու հոն մեռնելէն ետքը, հռոմէական վարչութիւն ստացաւ (18 Յ. Ք.)։ Բայց այս միջոցին Գամիրք տակաւին աննշան աստիճան մ'ունէին՝ «գործակալ» մը միայն ունենալով իբր վարիչ։

---

107 Strabo, ԺԱ. 562։

Կոմանայի քրմապետական երկիրը, որուն մաս կը կազմէր Գաղիմոնիտիս (արդի Գազ-Օվա, Գաղիմոն՝ արդի Եւդոկիա)։ Դիւտեւղոսի մահուանէ ետքը (34—5 Յ. Ք.) հռոմէական եղաւ, եւ քրմապետական մեհենական կալուածքն՝ եղաւ կայսերական ստացուածք։ Այս ալ մուծուեցաւ Գաղատիոյ նահանգին մէջ։

Ուչ առնուեցաւ պետութեան մէջ Պոնտոսի այն մասն, որ Պողեմոնի տան տրուած էր, Պողեմոնիոսմ նուահանգատով, եւ որ «Պողեմոնական Պոնտոս» յորջորջանքն առաւ։ Ներոնի ժամանակ վերջ տրուեցաւ այս թագաւորութեան (63—64 Յ. Ք.) եւ ասոր հետ միաժամանակ նաեւ Նիկոպոլիս Փոքր-Հայոց, որուն՝ ինչպէս Նէոկեսարիոյ՝ իբր հռոմէական ազատ քաղաքաց դրամները ու թուականութիւնը կը սկսին 64 տարւոյ աշնան։ Քանի որ նոյն ժամանակէ կը սկսի նաեւ Կերասոնի եւ Տրապիզոնի դրամոց թուականութիւնը, այս մասն ալ նոյն ժամանակ պետութեան կցուած էր, ուստի նաեւ այն անյատուկ մտօք կոչուած «Կապադովկեան Պոնտոսն», որպէս միջոց մը կը յորջորջուէր Կերասոնէ մինչեւ Ապսարոս ծովեզերեայ բաժինը, միով բանիւ Պոնտական ազգերն ու Խաղտիք, որոնք ինչպէս տեսանք Փոքր-Հայոց ձեռքն էին։ Այս էր այն «ծովեզերեայ քանի մը գաւառները», զորոնք ընդունած էր Արքեղայոս «Փոքր-Հայոց հետ մէկտեղ» (Դիոն, ԺԹ, 9) եւ որոնք յետոյ՝

Պիւթոդորիսի իշխանութեան անցան, Ստրաբոնի յիշած մանաւանդ «բարբարոսական» բաժինը: Նաեւ Պողեմոնականն մուծուեցաւ նոյնպէս Գաղատիոյ նահանգին իրաւասութեան ներքեւ: Նոյնը խնդրական կը համարին ոմանք «Կապպադովկեան Պոնտոսի» մասին, եթէ այն յորջորջանքը («Կապպադովկեան») 63 Յ. Ք. տարիէն է». որովհետեւ այս անունը կապ կը ցուցնէ Գամրաց հետ, եւ ըստ ինքեան յարմար էր միայն այն շրջանին, երբ այս մասն «Կապպադովկիա» նահանգին ներքեւն էր: Սակայն կարծենք թէ այս յորջորջանաց բուն ծագումն ուրիշ կերպով մը պէտք է մեկնելու փորձել: Որովհետեւ ինչպէս վերն յառաջ բերուած վկայութենէն տեսանք՝ ինչպէս քիչ մ'ետքն ալ պիտի յիշենք, արդէն Ստրաբոն գիտէ յամենայն դէպս այս յորջորջանքը: Յորջորջանքն սկսած ըլլալու է՝ երբ Արքեղայոս Գամրաց ընդունեցաւ Փոքր-Հայքն ու Խաղտիք (= «ծովեզերեայ քանի մը գաւառները»), որմէ այն «Գամրական Պոնտոս»ը:

Զիարդ եւ իցէ՝ Հռոմայեցիք կազմած էին մեծ նահանգ մը՝ «Գաղատիա» անուամբ, որուն մէջ մտած էին Պոնտոսի այն մասերը: Գամիրք ինքնուրոյն վարչութիւն ունէր, բայց պարզ գործակալական, եւ անոր համար չունէր հոն մշտակայ բանակող բանակ մը: Երկրին ապահովութեան հոգ կը տանէր, ինչպէս տեսանք Կորբուղոնի շրջանին իսկ, Ասորիք նահանգի կուսակալն իւր բա–

նակաւ: Տակիտոս՝ ինչպէս յիշեցինք, կը դիտէր անգամ թէ «լաւագո՞յն թերեւս էր ձմերել ի ծայր Կապպադովկիոյ, ի հիւղս հաւրեւանցի կանգնեալս, քան յոստանին» ի (Տիգրանակերտ)[108]: Այն պատերազմի շըրջանին, որ Պոնտոսի այս բաժնին կցմանէ յառաջ էր, Կապպադովկիա եւ նաեւ Պոնտոս մեծ դեր կը խաղան, նաեւ Մելիտենէ՝ թէեւ չէր եղած տակաւին նշանաւոր զօրանիստը: Երբ Կեսեննիոս Պետոս նոր զօրավարն ալ եկաւ, «այսպէս բաժանեցան գունդք. զի չորրորդն եւ երկոտասաներորդ լեգէոնք ընդ հինգերորդումն՝ որ այն ինչ կոչեցեալն էր ի Միւսիոյ, եւ ընդ օժանդակ գունդս Պոնտոսի եւ Գաղատիոյ եւ Կապպադովկիոյ՝ իցեն ընդ ձեռամբ Պետոսի», միւսները (Գ, Զ եւ Ժ լեգէոնք. եւ «նախնի զօրք Ասորւոց») Կորբուղոնի հրամանին ներքեւ կը մնային: Պետոս «անգէտ մերձակայ վտանգին՝ զհինգերորդ լեգէոնն ունէր հեռի ի Պոնտոս». անոր համար Պետոսի պարտութենէ ետքը՝ Կորբուղոն՝ վնասուած Դ եւ ԺԲ լեգէոնները «արձակեաց յԱսորիս». անոնց տեղ ուրիշներ (Զ եւ Գ լեգ.) բերելով եւ «յաւել ի նոսա եւ զհինգերորդն, որ կայր ի Պոնտոս զերծ ի կոտորածէն եւ դարձեալ «որչափ ինչ հեծեալ եւ օժանդակ զօրք էին արքայից (տես վերը՝) համախմբեալ մերձ ի Մելիտենէ».

---

[108] Տակիտ. ԺԵ. զ:

ուսափ պատրաստեալ էր անցանել յայնկոյս ընդ Եփրատ» եւն։ Երբ Պետոս պարտութիւն կրեց Արշամուշատի մօտ, Կորբուղոն (— որ դիտմամբ դանդաղած էր)։ «Թողեալ զկէսս ի զօրացն յԱսորիս ի պահ ամրոցացն, խաղաց այլովքն ընդ Կարնոյ ճանապարհ, ընդ երկիր՝ ուր դիւրագիւտ էին պարէնք, ի սահմանն Կոմագենեայ եւ ի Կապադովկիա, եւ անդի ի Հայս»։ Այս ամէնը՝ 62ին Յ. Ք.։ Յիշուեցաւ արդէն թէ Կորբուղոնի բանակի պարէնը կուգար «յԵւքսինեան Պոնտոսէ եւ ի Տրապիզոնէ»։

Այս իրերն անշուշտ քիչ չեն նպաստած այն որոշման, որով Ներոն վճռեց՝ ճշդիւ այս միջոցին քիչ մ'ետքը նահանգ ընելու Պոնտոսի մնացեալ մասերը։ Ջանոնք Գաղատիոյ ենթարկելով՝ անկախ Ասորիքի կուսակալէ՝ նոր կազմակերպութիւն մը ստեղծած կ'ըլլար, որ սակայն տեւական չէր կրնար ըլլալ, առանց Գամրաց ալ վիճակը բարեփոխելու եւ վերջապէս նաեւ Փոքր-Հայոցն։ Անոր համար իրերը լիովին փոխուեցան երբ Վեսպասիանոս նաեւ Փոքր-Հայոց թագաւորութիւնը վերցուց եւ զայն հռոմէական պետութեան մէջ ձուլեց (72—74 Յ. Ք.) Փոքր-Հայք իրենց դրիւք իսկ յարմար էին կցուելու Գամրաց հետ։ Եփրատայ սահմանագիծը կարեւորութիւնն ալ կը ստիպէր՝ ինչպէս Բարձր-Հայոց սահմանին վրայ հսկող Սատաղա, նոյնպէս Եփրատայ կարեւոր անցքին վրայ Մելիտենէ առաջնակարգ

զօրանիստ ըլլայ։ Նաեւ Պոնտոսի միւս մասերը յարմարօրէն պիտի կապուէին Գամրայ հետ։ Անոր համար դիւրաւ կը հասկըցուի թէ Փոքր–Հայոց կցուած, որ հռոմէական պետութեան սահմանաց «երկար գարգացման գագաթնակէտն եղաւ», ունեցաւ կարեւոր հետեւութիւնը։ «Հին Գաղատիա նահանգը գրեթէ ամբողջութեամբ ձուլուելով՝ համախառնուեցաւ Կապպադովկիա ընդարձակ կուսակալութեան մէջ, որ սով իւր առաջին աննշանակութենէն այն ատեն բարձրացաւ հիւպատոսական նահանգի աստիճանին, մշտակայ բանակով մը՝ որուն կայաններն էին Սատաղա եւ Մելիտենէ»։ Յետոյ Տրայիանոս կայսրը (98—117) վերակազմեց Կապպադովկիա նահանգը։ Մինչ Պոնտոս (նաեւ Գաղատականն) եւ Փոքր Հայք Կապպադովկիոյ հետ միացան, Գաղատիա ուրոյն նահանգին հետ էր Պափղագոնիա։ Այս Գամրայ նահանգն էր որ այնուհետեւ գլխաւոր դեր ունէր կատարելիք Հայոց գործերուն առթիւ՝ երկար ժամանակ։ Իւր մայրաքաղաքին Կեսարիոյ կարեւորութիւնն պիտի աղդէր բնականապէս նաեւ եկեղեցական կազմակերպութեան, եւ Կեսարիոյ աթոռին կարեւոր դիրքը — նաեւ Հայոց եկեղեցւոյ կազմակերպութեան սկզբնաւորութեանց ատեն ի ձեռն Գ. Լուսաւորչի եւ յաջորդաց — դիւրաւ կը հասկցուի։

Նախ քան այս ապագայ շրջանի իրերը նկատելը՝ հոս քանի մը դիտողութիւններ

պէտք են։ Նախ՝ որչափ ալ այս կցումներն ընդհանրապէս առանց դժուարութեան եղած են, բոլորովին առանց շփման չէ եղած Պոնտոսի եւ Բոսպորի նահանգ ըլլալը։ Յարմար առթիւ ապստամբութիւն մը ծագեցաւ, որ սակայն զսպուեցաւ։ Տակիտոս իւր «Պատմութեան» մէջ նկարագրած է այս ապստամբութիւնը, որ ծագած է օգտուելով այն ներքին երկպառակութենէ, որ ծագեցաւ Ներոնի մահուանէ ետքը, երբ գահուն թեկնածու եղան Գալբա, Օթոն, Վիտեղլիոս եւ վերջապէս Վեսպասիանոս (68—69 Յ. Ք.)։ Այս քաղաքային պատերազմաց առթիւ եղած էին այլեւայլ ազգեր յԵւրոպա. «Նաեւ ուրիշ ազգեր, կ՚ըսէ Տակիտոս[109], հանդիստ չկեցան։ Ի Պոնտոս յանկարծակի զէնք շարժեց բարբարոս գերի մը, որ երբեմն արքունի տորմիղին հրամանատարն էր։ Այս էր Անիկտոս, Պողեմոնի ձերբազատը, երբեմն մեծազօր, եւ յորմէ հետէ թագաւորութիւնը նահանգի ձեւի փոխուեցաւ՝ այս փոփոխութեան անհանդուրժող։ Արդ Վիտեղլիոսի անուամբ Պոնտոսի դրացի ազգերը յինքն գրաւելով եւ կարօտագոյններն աւարի յուսով հրապուրելով, իբր առաջնորդ ոչ արհամարհելի գնդի մը, յանկարծակի յարձակեցաւ Տրապիզոնի վրայ, որ հին հռչակաւոր քաղաք մըն է, ի Յունաց շինուած Պոնտական

---

109 Տակիտ. Գ. 47։

ափանց վերջին ծայրը: *Այն տեղ եղած վաշտը* (cohors) *կոտորուեցաւ, որ երբեմն* արքունի օժանդակ գունդն էր, *յետոյ* հռոմէական քաղաքացւոց իրաւունքն *ստացած, պահած էր* նշանքն ու զէնքերը մեր ոճով, *Յունաց* ալ հեզգութիւնն ու սանձարձակութիւնը: Տորմիղն ալ հրձիգ ըրաւ, *խրոխտ ազատ ծովու վրայ, որովհետեւ Մուկիանոս նաւաց ընտրելագոյնները եւ ամբողջ բանակը Բիւզանդիոն տարած էր: Նոյն իսկ ժպրհութեամբ արշաւանք կ՚ընէին, աճապարանօք շինած նաւերով, զորոնք* «կամուրա» *կը կոչէին նեղ կողերով, լայն փորով, առանց պղնձի (մետաղի) կամ երկաթի իրարու ագուցուած. եւ երբ ծովն յուզի, ալեաց բարձրանալուն համեմատ՝ նաւուն վերնակողմը տախտակներ կ՚աւելցնեն, մինչեւ որ տանիքի ձեւով իրարու կը կցին: Այսպէս կը ծփան ալեաց մէջ, հաւասար եւ կրկին ցռկով ու շարժական ղեկով, այնպէս որ անտարբեր եւ անվտանգ է այս կողմէն կամ այն կողմէն ցամաք մօտենալ»:*

— *Ապստամբութեան վերջը կը պատմէ Տակիտոս յաջորդ հատուածով: «Այս իրերը Վեսպասիանու մտադրութիւնը շարժեցին. այնպէս որ ուղարկեց լեգէոնաց դրօշակները* (vexillarios), *եւ առաջնորդ՝ (այն զօրաց)՝ զՎիրդիոս Գեմինոս, փորձուած զօրականը: Ասիկայ յարձակեցաւ անկարգ եւ աւարի ցռկանաւեր շինելով՝ հասաւ Անիկտոսի եւ ստիպեց նաւերը մտնել, եւ աճապարանօք*

ցուկրանաւեր չինելով՝ հաստատ Անիկտոսի վրայ Կոհիրոս գետի բերանը, ուր ապահովութիւն գտած էր Սեդոժեցւոց Թագաւորին պաշտպանութեան ներքեւ, զոր դրամով եւ ընծայիւք իւր դաշնակցութեան դրդած էր: Եւ Թագաւորը նախ սպառնալեօք ու զինուք պաշտպանեց օգնութիւն պաղատողին (Անիկտոսի)· բայց երբ իւր առջեւ դրուեցաւ մատնութեան վարձք կամ պատերազմ, իւր հաւատարմութիւնը, ինչպէս բարբարոսաց (սովորութիւն) է, տկարացաւ· դաշնագիր եղաւ Անիկտոսի մահուան, եւ փախստականները յանձնեց, եւ այսպէս վերջ գտաւ ստրկական պատերազմը· Վեսպասիանոս ուրախ այս յաղթութեան վրայ, քանի որ ամենայն ինչ իւր բաղձանքէն աւելի յաջողեցաւ, յԵգիպտոս ընդունեցաւ Կրեմոնայի մօտ (մղուած) ճակատուն լուրը[110] եւն:

Հետաքրքրական է Տրապիզոնի վաշտի մասին տրուած նկարագրականը: Այն «Հելլէնք» ի հարկէ դոյզն մասամբ բնիկ հելլէն ըլլալու էին, այլ՝ մեծաւ մասամբ հելլէնացած բնիկները՝ Պոնտական ազգերու, զորոնք համառօտութեան համար Խաղտիք անուամբ նշանակեցինք: Թէ ասոնք, որ Պոնտոսի արքայից ժամանակ իսկ սիրով կը զինուորէին, երբ մանաւանդ աւարի յոյս կար, նաեւ հռո-

110 Տակիտոս, Պատմ., Գիրք Գ. 48:

*մէկական գնդերու մէջ կը ծառայէին՝ ինքնին կը հասկցուի: «Անկարգ», աւարասիրութեան համար թափառող՝ այսպիսի ցեղեր, որոնք կէս-վայրենի կը նկարագրուին, անշուշտ որեւէ առիթ չէին փախցներ՝ աւարառութեամբ զբաղելու, եւ մէտ էին միշտ ապստամբելու: Որչափ ալ չատ ծանրակշռութիւն տալու չէ «բարբարոս» բառին, քանի որ այն ոչ-հռոմէականի եւ ոչ-յոյն իմաստով կը գործածուէր, այսուհանդերձ այս ազգերուն գոնէ մէկ մասին քաղաքակրթութեան աստիճանն աւելի բարձր ըլլալու չէր, երբ երկիրներս ձուլուեցան պետութեան մէջ, քան Ստրաբոնի օրով, որ այնպէս պայծառ նկարագրած է զանոնք: Գրեթէ այնպէս՝ ինչպէս Ստրաբոնի նկարագրութիւնը, (զոր քիչ մ'ետքը կը տեսնենք), կը նոյնանայ յէականս իբր չորս դար յառաջ Քսենոփոնի նկարագրութեան հետ նոյնը՝ նոյնպէս յէականս հինգ դար ետքը՝ Պրոկոպիոսի նկարագրութիւնը: Ծանաց եւ Լազերու մասին, որ Պարխալի արեւելեան շարունակութեան մէջ կը բնակէին:*

*Հռոմէացիք՝ այսպիսի ընդարձակ նահանգներ կազմելով՝ բնականապէս չեն վերցուցած աշխարհաց բաժանմունքն եւ գաւառացն, որչափ ալ նոր կարգադրութիւններ եղած են բնականապէս թէ՛ այս միջոցին եւ թէ՛ այնուհետեւ՝ վարչական յարմարութեանց եւ պիտոյից համեմատ: Նաեւ այլեւայլ արձանագրութիւններ հետաքրքրական*

տեղեկութիւն կու տան թէ՛ քաղաքաշխական, եւ, թէ՛ գաւառական ու նահանգական ներքին կազմակերպութեանց մասին: Այսպէս կարեւոր արձանագրութիւնք են ի Սեբաստոպոլիս (արդի Սուլու–Սէրայ), որ յետոյ հռոմէական «Հայոց» մէջ ալ մուծուած է, ինչպէս պիտի տեսնենք, մէկ արձանագրութիւնը: Այս քաղաքը (Սեբաստոպոլիս – Հերակղէոպոլիս), վերահիմնարկութիւն մըն էր հնագոյն Կարանա գիւղին», երբեմն մաս՝ Զելայի քրմապետութեան, որ հռոմէական տէրութեան մէջ մուծուելէն ետքը (3—2 Ն. Ք.) խառնուած էր Գաղատական Պոնտոսի, յետոյ «անոր հետ» մուծուած Կապպադովկիա նահանգին մէջ (իբր 106 Ց. Ք.): Ասոր կարեւորութիւնն էր այն՝ որ «կ'իյնար այն մեծ պողոտային վրայ, որ Գաղատիոյ Տաւիումէ գալով՝ դէպ ի Սեբաստիա ու Հայաստան կ'երթար», եւ անոր համար քաղաքս զարգացած է նսեմացնելով հին քրմական Զելան: Քանի որ նաեւ այս միջոցին՝ Տրայիանու օրով կը սկսի քաղաքիս դրամահատութիւնը, ծօն մը զՏրայիանոս կը կոչէ «փրկիչ եւ բարերար ժողովրդեան» եւ ուրիշ մը կ'ըսէ թէ «Սեբաստոպոլեայ Պոնտոսի ծերակոյտն ու ժողովուրդն» որոշած էր յԱթէնս դեսպանութիւն ուղարկել եւ Ողիմպէոնի մօտ յիշատակարան մը նուիրել նոյն կայսեր, «կ'երեւայ թէ Տրայիանոս... ուզած էր Սեբաստոպոլիսը հռոմէացման կենդրոն մ'ըլլել տակա-

ւին կէս-բարբարոս երկրի մը մէջ»․ Քաղաքը զարդարուած է նորանոր շէնքերով, որոնց մէջ՝ ապարէզ մը որսախաղուց եւ սուսերամարտութեանց, անդաստակ մը՝ կրպակներով, կրթարան մը, մեհեաններ եւ արձաններ[111]: Բացի յունալատին եւ նաեւ շատ լատիներէն արձանագրութիւններէ՝ կարեւոր է յունական արձանագրութիւն մը (Թիւ 290), որուն բովանդակութեան մասին աւելորդ չէ յառաջ բերել Անդերսընի տեղեկութիւնքն ու դիտողութիւնները: «Թ․ 290 նշմար մը կուտայ քաղաքիս ներքին կազմակերպութեան մասին, որ ճշդիւ համեմատ էր յունական-հռոմէական սովորական տիպարին: Հրապարակական պաշտօնէութեանց մէջ կը յիշուին՝ իշխան (ἄρχων, քաղաքապետ), հանդիսապետ (ϑιασάρχης) եւ վաճառապետ (ἀγορανόμος): Յատկապէս կարեւոր են կայսերական պաշտաման մասին եղած տեղեկութիւնք: Սեբաստոպոլիս քաղաքին մէջ գոյութիւն ունէր քաղաքաբաշխական պաշտամունք մը կայսերաց, որուն քրմապետութիւնը ցկեանս ունէր Մ․ Անտոնիոս Ռուփոս: Իր այս իշխանութեամբ ներկայացնել տուած էր շքեղ սուսերամարտութիւններ (μονομαχίαι մենամարտք) եւ գազանամարտի տեսարաններ (κυνηγέσια գազանամարտք): Ասիկայ կ'ապացուցանէ թէ սուսերա-

---

[111] Տաշեան, Պոնտական Ուսումնասիրութիւնք, Վիեննա 1919, Ազգ․ Մատ․ ՀԹ․ էջ 218—220: Հմմտ․ անդ էջ 53—55:

մարտերու (manera) եւ գազանամարտերու (venationes) ներկայացման իրաւունքը տրուած չէր գաւառական քրմապետին։ Ամենայն հաւանականութեամբ քաղաքարաշխական ֆրմապետին (ἀρχιερεύς) «քահանայապետ») պարտաւորութեանց մին էր․ միայն թէ Ռուփինոս նոյն ներկայացումները տուած էր մեծ առատաձեռնութեամբ»։

«Բայց ի այս քաղաքարաշխական քրմապետութենէ՝ Ռուփինոս ունէր նաեւ Պոնտապետի (Ποντάρχης) կամ Պոնտոսի երիցապետութեան կամ ֆրմապետութեան պաշտօնը»՝ եւ այն՝ «ի Նէոկեսարիա՝ ի մայրաքաղաքին Պոնտոսի»։ Հոս «Պոնտոս» ըսելով կը հասկցուի «Միջերկրեայ Պոնտոս» (Pontus Mediterraneus), այսինքն՝ Գաղատական Պոնտոս (Pontus Galaticus) եւ Պողեմոնական Պոնտոս (Pontus Polemoniacus), որոնք այս ժամանակ Կապպադովկիոյ նահանգին մաս կը կազմէին։ Այս գաւառը Աշխարհաժողով (τὸ Κοινόν) մ՚ունէր, որ կը բաղկանար Նէոկեսարիոյ, Զելայի, Սեբաստիոյ, Ամասիոյ, Սեբաստոպոլեայ եւ Կոմանայ քաղաքներուն ներկայացուցիչներէ։ Գումարումները տեղի կ՚ունենային (ինչպէս այն արձանագրութիւնը կը ցուցնէ) եւ խաղերը կը տրուէին (ինչպէս դրամները կ՚ապացուցանեն) Նէոկեսարիա մայրաքաղաքին մէջ։

«Այսպէս նաեւ Փոքր–Հայք (Armenia minor), որ նոյնպէս Կապպադովկիա նահանգին մաս եղած էր, ունէր իւր սեպհական

Աշխարհաժողովը (τὸ Κοινόν) եւ Հայապետը (Ἀρμενιάρχης, արձ. Թ. 358)»:

«Պողեմոնական Պոնտոսի կցումէն յառաջ՝ որ տեղի ունեցաւ 63ին Յ. Ք., հաւանօրէն Գաղատական Պոնտոս ալ ունեցած է իւր սեպհական աշխարհաժողովը, որ յԱմասիա կը գումարուէր որով նոյն քաղաքը միշտ կը պահանջէր իւր իրաւունքն իբր «մայրաքաղաք» (μητρόπολις), տիտղոսը կրելու, ճիշդ ինչպէս որ Պափղագոնացիք աշխարհաժողով մ'ունէին՝ որ Գանգրա կը գումարուէր, եւ տարբեր էր ցեղոյին «Ժողովէն Գաղատացւոց կամ Գաղատեայ» (Κοινὸν τῶν Γαλατῶν καὶ Γαλατίας, հմմտ. արձ. Թ. 61)»:

Մեր նպատակին համար լիովին կը բաւէ այսչափն ալ, քանի որ հռոմէական վարչութեան մասին, որ արդէն այնչափ քննուած է, խօսիլ մեր ծրագրէն դուրս է: Նոյնպէս աւելորդ կը համարինք մանրամասնութեանց մէջ մտնել այն մեծ պողոտաներու մասին, որոնք սկսուած ըլլալու են արդէն Վեսպասիանոսի օրով, զարգացան ու աւարտեցան Փղաւեանց շրջանին, եւ այնուհետեւ ալ անընդհատ նորոգուած են մինչեւ Կոստանդիանոս, ինչպէս մղոնաքարերը կը ցուցնեն: Թէ ուղիներու եւ թէ մղոնաքարերու քննութիւնը, որուն այնչափ փոյթ տարած են գիտնականք, կարեւոր են այլեւայլ կողմանէ: Յատկապէս մղոնաքարերը, կանգնուած պողոտաներու երկայնքը, իրենց հեռաւորու-

թեան չափերով, բայց այլ տեղեկութիւն-
ներէ, կը նպաստեն լուսաւորելու եւ ճշգըր-
տելու այլեւայլ ուղեգրութեանց եւ նաեւ
հին քարտէսներու տեղեկութիւնքն, որոնց
նշանակած անուանքն ու հեռաւորութեան
չափերը յաճախ սխալագիր են, եւ այսպէս
որոշելու նաեւ այն գլխաւոր կայանքն, որոնց
շատերն աւերակ ու անհետ եղած են, ուրիշ-
ները՝ յընթացս դարուց լիովին փոխուած
անուններով, որով հին անուանց եւ տեղեաց
ճշգրտումը բաւական դժուարութիւններ
ունի եւ ոչ ալ միշտ կարելի: Մանաւանդ
այնպիսի սակաւ քննուած աշխարհ մը ինչ-
պիսի էր Փոքր-Հայք, տակաւին շատ մութ
ու խնդրական կէտեր ունի. եւ մենք չենք
կրնար ճշգրտիւ զետեղել բազմաթիւ անուն-
ներ՝ զորոնք կու տան նաեւ մատենագիրք,
օրինակի համար Պտղոմէոս, բայց նաեւ ու-
րիշներ: Փոքր-Հայք քանի որ գլխաւոր
զօրանիստ մ'ունէր՝ զՍատաղա, բնականա-
պէս կապուած էր մեծ ռազմուղւոյն ցանցին
հետ: Իւր ուղին դէպ ի Տրապիզոն՝ սահ-
մանին մօտ եւ դժուարագնաց լեռները՝ յա-
մենայն դէպս այն կարեւորութիւնը, զոր
ունէին այն գծերը՝ որ կը կապէին Նէօկե-
սարիոյ եւ դարձեալ Սեբաստիոյ հետ: Վեր-
ջինս առաջնակարգ դիրք մ'առած է արդէն՝
այս շրջանէն, զոր յետոյ պահած է Բիւզան-
դեանց ամբողջ շրջանին ալ՝ ինչպէս ի վերջոյ
նաեւ ցայսօր: Հռոմայեցւոց ռազմուղւոյն
համար գլխաւոր կէտն՝ Սեւ ծովու վրայ՝

իբր նաւահանգիստ եղած է Ամիսոս (Սամսոն), ուր կը փոխադրուէին՝ այլեւայլ արշաւանաց պատրաստութեան համար լեգէոնները: Գլխաւոր գիծը կ՚ընթանար այնուհետեւ Ամասիոյ, Պոնտական Կոմանայի վրայէ դէպ ի Սեբաստիա, ասկէ իջնելու համար Մելիտենէ՝ առաջնակարգ զօրանիստը: Փոքր-Ասիոյ խորքէն՝ Գաղատիոյ վրայէն եկած ուղին ալ Սեբաստոպոլսոյ գծով կը միանար ի Սեբաստիա: Թէ նաեւ այն ուղին որ դէպ ի Եկեղեաց ու Մեծ Հայս կը տանէր, Սեբաստիայէ կ՚երկճղէր, խնդրական չէ: Անոր համար ալ մեր այս ուղին, որ ի վերջոյ նոյն է արդի ուղւոյն հետ դէպ ի Երզնկայ ու Կարին, յիշուած կը գտնենք նաեւ մեր մատենագրութեան մէջ, երբ խօսք կ՚ըլլայ ուղեւորութեան դէպ ի Կեսարիա Գամրաց՝ օրինակի համար Գրիգոր Լուսաւորչի եւ յաջորդաց մասին: Որչափ ալ մեր մատենագիրք հեռի են կայաններ յիշելէ՝ գոնէ Սեբաստիա չէ մոռցուած: Հռոմէական ուղին իւր մղոնաքարերով ի հարկէ մինչեւ սահմանը կը հասնէր: Անդին Մեծ Հայոց մէջ չէին պակսեր ի հարկէ արքունի պողոտայք, եւ որոնց այլեւայլ նշմարներ կան այսօր ալ. բայց այնպէս անխնամ է այս եւ նման իրաց մասին Հայաստանի հետազօտութիւնը, որ ամենայն ինչ մթութեան մէջ կը մնայ ցայսօր: Յընթացս մեր ուսումնասիրութեանց առիթ պիտի ըլլայ քանի մ՚ուղւոց մասին խօսելու:

Պոնտոս եւ Փոքր-Հայք՝ Ստրաբոնի օրով: — *Ստրաբոնի աշխարհագրութիւնն որ իբր տեղացի ալ՝ շատ պայծառ նկարագրած է այս աշխարհները, ի հարկէ աւելի հնագոյն վիճակ մը կը ցուցնէ քան ինչ որ ստեղծուեցաւ այն աշխարհաց հետզհետէ նահանգ մ'ըլլալովը: Սակայն իւր տեղեկութիւնները հիմ նկատելու ենք՝ համեմատելու համար յաջորդ դարերու փոփոխութիւնները:*

*Մեր միտքը չէ լիովին յառաջ բերել Ստրաբոնի տեղեկութիւնքն ամենայն ընդարձակութեամբ: Բայց սատի բազմաթիւ մասեր արդէն յիշուեցան յընթացս մեր գրութեան: Յաջորդքն ուրեմն միայն լրացումն են ասոնց, քաղելով գլխաւոր կէտերը· այն կարգաւ, որով ստորագրած է Ստրաբոն:*

*ա)* Կողքիս: *Կրնանք թողուլ «Ասիոյ» մէջ «Մէօտիս Բոսպորը» եւ ի վերջոյ կըրնայինք թողուլ նաեւ զԿողքիս: Բայց քանի որ այս՝ Պողեմոնի եւ Պիւթոդորի ատեն կապ ունէր Փոքր-Հայոց հետ ալ, նշանակենք թէ Ստրաբոն՝ հեռաւորութեան չափերով ալ՝ կը յիշէ զ«Սինդիկոս նաւահանգիստ ու քաղաք», «զԲատա (*Βάτα*) գիւղ եւ նաւահանգիստ», «Կերկետաց ծովափն», զԱքէացիս եւ զՀենիոքս, «ապա Պիտիւունտա մեծ» եւ Դիոսկուրիադէս: Միհրդատայ իրերու մասին գրողները, կ'ըսէ, որոնք աւելի մտադրութեան արժանի են, «նախ զԱքէացիս կ'ըսեն, յետոյ զԶիւգացիս, ապա զՀենիոքս, ապա զԿերկետս, եւ* զՄոսքացիս եւ զԿողքի-

սացիս (*Μόσχους καὶ Κόλχους*) եւ ասոնց վերեւը՝ զՈջլակերս (*Φθειροφάγους*) եւ զՍուանս (ուղղել *Σοάνας*)[111a] եւ այլ մանր ազգեր Կովկասի չուրջը»: Սեւ ծովու ափանց համար կ՚ըսէ թէ նախ դէպ ի արեւելք կ՚ուղղուի (հիւսիսային ափունքն), ապա դէպի հարաւ, իսկ ի Բատացւոց տակաւ առնու դարձ, յետոյ հանդիպակաց կ՚ըլլայ արեւմտից եւ կ՚աւարտի Պիտիւունտայի եւ Դիոսկուրիադայի քով: «Դիոսկուրիադայէ ետքը մնացեալը Կողքիսի ծովափն է, եւ անոր յարակից՝ Տրապիզոնի»: Կովկաս լերան մասին, որ Սեւ ծովէ, Կասպից կը տարածուի, եւ որ «կը բաժնէ ի հարաւ զԱղուանս եւ զՎիրս»՝ (հիւսիսայինէն), կը յաւելու. «Անոր առջեւ ձգուած են իրր բազուկներ դէպ ի հարաւակողմն, որոնց ոմանք կը պարփակեն Վրաստանի կէսը, եւ կը յարակցին Հայոց լերանց (*τοῖς Ἀρμενίων ὄρεσι*). եւ Մոսքիականն կոչուած լերանց (*τοῖς Μοσχοῖς*), դարձեալ Սկոդիսեայ (*τῷ Σκοιδίσῃ* Փոքր Հայոց լերանց) եւ Պարիւադրի (Պարխարի՝ առ Նէոկեսարիա եւն): Այս ամէնքը մասն են Տաւրոսի, որ կը կազմէ Հայաստանի հարաւային կողը, կերպով մ՚անկէ աջատուած դէպ ի հիւսիս, եւ կը ձգուի մինչեւ Կովկաս եւ Եւքսինեան ծովափն, որ Թեմիսկիւրիայէ կը տարածուի մինչեւ Կողքիս» եւն[112]: «Կող–

---

111a Ստրաբոն ԺԱ. 697:

112 Ստրաբոն ԺԱ. 698:

քիչ մը մեծագոյն մասը ծովու վրայ է. ասոր մէջէն կը հոսի Փասիս (ὁ Φάσις) մեծ գետը, որ Հայաստանէ կը բղխի (ἐξ Ἀρμενίας τὰς ἄρχας ἔχων), եւ կ'ընդունի իւր մէջ Գղաւկոս (τόν τε Γλαῦκον) եւ Հիպպոն (τὸν Ἵππον) գետերը՝ որ մերձակայ լեռներէ կ'իջնան: Նաւարկելի է (Փասիս) մինչեւ Սարապանայ բերդն, որ յարաբնակ քաղաք մ'ալ կրցած է ունենալ» եւն: Խնդիր չկայ թէ այս տեղ խառնուած են, ինչպէս մինչեւ անգամ տակաւին Բիւզանդեանց ատեն ալ ոմանց քով, բուն Փասիս (արդի Ռիոն) եւ Ակամփսիս (Ճորոխ): Այս վերջինն իրօք Հայաստանէ կը բղխէ. Թէ խօսքը բուն Փասիսի մասին է՝ յայտնի է նաեւ Սարապան բերդի անունէն, այսինքն՝ Զարապան, որուն շինութիւնը վրական Տարեգիրք Փառնաւազայ կ'ընծայեն[113]: Յայտնի է դարձեալ շարունակութենէն. «Փասիսի վրայ կանգնած է համանուն քաղաքը, Կողքիացւոց վաճառատեղին («էմպորիոն») պատուած մէկ կողմանէ գետով, միւս կողմանէ՝ լճով, եւ երրորդ կողմանէ՝ ծովէն» եւն: Այս, ինչպէս գիտնականք կ'ընդունին եւ նկարագրութիւնն ալ կը յարմարի, հին Փոթին է, զոր մեր մատենագիրք «Փոյթ» ձեւով գրած են[114]: Ասկէ մինչեւ Ամիսոս եւ Սինոպ նաւարկութիւնը, կ'ըսէ, երեք կամ երկու օր կը տեւէ,

---

113 Տարեգիրք Ա. 41:

114 Ղեւոնդ, Պատմութիւն Հայոց, Պետերբուրգ 1887, էջ 35:

են: «Ցիշեալ գետերու վերեւ կը գտնուի, Մոսքիկէի մէջ (ἐν τῇ Μοσχικῇ) Լեւկոթեայ մեհեանը, շինուած Փռիքսէ, եւ կամ անոր պատգամարանը, ուր խոյ չի զոհուիր. այս երբեմն փարթամ՝ կողոպտուեցաւ Փառնակէ մեր օրերը եւ քիչ մ'ետքը Միհրդատէ Պերգամացւոյ»: Յետոյ կու գայ այն հատածը, զոր վերը յառաջ բերինք, թէ երբ Միհրդատ Մեծ տիրեց, նշանաւոր անձեր ուղարկեց իբր կառավարիչ, որոնց մէջ զՄովափեռնէս՝ Ստրաբոնի նախնիքներէն. թէ «ի վերջոյ զԿողքիս ստացաւ Պողեմոն, եւ անոր մահուանէ ետքը՝ կ'իշխէ Պիւթոդորիս, «թագաւորելով թէ՛ Կողքեաց, թէ՛ Տրապիզոնի, թէ՛ Փառնակեայ եւ վերեւը բնակող բարբարոսաց»: Կողքիսի մասին խօսքը կ'աւարտի այն տեղեկութեամբ թէ այն Մոսքիկէ, որուն մէջ էր մեհեանը, երեքմասնեայ է, որուն մէկ մասն ունին Կողքացիք, միւսը՝ Վիրք, եւ երրորդը Հայք:

Ստրաբոն կ'անցնի խօսելու Վրաց մասին, ուր նորէն կը կրկնուին Փասիս գետոյ, իւր օժանդակ Գղաւկոս եւ Հիպոս գետերու, եւ Փասիս քաղաքի մասին ըսածները, քանի մ'ուրիշ մանրամասնութեամբք[115]: Յաջորդող Աղուանից բաժնին մէջ կը յիշուի Կամբէն (Κομβυσήνη «Կամբիսենէ») գաւառը ուր «Հայք եւ Վիրք եւ Աղուանք իրա-

115 Ստրաբոն ԺԱ. 500:

րու կը կցին», ինչպէս նաեւ զՆրասխ եւն[116]: Յետոյ կու գայ Յասոփի գրոյցը, «Թետաղացի Արմենիոսի հետ» նաւելն ի Կողքիս, Ամազոնաց մասին խորհրդածութիւնք, որ մասանց մէջ Հայոց մասին կան այլեւայլ տեղեկութիւնք. յետոյ կ՚անցնի խօսելու Վրկանաց, Պարթեւաց եւ Բակտրիոյ եւն. մասին: Հիւսուած է հոս երկար հատած մը Տաւրոսի մասին, որմէ ճիւղ մը «Անդիտաւրոս, որուն մէջն է Կոմանա, քաղաք վերը յիշուած Կապպադովկիոյ, եւ կ՚աւարտի ի Կատաւոնի», եւն: Հոս ալ բնականապէս կը խօսուի Հայաստանի մասին[117], եւ յատկապէս Տաւրոսի դէպ ի հիւսիս ճիւղուած» մասերուն «մին է Անդիտաւրոս կոչուածն, որ կը պարփակէ զԾոփս ի հովտին, որ կը գտնուի առոր եւ Տաւրոսի միջեւ[118]»: Կը կցի «Եփրատէն անդին, դէպ ի Փոքր-Հայս, Անդիտաւրոսէ ետքը՝ դէպի հիւսիս կը տարածուի մեծ եւ բազմաճիւղ (πολυσχιδές կտոր կտոր պատռուած), որուն մէկ մասը կը կոչուի Պարիադրիս (Պարխար), ուրիշ մը Մոսքական լերինք, ուրիշները՝ ուրիշ անուններով. ասոնք կը պարփակեն ամբողջ Հայաստանը մինչեւ ի Վիրս ու Ազուանս» եւն:

Մարաստանի բաժնէն ետքը՝ կուգայ յատուկ բաժինը Հայաստանի: Որչափ ալ չատ հետաքրքրական՝ այս բաժինը մեր ծրագրէն

116 Ստրաբոն ԺԱ. 501:
117 Ստրաբոն ԺԱ. 521:
118 անդ ԺԱ. 521:

դուրս կը մնայ: Ցիշենք միայն Հայաստանի սահմանաց մէջ մեր խնդրոյն հայող մասը, թէ «Հիւսիսայինքն (սահմանքն) են Կասպից ծովու վերեւը գտնուող լերինք «Պարաքոէթրայ» (Παραχοήθρα)[119], եւ Աղուանք եւ Վիրք, եւ Կաւկաս լեռն՝ որ այս ազգերը կը շրջապատէ եւ կը կցի Հայոց (աշխարհի)· կցելով նաեւ Մոսքիական լերանց եւ Կողքիականաց մինչեւ այսպէս կոչուած Տիբարենացիքն: Իսկ արեւմտակողմն (Հայաստանի) այս ազգերն են եւ (լերինք) Պարխադրէս (Պարխար) եւ Սկիւդիսէս[120] փոքր-Հայք (Σκυδίσης μέχρι μικρᾶς Ἀρμενίας) եւ Եփրատ գետ, որ կը բաժնէ Հայաստանը Կապպադովկիայէն եւ Կոմագենէէն: Որովհետեւ Եփրատ Տաւրոսի հիւսիսային կողէն բղխելով, նախ դէպ ի արեւմուտք կը հոսի Հայաստանի մէջէն, յետոյ կը դառնայ դէպ ի հարաւ եւ կը կտրէ զՏաւրոս Հայոց (մէկ կողմանէ) եւ (միւս կողմանէ) Կապպադովկեցւոց ու Կոմագենացւոց միջեւ» եւն: Կրկին կը դառնայ Ծոփաց մասին «ի մէջ Մասիոս լերան եւ Անդիտաւրոսի» եւն: Մեզի կը վերաբերէր այն հատածն, ուր Ստրաբոն կը պատմէ Արտաշէսի եւ Զարեհի Հայաստաններու մեծնալը, Վրացիներէն առնլով Պարիադրի ստորոտը, Խաղիւքներէ եւ Մոսիւնիկներէ զԿարին ու Դերջան, «որոնք սահմանակից են Փոքր-Հայոց եւ անոր մասեր»,

119 Ստրաբոն ԺԱ· 522:

120 Ստրաբոն ԺԱ· 527:

եւ Կարսուանեցիներէ՝ զԵկեղեաց ։ Այս հատածն արդէն յառաջ բերինք վերը ։ Ուրիշ մասեր ալ այլեւայլ առթիւ յիշեցինք եւ պիտի յիշենք ։ Կարեւոր է Տիգրանայ Մեծի տէրութեան սահմաններու մասին ըսածը թէ «ունէր յատուկ մօտք կոչուած Հայաստանը, եւ այս՝ սահմանակից է Մարաստանի եւ Աղուանից եւ Վրաց մինչեւ Կողքիս եւ (մինչեւ) Կապպադովկիա Եւքսենոսի վրայ (τῆς ἐπὶ τῷ Εὐξείνῳ Καππαδοκίας) ․ եւ այն՝ այս «Կապպադովկեան Պոնտոս» ․ բացատրութեան համար, որուն մասին քիչ մ'ետքը ։ Տիգրանով եւ Եկեղեաց գաւառի Անահտայ պաշտաման մասին հատածով[140] կ'աւարտի Ստրաբոնի ԺԱ ․ Գիրքը ։

բ) Գամիրք ։ — Ստրաբոնի ԺԲ ․ գիրքը կը վերաբերի մեր նիւթոյն, գլխաւորաբար առաջին կէսն, ուր կը խօսի Գամրաց, Պոնտոսի եւ Փոքր–Հայոց մասին, յետոյ անցնելով՝ Փռիւգիոյ, Գաղատիոյ, Լիւկաւոնիոյ եւն մասին խօսելու ։ Կարեւոր է նոյն իսկ գրոց սկիզբը ․ «Կապպադովկիա բազմամասն է եւ սաէպ փոփոխութիւններ կրած ։ Անոնք որ մանաւանդ համալեզու են՝ կը սահմանաբաժնուին ի հարաւ Տաւրոսի կոչուած Կիլիկիայէ (τῷ Κιλικίῳ λιγομένῳ Ταύρῳ (արեւելակողմը՝ Հայաստանէ եւ Կողքիսէ եւ միջանկեալ օտարալեզու ազգերէ, հիւսիսակողմը՝ Եւքսինոսէ մինչեւ Ալիւսի ծովախառնուրդը ․ արեւմտակողմը՝ Պափղագոնացւոց ազգէ ու Գաղատացւոց՝ որոնք

*Փռիւգիա գաղթեցին, մինչեւ Լիկաւոնացիք ու Կիլիկեցիք որ* Առապարն Կիլիկեան ( **τὴν τραχεῖαν Κιλικίαν**) *կը գտնեն: Համալեզուաց մէջ հիները* զԿատաւոնացիս *ուրոյն կը դասէին, զանազանելով Կապպադովկիացիներէ՝ իբր* ստարազգիներէ, *եւ ազգաց թուարկութեան մէջ Կապպադովկիայէ ետքը կը դնէին* զԿատաւոնիա *(τῆς **Καταονίαν**) յետոյ զԵփրատ եւ յայնկոյս եղող ազգերը, այնպէս որ* Կատաւոնիոյ ներքեւ կը դասեն նաեւ զՄելիտենէ, *որ կը գտնուի ասոր եւ Եփրատայ միջեւ, սահմանակցելով Կոմագենեայ: Բայց (այժմ) տասներորդ մասն է Կապպադովկիոյ, երկրին տասն կուսակալութեանց* (**στρατεγία** *«զօրավարութիւն»*) *բաժանմանց համեմատ: Որովհետեւ այսպէս մեր օրերը՝ Արքեղայոսէ յառաջ եղած թագաւորք կարգադրած էին Կապպադովկիոյ վարչութիւնը: Տասներորդ մասն է նաեւ Կատաւոնիա, բայց եւ մեր օրերը իւրաքանչիւրը սեպհական կուսակալն ունի* ( **στρατηγὸς** *«զօրագլուխ»*) : *Բայց որովհետեւ ասոնց մէջ չ'երեւար բարբառի որեւէ տարբերութիւն միւս Կապպադովկիացիներէն. եւ ո՛չ այլ միւս ազգերէն, զարմանալի է թէ ի՛նչպէս* լիովին անհետ եղած են այլազգութեան նշանները: *Ուստի բաժնուած էին: Իսկ զանոնք նուաճեց Արխարաթէս» որ Կապպադովկացւոց առաջին արքայն հռչակուեցաւ եւն: Յիշենք այն հատածն, ուր կ'ըսէ Ստրաբոն թէ «զԿապպադովկիա Պարսիկներէ երկու սատ-*

բայութեանց բաժնուած՝ ստացան Մակեդոնացիք, մասամբ կամաւ եւ մասամբ ակամայ թողուցին որ սատրապութիւնքն թագաւորութեանց փոխուին, որոնց մին՝ բուն Կապպադովկիա կոչեցին, նաեւ Կապպադովկիա առ Տաւրոսիւ (πρὸς τῷ Ταύρῳ) եւ կամ Մեծ Կապպադովկիա· միւսը՝ Պոնտոս, կամ (ըստ ոմանց) Կապպադովկիա առ Պոնտոսիւ (πρός τῷ Πόντῳ Καππαδοκία, «ծովեզերեայ Կապպադովկիա»)։ Մեծ Կապպադովկիոյ առաջին կարգաւորութիւնն այժմ չենք գիտեր· որովհետեւ (անոր) թագաւորող Արքեղայոսի կեանքը վճարելէն (մեռնելէն) ետքը՝ վճռեց թէ՛ կայսրն ու թէ՛ ծերակոյտն որ այն՝ հռոմէական նահանգն ըլլայ։ Անոր (Արքեղայոսի) եւ անկէ յառաջ եղած թագաւորաց ատեն, երբ երկիրը տասն կուսակալութեանց բաժնուած էր, հինգը կը համարուէին «առ Տաւրոսիւ» (Կապպադովկիոյ գաւառներ, այսինքն)՝ Մելիտենէ, եւ Կատաւոնիա, եւ Կիլիկիա, եւ Տիանիտիս եւ Գարսաւրիտիս· իսկ մնացեալ հինգը (միւս Կապպադովկիոյ գաւառներն, այսինքն՝) Լաւիանսենէ, Սակարաւսենէ, Սարաւենէ, Քամանենէ, Մորիմենէ։ Ասոնց վրայ աւելցուցին Հռոմայեցիք վերջերս մետասաներորդ կուսակալութիւնը Կիլիկիայէ՝ որ կանխաւ Արքեղայոսի էր· Կաստաբաղայի եւ Կիւբիստրայի շրջավայրքն մինչեւ Դերբէ՝ Անդիպատրոս աւազակին։ Իսկ Արքեղայոսի տրուած էր նաեւ Առապարային Կիլիկիա՝

Եղէուսիոյ շուրջը (περὶ Ἐλοιοῦσσαν) եւ ծովահինաց բոլոր վայրերը» են:

Մեր նպատակին համար կը բաւէր ըստ ինքեան այսչափը: Մնացեալն ալ ի հարկէ նոյնպէս հետաքրքրական է. որմէ էական մասերը թարգմանուած են ուրիշ տեղ մը: Այսուհանդերձ նշանակենք հոս ալ գլխաւոր կէտերը: Մելիտենէ, կ'ըսէ, յամենայնի նման է Կոմագենեայ, որովհետեւ ամբողջը լի է ընտանի (պտղաբեր) ծառերով, «միակը ամբողջ Կապպադովկիոյ մէջ», կը հասնէ նաեւ ձիթենի, եւ «Մոնարիտեան գինին»՝ որ Հելլենականաց հետ կը մրցի: Հանդիպակաց է՝ Եփրատով բաժնուած՝ Ծոփք նաեւ, որ եւ Կոմագենէ՝ սահմանակից են: «Կապպադովկացւոց նշանաւոր բերդ մը կայ գետոյն միւս կողմը՝ Տոմիսա (Τόμισα), այս թէ վաճառուեցաւ Ծոփաց հարիւր տաղանդի, բայց յետոյ Ղուկուղղոս պարգեւեց Կապպադովկացւոց՝ որոնք քաջաբար մարտակից ըլլալով Միհրդատայ դէմ պատերազմին մէջ»: Կատաւոնիա լայն եւ գոգաւոր դաշտավայր մըն է, ամենաբեր, ի բաց առեալ մշտադալարները: Զինքը շրջապատող լերանց մէջ՝ յԱնդիտաւրոս խորունկ եւ անձուկ հովիտներ, որոնց մէջ կանգնած է «Ենիոյի» մեհեանը (τὸ τῆς Ενυους ἱερὸν), զոր անոնք Կոմանա (աւելի եւս լաւ՝ Մայ[121] կ'անուանեն: Յիշատակելի (բաւական մեծ)

---

121 Ստրաբոն ԺԲ. 535:

քաղաք մըն է, բայց բնակչաց մեծագոյն մաս են աստուածազգեցիկ (θεοφόρητος, ներշնչեալք, ոգեւորեալ եւն) եւ մեհենասպասիկք։ Բնակիչները կատուոնացիք են, որոնք այլուստ թագաւորին ստորակարգեալ են, մեհենին եւ սպասկաց, որոնք՝ երբ մենք հոն հասանք (κατὰ τὴν ἡμετέραν ἐπιδημίαν «ի գալստեան մերում», մեր ներկայութեան ժամանակ) 6000է աւելի էին, արք եւ կանայք։ Մեհենին շրջակայք շատ հող կայ, որուն եկամուտը քրմապետը կը ստանայ․ ասիկայ ի Կապադովկիա թագաւորէն ետքն երկրորդն է ըստ պատւոյ․ մեծաւ մասամբ նոյն տոհմէն են քրմապետք եւ թագաւորները»․ Ստրաբոն կը կարծէ թէ այս «Տաւրոպոլ Արտեմեայ» (τοῦ Ταυροπόλου 'Αρτέμιδις), պաշտօնն ըլլայ, զոր Որեստէս եւ քոյրը Իփիգենիա բերած ըլլան Տաւրիկեան Սկիւթիայէ․ եւ հոս դրած ըլլայ իւր սգոյ հերը (κόμη), որմէ քաղաքին անունը։ Քաղաքին մէջէն կը հոսի Սարոս գետը, որ Տաւրոսի կրճերէն անցնելով Կիլիկիոյ դաշտավայրերը կ՚իջնայ եւ մերձակայ ծովը կը թափուի։ Կատուոնիոյ միջէն կ՚անցնի նաեւ Պիւրամոս նաւարկելի, որուն աղբերքն դաշտին մէջտեղն են, եւն։ — «Երկրորդն է քրմապետութիւնն Արամազդայ Բագայոս ոչ նուազ միւսէն եւ նոյնչափ նշանաւոր»։ Հոս լճակ մը կայ աղի ջրոյ, բաւական մեծ լճի մը շրջապատով, պարփակուած բարձր եւ սեպ ափերով, այն–

պէս որ սանդղաձեւ կ՚իջեցուի դէպ ի ջուրը, որ ո՛չ կ՚աւելնայ՝ կ՚ըսեն, եւ ո՛չ տեսանելի ելք մ՚ունի: Քաղաք մը չունի ո՛չ Կատաւոնիոյ դաշտը եւ ո՛չ ալ Մելիտենէ: Բայց ամուր բերդեր լերանց վրայ՝ Ազամորա դեռը: Ունի նաեւ Կատաւոնեան Ապողոնի մեհեանը, յարգուած բոլոր Կապպադովկիոյ մէջ, եւ ասոր նմանութիւնքը (ἀφιδρύματα) կը շինեն: Ոչ ալ միւս կուսակալութիւնք քաղաքներ ունին, բացի երկուքէն: Միւս կուսակալութիւններէն ի Սարգարաւսենէ կայ քաղաքիկն Հերպա (Ἥρπα), եւ Կարմալոս գետը, որ ի Կիլիկիա կը հոսի: Ուրիշ կուսակալութեան մէջն է Արգոս բարձր բերդը «առ Տաւրոսի», եւ Նորա՝ որ այժմ Ներուասոս (Νηροασσὸς) կը կոչուի, ուր Եւմենէս պաշարուած երկար ժամանակ դիմադրեց: Մեր ժամանակ իբր գանձապահ տեղի ծառայեց Սիսինոսի, որ կը ջանկար Կապպադովկիացւոց իշխանութեան: Անորն է նաեւ Կադէնա (Κάδηνα) արքայանիստը, եւ քաղաքի ձեւ ունի:

Լիկաւոնացւոց սահմանին վրայ է. (որովհետեւ) Գարսաւիրա գիւղաքաղաքի նման է (այժմ) բայց երբեմն թերեւս երկրին մայրաքաղաքն եղած է: Ի Մորիմենէ կայ Վենասեան Արամազդայ (τοῦ ἐν Οὐηνάσοις Δεος) բնակարան (գիւղ) ունենալով 3000 մեհենու սպասկաց, եւ պտղաւէտ նուիրական հող որ քրմապետին 15 տաղանդ եկամուտ կը բերէ:

Աս ալ ցկեանս (քուրմ) է՝ ինչպէս է Կոմանայինը եւ անկէ ետքը երկրորդն է ըստ պատույն: Միայն երկու կուսակալութինք քաղաք ունին, այն է՝ Տիանիտիս (Τυανῖτις)՝ զՏիանա (Τὺανα), Տաւրոսի ստորոտն ինկած, Կիլիկեան դրանց քով են: Կը կոչուի նաեւ Եւսեբիա առ Տաւրոսին, բարեբեր է եւ մեծաւ մասամբ հարթ: Տիանայ կը կանգնի Շամիրամայ թմբին վրայ եւ լաւ պարսպուած է: Ասկէ հեռու չեն Կաստաբաղա եւ Կիւբիստրա (Καστάβαλα Κύβιστρα), արդէն լերանց աւելի մօտ քաղաքներ: Կաստաբալայի մէջ է Պերասիա Արտեմեայ (τῆς Περασίας ’Αρτέμιδος) մեհեանը, ուր կ’ըսեն թէ քրմուհիք բոկոտն կը քալեն (հրաշէկ) ածխոյ վրայէն անվնաս. եւ ոմանք այստեղ եղած կը համբաւեն Որեստէսի եւ Տաւրոպոլեայ պատմութինը, ի Պերասիա (= յայնկոյս) կոչուած կ’ըսեն, որովհետեւ անդիէն (πέραθεν) բերուած ըլլայ: Արդ ի Տիանիտիս, որ տասն յիշեալ կուսակալութեանց մին է, կը գտնուի Տիանա քաղաքը: Ասոնց թուոյն մէջ չեմ հաշուեր յետոյ յաւելեալ Կաստաբալա եւ Կիւբիստրա եւ Առապարին Կիլիկիոյ մասը, որուն մէջ Արքեղայոս զեղեցիկ չինեց զՆղեուսա կըղզին, բարեբեր կղզին, ուր մեծաւ մասամբ կ’ապրէր: Կիլիկիա կոչուած մասին մէջ է Մաժակ (ἐν τῇ Κιλικίᾳ καλιυμίνῃ τὰ Μάζακα), ազգին մայրաքաղաքը: Կը կոչուի նաեւ Եւսեբիա վերադրութեամբս «առ Ար–

գէոսիւ» (πρὸς τῷ 'Αργαίῳ), որովհետեւ կը գտնուի Արգէոսի՝ ամենաբարձր լերան ոտքը» եւն: Ստրաբոն երկար կը խօսի Մաժակի եւ շրջակայից մասին: Լեռը «քաղաքի շինութեան դիրքն անյարմար է, որովհետեւ անջուր է»: Քաղաքն ալ ամրութիւն չունի, եւ անպարիսպ է. «թերեւս, կ'ըսէ, որպէս զի բնակիչք աւազակութեամբ չպարապին». «Շրջակայ երկիրն անբեր է եւ անմշակելի, թէպէտ եւ դաշտային, բայց աւազուտ է եւ ներքեւը ժայռոտ: «Քիչ մ'ատեն հրալից է դաշտը, շատ մղոններ հրոյ վիհերով»: Եւ «մինչդեռ գրեթէ ամբողջ Կապպադովկիա անփայտ է, Արգէոս շրջապատող անտառ ունի. այնպէս որ փայտեղէնք մօտէն կը բերուին: Բայց նաեւ անտառին վերաբերեալ տեղերը շատ տեղ կրակ ունին, եւ միանգամայն պաղ ջրոյ (ստորերկրեայ) ջրակոյտներ կան: Ոչ հուրը եւ ոչ ջուրը (գետնոյ) երեսը յերեւան չ'ելլեր. այնպէս որ մեծաւ մասամբ խոտ կը բուսնի: Տեղ տեղ ճահիճներ կան, այլուր գետին է, եւ գիշերը բոցեր կը վառին անկէ. փորձառուները զգուշութեամբ փայտահատութիւն կ'ընեն. եւ շատերուն համար վտանգ է, եւ մանաւանդ անասնոց, որոնք հրոյ ծածուկ փոսերուն մէջ կ'իյնան»: Հետաքրքրական է Մելաս (Սեւ) գետոյ մասին ըսածը. «Քաղաքին առջեւը դաշտին մէջ գետ կայ Մելաս կոչուած, որ քաղաքէն իբր 40 ասպարէզ հեռու է եւ իր աղբերք քաղաքէն աւելի ցած տեղ են»: Ասով օգտակար չէ

քաղաքին, եւ «կը թափուի ճահիճներու եւ լճակներու մէջ, եւ ամառն օդը կ'ապականէ»։ Նաեւ քարահանքերն ալ ջրով կը ծածկէ եւ անօգտակար կ'ընէ։ «Նաեւ այս ճահիճները շատ տեղ հրալից են (ստորերկրեայ կրակի հետ հաղորդակցութիւն ունին»)։ «Որովհետեւ Մելաս նեղ տեղ մը Եփրատ (ուղղելի՝ Ալիւս) կը թափուի, Արքեղայոս արքայ խցեց այն տեղն, որով բոլոր շրջակայ դաշտը ծովանման լիճ մը դարձաւ»։ Եւ որովհետեւ անոր մէջ քանի մը կղզիներ ելան, Կիւկլադաց նման, անոնց վրայ (բնակելով) երիտասարդական («պատանեկան») զուարճութեանց կը պարապէր։ Բայց ջրաշեղջը թումբը պատռեց եւ ջուրը դուրս խուժեց յորդելով Եփրատ (ուղղելի՝ Ալիւս), քշեց տարաւ Կապադովկիոյ հողին մեծ մաս մը, աւերեց գիւղեր եւ արտեր։ Ոչ սակաւ վնասներ ըրաւ նաեւ Փռիւգիա բնակող Գաղատացւոց։ Ասոնք վնասուն փոխարէն հատուցում պահանջեցին, 300 տաղանդ, «իրաւընտիր ընելով զՀռոմայեցիս», «նոյնը պատահեցաւ, Հերպայի քով։ Վասն զի հոս ալ Կարմալոս գետոյն ընթացքը գոցեց. բայց գետը պատռեց բերանը եւ իւր ջուրը աւերեց քանի մը Կիլիկեան տեղեր Մալլոսի քով, եւ ստիպուեցաւ հատուցում ընել վնասուողներուն։ Արդ Մաժակացւոց երկիրը շատ մասամբ անյարմար է. բայց թագաւորները կ'երեւայ թէ զայս նիստ ընտրած են մանաւանդ անոր

*համար որ տեղն ամբողջ աշխարհին միջավայրն է, եւ միանգամայն փայտ ունի եւ քար տնաշինութեան համար, եւ խոտ՝ որուն մանաւանդ պէտք ունին պաճարարոյծները: Քաղաքն անոնց (արքայից) համար կերպով մը բանակատեղի էր: Իրենց անձանց կենաց միւս ապահովութիւնը (թիկնապահք ու պխոյք) կը պահէին բերդերու մէջ, որոնք բազմաթիւ են, ոմանք՝ արքունական եւ ոմանք՝ բարեկամաց»: Յիշելով Մաժակայ հեռաւորութեան այլեւայլ չափերը, կը յաւելու «Մաժակացիք Քարօնդասի օրինօք կ'ապրին, ընտրելով նաեւ օրէնսներգու (*νομῳδὸν*), որ անոնց օրինաց մեկնիչն է, ինչպէս որ Հռոմայեցւոց քով իրաւագէտք: Բայց զանոնք չատ նեղեց* Տիգրան Հայազգի (*Τιγράνης ὁ 'Αρμένιος*), *երբ ի Կապադովկիա արշաւեց, որովհետեւ անոնց ամէնքը հայրենադուրկ ըրաւ ի Միջագետս (տանելով) եւ* Տիգրանակերտը (*τὰ Τιγρανόκερτα*) *ասոնցմէ բնակեցուց մեծաւ մասամբ. բայց յետոյ կրցողները վերադարձան՝ Տիգրանակերտի առմանէն ետքը»՝ Կապպադովկիոյ ընդարձակութեան չափերէն ետքը՝ կ'ըսէ. «բարեբեր է նաեւ պտուղներով, բայց մանաւանդ ցորենով, եւ ամէն տեսակ անասնոց (բուծիչ). թէեւ Պոնտոսէ աւելի հարաւային է՝ բայց աւելի ցրտագոյն է. խսկ Կատաւոնիա (գրուած «Գարագանիա») թէպէտեւ թէ՛ դաշտային է եւ թէ՛ ամէնէն հարաւայինը, որովհետեւ Տաւրոսի*

ստորոտն է, հաղիւ թէ պտղաբեր ծառ մ'ունենայ. ուստի այս ալ արօտավայր է, ինչպէս (նոյն աշխարհին) շատ ուրիշ մասերը, եւ մանաւանդ Գարսաւիրայի եւ Լիւկաւոնիոյ եւ Մորիմենեայ շրջակայքը»: Ասկէ ետքը կը յիշէ երկրին այլեւայլ հանքերը: «Պոնտոսի եւ Կապպադովկիոյ միջեւ սահմանը կը կազմեն լեռներ՝ որ զուգահեռական Պոնտոսի, սկիզբն ունենալով Քամանենեայ արեւմտեան ծայրէն, ուր կը գտնուի դահավէժ բերդն Դասմենացւոց (ճոր. Դասմենդա են), մինչեւ Լաւիանսենեաց արեւելակողմերը: Իսկ Քամանենէ եւ Լաւիանսենէ Կապպադովկիոյ կուսակալութիւնք են»:

Ստրաբոն կ'աւարտէ պատմական ակնարկովս. «Պատահեցաւ որ, կ'ըսէ, երբ Հռոմայեցիք առաջին անգամ միջամուխ եղան Ասիոյ գործոց՝ Անտիոքոսի յաղթելէն ետքը, բարեկամութիւններ եւ դաշնադրութիւններ (զինակակցութիւններ) ըրին այս ազգերու եւ թագաւորաց հետ, ուրիշ թագաւորաց անձնապէս այս պատիւը տուին, իսկ Կապպադովկիոյ հաւասարապէս նաեւ ազգին: Երբ թագաւորական ցեղը սպառեցաւ, Հռոմայեցիք շնորհեցին անոնց ինքնօրէն ըլլալ (αὐθονομῖσθαι)՝ ազգին հետ կնքուած բարեկամութեան եւ զինակակցութեան համար: Բայց սոնք պատգամաւորութիւն ուղարկեցին եւ հրաժարեցան ազատութենէ, որովհետեւ կ'ըսէին թէ չեն կրնար տանիլ. եւ խնդրեցին որ թագաւոր դրուի իրենց:

*Հռոմայեցիք զարմացած թէ գտնուին ազատութեան այսպէս անհանդուրժող մարդիկ, թողուցին որ իրենցմէ ընտրութեամբ որոշեն զով որ կ'ուզեն: Եւ ընտրեցին* զԱրիոբարզանէս, *որուն* ցեղն երրորդ սերունդը հասնելով սպառեցաւ: *Իսկ* Արքեղայոս *դրուեցաւ*, որեւէ ազգակցութիւն չունենալով անոնց հետ, *Անտոնիոսէ դրուած (Թագաւոր): Արդ Մեծ Կապպադովկիոյ մասին այսչափ»:*

դ) Պոնտոս եւ Փոքր-Հայք: — *Ի հարկէ շատ ընդարձակ է Պոնտոսի նկարագրութիւնը, եւ այն՝ պէսպէս բաժիններով, որոնք գոնէ ընդնշմարել կու տան ապագայ Գաղատական, Պողեմոնեան եւ նաեւ Գամրական բաժանմունքը: Փոքր-Հայք ալ ագուցուած է ասոնց միջեւ: Բայց արդ շատ բան արդէն յառաջ բերինք, նաեւ ընդարձակ քաղուածներով. իսկ այս մասերն՝ որոնք Աղիւսէ արեւմուտք կ'իյնան՝ մէկդի կը թողունք: Հոս կը նշանակենք այն կարգը, որով կը խօսի Ստրաբոն այս աշխարհաց մասին, ի կարգին լրացնելով՝ ինչ որ ցայժմ չէ յիշուած, առանց սակայն շատ մանրամասնութեանց մէջ մտնելու:*

*Ստրաբոն կը սկսի պատմական տեսութեամբ*[122] *թէ Միհրդատ Եւպատոր Պոնտոսի Թագաւոր եղաւ եւ ունէր աշխարհն «Աղիւսէ մինչեւ* Տիբարենացիք *ու* (Փոքր-)Հա-

---

122 *Ստրաբոն ԺԲ.* 541:

յերը», թէ յետոյ յետոյ նուաճումներ ըրաւ «մինչեւ ցԿողքիս ու Փոքր-Հայս», զորոնք միացուց Պոնտոսի, թէ Պոմպէոս ձեռք ձգելով այս երկիրը, զ(Փոքր-)Հայս եւ Կողքիս տուաւ զինակակից թագաւորաց, միւս Պոնտոսը բաժնելով տասն վարչութեանց՝ աւելցուց Բիւթանիոյ վրայ եւն:

Նկարագրելով ծովեզերքը, այն «աջ կողմն Պոնտոսի», զոր բաժնած էին մէջերնին Բիւթանացւոց թագաւորքն ու Միհրդատ Եւպատոր, եւ որ սահմանները պահեցին, կ՚ըսէ, Հռոմայեցիք, ընդարձակ կը խօսի մինչեւ Ալիս եղած մասին վրայ, յատկապէս ուրեմն Բիւթանացւոց եւ Պափղագոնացւոց մասին, եւ Հերակղէա ու Սինոպէ քաղաքաց վրայ: Այս մասին մէջ, զոր կը թողունք, հիւսուած է Ալիսի մասին հատուածը, ուր կը յիշէ Հերոդոտոսի վերը յիշուած տեղին ալ: Զ«Պափղագոնացիս արեւելքէն կը սահմանաբաժնէ Ալիս գետ, որ հարաւէն կը հոսի Ասորւոց եւ Պափղագոնացւոց միջեւ եւ՝ ըստ Հերոդոտոսի՝ կը թափուի Եւքսինոս կոչուած ծովը (Պոնտոս) Ասորիք ըսելով փոխանակ Գամրաց· որովհետեւ հիմայ ալ Սպիտակ-Ասորիք (Λευκόσυροι) կը կոչուին. Ասորիք կոչուելով Տաւրոսէ անդին եղածները, որոնք՝ համեմատութեամբ Տաւրոսէ ասդին եղածներուն, խանձուած մորթի գոյն ունին. ուստի ասոնք միեւնոյն անուանակոչութիւնը չեն կրեր» եւն: Անցնելով մեզի հետաքրքրող մասին՝ առաջին տողն

ալ համեմատութեան արժանի է Հերոդոտեայ հետ՝ հինգ դար ետքն եղած քաղաքական ու ազգագրական փոփոխութիւնքը ցուցընելու ։ «Անկէ ետքն է Ալիւս գետոյ ծովախառնուրդը · այսպէս (Ալիւս, ὁ Ἅλυς) կոչուած է աղերէն (ἀπὸ τῶν ἁλῶν) որոնց մէջէն անցնելով կը հոսի, իւր աղբերքն ունի Մեծ Կապպադովկիոյ մէջ Պոնտականին մօտ դէպ ի (մերձ) Կամիսենէ (ἐν τῇ μεγάλῃ Καππαδοκίᾳ τῆς Ποντικῆς πλησίον, κατὰ τὴν Καμισηνήν)· անկից երկար ընթանալով դէպ ի արեւմուտք, կը դառնայ դէպ ի հիւսիս, Գաղատացւոց եւ Պափղագոնացւոց մէջէն՝ զատոնք բաժնելով Սպիտակ-Ասորիներէ» եւն[123] ։

«Ալիւսի ծովախառնուրդքէն ետքը Գազէլոնիտիս է, մինչեւ Սարամենէ, բարեբաստիկ երկիր մը, ամբողջը դաշտավայր, եւ ամենաբեր եւ ունի ոչխար դիմացկուն ու կակուղ բրդով, որուն պակասութիւն կայ ամբողջ Կապպադովկիոյ ու Պոնտոսի մէջ. հոս կը ծնանին նաեւ այծեր (ζόρξ, տեսակ մը), որոնց այլուր պակասութիւն կայ (ցանցառ են) ։ Այս երկրին մէկ մասն ունին Ամիսենացիք, մէկ մասն ալ Պոմպէոս տուաւ Դիոտարոսի, ինչպէս նաեւ (անոր տուաւ) Փառնակիոյ եւ Տրապիզոնի շուրջ եղածը մինչեւ Կողքիս եւ Փոքր-Հայք եւ զանիկա անոնց թագաւոր

123 Ստրաբոն ԺԲ. 546 ։

*դրաւ, ունենալով նաեւ* իւր հայրենի չորրորդապետութիւնը Գաղատացւոց՝ *զ*Տոլիստոբոգիացիս»։

«*Գաղէլոնիայէ ետքն է* Սարամենա *եւ հռչակաւոր քաղաքն* «Ամիսոս» (*Սամսոն*)։ *Խօսելով աստ վրայ՝ կ'ըսէ թէ «ունի նաեւ ուրիշ գեղեցիկ երկիր մը, թէ՛ զ*Թեմիսկիւրա, *որ Ամազոնաց բնակարանն էր, եւ թէ՛ զ*Սիդենէ։ *Թեմիսկիւրա* (Θεμίσκυρα) *դաշտավայր է, զոր (մէկ կողմանէ) ծովը կը թանայ, 70 ասպարէզ հեռու ըլլալով քաղաքէն (Ամիսոսէ), եւ լեռներէ (միւս կողմանէ) պատուած, որոնք անտառաշատ են եւ ջրաշատ գետերով, որոնք այն տեղէն կը բղխեն։ Այս ամէնէն լեցուած միակ գետ մը դաշտէն կ'անցնի՝* Թերմոդոն (Θερμώδων) *կոչուած։ Ուրիշ մը՝ աստ համընթաց* (Πάρισος), *որ կը հոսի* Փանարէա *կոչուածին մէջէն՝ կ'ոռոգէ նոյն դաշտը եւ կը կոչուի* Հիրիկ (Ιρις), *կը բղխի նոյն իսկ Պոնտոսի մէջ, եւ հոսելով* Կոմանա Պոնտացւոց *քաղաքի մէջէն եւ Դազիմոնիտիս բարեբաստիկ դաշտի մէջէն դէպ ի արեւմուտք, յետոյ կը դառնայ դէպ ի հիւսիս նոյն իսկ* Գազիուրայի (Γαζίουρα) *մօտ, որ հին թագաւորանիստ էր՝ այժմ աւերակ, յետոյ դէպ ի արեւելք կը ծռի, ընդունելով* Սկիւլաքս *եւ ուրիշ գետեր, եւ նաեւ Ամասիոյ՝ մեր հայրենի ամենալից քաղաքին՝ պարսպաց առջեւէն քերելով, ի Փանարէա* (Φανα-

ροία) կ՚ընթանայ: Հոս կը խառնուի Գայլ գետ (Λύκος «Լիւկոս»), որուն սկիզբն Հայաստանն է, (ἐξ 'Αρμενίας, ի Փոքր-Հայոց), այն ալ Հիրիկ կ՚ըլլայ: Յետոյ կ՚ընդունի Թեմիսկիւրա վտակը, եւ Եւքսինոս ծովը կը թափուի: Այս պատճառաւ ոռոգեալ եւ մշտադալար է այս դաշտը եւ բաւական է բուծանելու արջառոց նախիրներ եւ ձիոց երամակներ» են: Ստրաբոն մեծապէս կը գովէ երկրին քաջարերութիւնն ու պտղաւէտութիւնը, պտղատու ծառոց ամբողջ անտառներ իսկ ըլլալով, են: «Թեմիսկիւրայէ ետքն է Սիդենէ, ոչ այնչափ քաջարեր ու ոռոգեալ դաշտ, բայց ծովեզերքին վրայ ունի ամրացուած գիւղեր: Իսկ Սիդէն, ուստի Սիդենէ անուանուած է, եւ Քաբակա եւ Փաբդա... (Թերի), մինչեւ այստեղ՝ Ամիսենէ: Հոս կրկին կը խօսի Ամիսոսի մասին եւ կը դնէ հեռաւորութեան չափեր[124]:

«Այս ծովափը՝ Ամիսոսէ նաւարկողներուն համար՝ նախ կուգայ Հերակղիա հրուանդուանը, յետոյ Յասոնեան ('Ιασόνιον) հրուանդանը, յետոյ Կոտիւորայ քաղաքիկը, որմէ մարդաշատ եղաւ Փառնակիա (ἡ Φαρνακία). յետոյ՝ Իսքոպոլիս, աւերուած. յետոյ՝ ծոցն որուն մէջն է Կերասուս (Κερασοῦς) եւ Հերմոնասսա, միջակ բնակավայրեր. յետոյ՝ Հերմոնասսայի մօտ է Տրապիզուս (ἡ Τραπιζοῦς Տրապիզոն).

124 Ստրաբոն ԺԲ. 547—549:

*յետոյ՝* կողքիս: *Այս տեղ՝ տեղ մըն է* Զիւգոպոլիս (Ζυγόπολις) *կոչուած քաղաքը: Խօսեցանք կողքիսի եւ անոր վերեւն եղած ծովեզերաց մասին»:*

Խաղտիք եւ Պոնտական ազգեր: — *Հոս կը կցի անմիջապէս հետաքրքրական հատուած.* «Տրապիզոնի եւ Փառնակեայ *վերեւն եւ* Տիբարենացիք (Τιβαρηνοί) *եւ* Խաղտիք (Χαλδαῖοι) *եւ* Սանք (Σάννοι), զորոնք *նաեւ կը կոչէին* Մակրոններ (Μάκρωνας) *եւ* Փոքր-Հայք (ἡ μικρὰ ’Αρμενία) . *եւ* Ապայիտք (’Απαῖται) *ալ՝ որ յառաջ* Կերկիտք (Κερκίται) *կը կոչուէին, կերպով մը մերձաւոր են այս տեղերու: Ասոնց մէջէն կ'անցնին՝ տապարուտ լեռն* Սկիւդիսէս (Σκυδίσσης) *որ կը կցի* Մոսքիական լերանց՝ *որ կողքիսի վերեւն են. որուն ծայրերը բռնած են* Հեպտակոմետք (‘Επτακωμῆται «Եօթնգիւղեանք») *եւ* Պարիադրիս *լեռը* (Παρυάδρις, *Պարխար*) *որ Սիդենէի եւ* Թեմիսկիւրայի *կողմանց տեղերէն կը տարածուի մինչեւ ի* Փոքր-Հայս եւ Պոնտոսի արեւելեան ծովափը կը կազմէ: *Այս բոլոր* լեռնաբնակները լիովին վայրենի են. *բայց* զամէնքը կը գերազանցեն Եօթնգիւղեանք. *ոմանք կը բնակին նաեւ* ծառոց *վրայ կամ* բրգերու (ἐπὶ πυργίνς *աշտարակաձեւներու*), *որուն համար ալ հիները* Մոսիւնիկներ (Μοσυνοίκους) *կը կոչէին, որովհետեւ բրգերը* «մոսիւն» *կ'ըսուէին: Կ'ապրին որսոց մսերէ եւ կաղնենմաններէ* (τῶν ἀκροδρύων) . *նաեւ դարանակալ կ'ըլլան՝ ուղե-*

*ւորաց, իրենց փայտակերտներէն* ( **τῶν ἰκρίων** ) *վար ցատկելով: Եօթնգիւղեանք նաեւ Պոմպէի երեք գնդերը կոտորեցին, որոնք այն լեռներէն կ'անցնէին՝ ճանապարհաց վրայ խմելու տալով բաժակները, մոլեցուցիչ մեղրի, զոր ծառոց ստեղունք կը բերեն· որովհետեւ զայն խմողներու եւ խելագարողներու վրայ յարձակելով՝ դիւրաւ բռնեցին մարդիկը: Այս բարբարոսաց ոմանք կը կոչուին նաեւ* Բիւզերք ( *Βύζηρες* )· Նաեւ զանոնք որ այժմ Խաղտիք ( *Χαλδαῖοι* ) կ'ըսուին՝ հիները Քաղիւբ ( *Χάλυβες* ) կ'անուանուէին, որոնց քով մանաւանդ Փառնակիա կառուցուած է (*մանաւանդ «որոնք Փառնակիոյ շրջակայքը կը բնակին)· ծովու վրայ ճարտարութիւն ունին պեղամուղի (տճկ·* փալամուտ *ձուկը) որսորդութեան* ( **πηλαμυδία** ) *որովհետեւ ամէնէն աւելի հոս կ'որսացուի ձկան այս տեսակը· իսկ երկրէն (ունին) մետաղները* ( **μέταλλα** *հանքերը), այժմ՝ երկաթի, բայց յառաջ նաեւ արծաթի: Ծովափն այս ամբողջ տեղերը լիովին նեղ է· որովհետեւ անմիջապէս ետեւը կը բարձրանան լեռները լի հանքերով եւ անտառներով· իսկ (մշակելի) արտեր շատ չեն: Ուստի մետաղագործերուն կը մնայ ապրուստը հանքերէ· իսկ ձկնորսներուն՝ ձկնորսութենէ, եւ մանաւանդ պեղամուղներու եւ դելփիններու: Որովհետեւ հետեւելով ձկանց վտառներու, մանաւանդ ծովամողէզի, զոնի եւ նոյն ինքն պեղամուղի, կը գիտնան ու դիւրորս կ'ըլ-*

*լան, երբ ցամաքին կը մօտենան անյաղաբար հրապուրուած խայծէն: Որոնցմէ ասոնք միայն դելփինները կը կտրեն եւ անոր առատ ճարպը ամէն բանի կը գործածեն: Արդ կ'երեւի թէ գասոնք պուէտը կը կոչէ* Ալիզոնք (Ἁλιζώνης), *Պափղագոնացիներէն եռքը թուարկելով. «Առաջնորդեց Ալիզոնաց Ոդիոս եւ Եպիստրոփոս հեռուէն՝* յԱղիւբեաց (ἐκ Ἀλύβης), *ուր արծաթոյ ծնունդն է»: Կա՛մ գրութիւնը փոփոխուած է փոխանակ «ի* Քաղիւբեաց» (ἐξ Χαλύβης) *կամ այն մարդիկ յառաջ* Աղիւբ *կ'ըսուէին փոխանակ* Քաղիւբք: *Որովհետեւ ինչպէս այժմ կարելի չէ* Քաղիւբներու տեղ խաղտիք *ըսել, յառաջ ալ չէր (կարելի)* Աղիւբ*ներէ* Քաղիւբ *(ըլլալ): Եւ այս անունները* շատ փոփոխութիւններ *կրած են, մանաւանդ բարբարոսականքը, եւն: — Ստրաբոն երկար կը խօսի անուանց այսպիսի փոփոխութեանց մասին նաեւ այլեւայլ ազգաց, յիշելով մատենագիրներու տեղերն ու կարծիքները՝ մեկնելու* «Ալիզոն»*ներն ու անոնց տեղերը, խօսելով նոյնպէս Ամազոնաց, Պափղագոնաց եւն մասին: Այս մասն աւելորդ կը համարինք յառաջ բերել:*

Փոքր-Հայք[125]: «*Արդ* Փառնակիոյ եւ Տրապիզոնի վերեւն են Տիբարենացիք եւ խաղտիք, մինչեւ Փոքր-Հայք: *Այս՝ բաւական*

[125] *Ստրաբոն ԺԲ.* 556—557:

*բարերեր երկիր է»* *են: Ամբողջ հատածը Փոքր-Հայոց մասին վերը յառաջ բերած ենք· կրկին բաժիններով, մին՝ Միհրդատայ ու Պոմպէոսի պատմութեան վերաբերեալ մինչեւ Նիկոպոլսոյ շինութիւնը, միւսը՝ անկէ ետքը Պիւթոդորիսի իշխանութեան ատեն: Աստ չարունակութիւնն է՝*

Պոնտոսի «լաւագոյն» մասերը, *որոնք նոյնպէս Պիւթոդորիսի ձեռքն էին: Այս բաժինն արդէն յէականս ապագայ* Պողեմոնեան *Պոնտոսն է, ուր նկարագրուած են* Փանարիա (*Φανάροια*), Կաբերա (*Κάβειρα*, *Նէոկեսարիա*), «Նոր բերդ» («Կենոն-ֆոբէոն»), Կոմանա Պոնտոս (*Κόμανα τῆ ἐν τῷ Πόντῃ*) *եւ մեհեանը* Զելիտիս *եւ Զելայի մեհեանը*, Կողոպենէ *եւ* Մեգալոպոլիս (*Սեբաստիա*) *եւ Կամիսենէ* (*Զառա*): *Այս մասն ալ ընդարձակօրէն յառաջ բերինք վերը· կը կցի՝*

Պոնտոսի միւս մասը: «*Կը մնայ* այն մասն Պոնտոսի, *որ այս երկրիս եւ Ամիսենացւոց*[126] *ու Սինոպացւոց միջեւ է, հասնելով մինչեւ Կապպադովկիա եւ Գաղատիա ու Պափլագոնիա: Արդ Ամիսոսէ ետքը մինչեւ Ալիս* Փազեմոնիտիս (*Φαζημυνῖτις*), *զոր Պոմպէոս* Նէապոլիտիս (*փխ. «Մեգալոպոլիս»*) *անուանեց, Փազեմոն գիւղի քովերը կառուցանելով բնակավայրը, եւ յորջորջեց* Նէապոլիս: (*Զառի հիւսիսէն*) *կը պարփակեն* Գազե-

126 *Ստրաբոն ժԲ·* 560:

լոնիտիս *եւ Ամիսենացւոց երկիրը, արեւմուտքէն՝ Աղիւս դետ. արեւելքէն՝ Փանարիա. եւ մնացեալը մեր* Ամասիա *մեծագոյն եւ ամենալից քաղաքը: Արդ Փազեմոնիտսխի դէպ ի Փանարիա եղած մասը կը դրաւէ լիճ ծովային մեծութեամբ*, Ստեփանէ (*Στεφάνη*) *կոչուած, ձըկնաշատ. եւ շրջակայքն ամենադղի արօտներ են: Լճին վրան կը կանգնի ամուր բերդն* Կիզարի (*Κίζαρι*) *, այժմ աւերակ, եւ մօտը կառուցուած արքայանիստը: Մնացեալը լիովին մերկ է, եւ ցորենաբեր, Ամասիացւոց վերեւն եւ* Փազեմոնիտացւոց Ջերմուկք, (**τὰ ϑερμὰ ὕδατα τῶν Φαζημωνιτῶν**) *, շատ առողջարար, եւ* Սազիլէոն *ուղիղ եւ բարձր լերան վրայ» են: Այս բերդի եւ Արշակայ մասին ըսածը վերը յառաջ բերինք*[127] *: Այն հատածին կը կցի. «Այսպէս Պոմպէոս սահմանեց զՓազեմոնիտիս. բայց յաջորդները նաեւ զայս թագաւորաց բաշխեցին: Իսկ* մեր քաղաքը (*Ամասիա*) *նստած է խորունկ եւ մեծ ձորի մէջ, որուն մէջէն կ՚ընթանայ Հիրիկ գետը»: Կը թողունք Ամասիոյ եւ իւր բերդին նկարագրութիւնը: «Գետէն կ՚երկարի հովիտ մը, որ ի սկզբան ամենեւին լայն չէ, բայց յետոյ կը լայնանայ, եւ կը կազմէ* Քիլիոկոմոն (*Χιλιόκωμον «Հազարագիւղ»*) *կոչուած դաշտը: Յետոյ՝* Դիակոպենէ (*Διακοπηνὴ*) *եւ* Պիմոլիսենէ (*Πιμω-*

[127] *Ստրաբոն ԺԲ.* 561:

*λισηνὴ* ) *ամբողջը լինելին բարեբեր երկիր, մինչեւ Աղիւս: Ասոնք հիւսիսային մասունքն են Ամասիոյ, երկայնութեամբ իբր* 500 *ասպարէզ. աւելի երկարադոյն է մինչեւ* Բաքա–ճոմոս *եւ* Քսիմենէս, *որոնք նոյնպէս մինչեւ Աղիւս կը հասնին: Այս՝ երկարութիւնն է. իսկ լայնութիւնը՝ հիւսիսէն դէպ ի հարաւ՝ կը հասնի Ձելիտիս եւ Մեծ Կապպադովկիա մինչեւ Տրոկմացւոց աշխարհը: Քսիմենեայ մէջ կան բրածոյ աղերու (քարաղի) աղահանքներ, ուսկից կը կարծեն թէ* Աղիւս *անունն առած է: Մեր երկրին մէջ շատ կան աւերեալ ամրոցներ եւ շատ ալ ամայի հող՝ Միհրդատայ պատերազմին պատճառաւ: Իսկ ամբողջը ծառաշատ է, ձիարուծութեան եւ այլ անասնոց յարմար, եւ ամբողջը գեղեցիկ բնակելի*[128]*: Նաեւ Ամասիա թագաւորաց աթոռեցաւ. իսկ այժմ նահանգ (* **ἐπαρχία** *) է».*

*«Մնացեալն է* Պոնտոսի նահանգի ( *τῆς Ποντικῆς ἐπαρχίας* ) Աղիւսէ անդին *եղած երկիրը,* Ողգասոսի *շուրջը, սահմանակից Սինոպական աշխարհին:* Ողգասոս ( *᾿Ολγασσους* ) *շատ բարձր լեռ է եւ դժուարամատչելի. եւ այս լերան վրայ ամէն կողմն շինուած մեհեաններ ունին Պափղագոնացիք. իսկ շուրջը կայ բաւական լաւ երկիր մը, (այն է՝ )* Բլայենէ ( *Βλαηνὴ*) *եւ* Դոմանէտիս ( *Δομανῆτις* ), *որոնց մէջէն կը հոսի*

---

128 *Ստրաբոն ԺԲ.* 562:

Ամնիսս գետը: Այստեղ Միհրդատ Եւպատոր Նիկոմեդեայ Բիւթանացւոց (արքայի) բանակը հիմնովին ջնջեց, թէեւ ինքը (Միհրդատ) ներկայ չէր, այլ՝ իւր զօրավարաց ձեռօք: Իսկ այն (Նիկոմեդէս) սակաւուք իւր տեղը փախչելով ազատեցաւ եւ անկից Իտալիա նաւեց: Իսկ անիկայ (Միհրդատ) հալածեց եւ յարձակմամբ զԲիւթանիա գրաւեց, եւ բռնեց Ասիան մինչեւ Կարիա եւ Լիւկիա: Եւ այստեղ շինուեցաւ Պոմպէոպոլիս քաղաքը: Իսկ այս քաղաքին մէջ կայ (Սանդարակուրգիոն (Σανδαρακούργιον, գործարան կարմիր զառիկի) ոչ շատ հեռու Պիմոլիսայէ, որ արքունի բերդ է՝ կործանուած, եւ որմէ գետոյն երկու կողման երկիրը կը կոչուի Պիմոլիսենէ: Իսկ Սանդարակուրգիոնը խոռոչաւոր (κοῖλον գոգաւոր) լեռ է, հանքի պեղմամբ զոր հոն մեծամեծ փոսերով բրած են գործաւորք: Բայց կը գործուէր միշտ հրապարակաւ (հասարակաց), եւ իբր մետաղագործ կը գործածուէին չարագործութեան համար վաճառուած գերիները: Որովհետեւ ո՛չ միայն գործն աշխատալից է, այլ նաեւ մահաբեր. եւ կ՚ըսեն թէ անտանելի է օդը հանքերուն մէջ՝ հողակոյտերու հոտին ծանրութեան պատճառաւ. այնպէս որ մարմինը վաղամեռիկ կ՚ըլլայ: Անոր համար յաճախ պատահած է որ գործը լքուած է, անշահաւէտ ըլլալուն պատճառաւ, երբ երկուհարիւրէ աւելի ալ ըլլալով գործաւորները՝ անընդհատ հիւանդու-

*թեամբք ու մահերով սպառած են* : Ասոնք Պոնտոսի մասին ըսուեցան» :

«*Պոմպէոպոլսէն անդին մնացեալը* Միջերկրեայ Պափղագոնիոյ է (*τῆς Παφλαγόνιας ἐστι τῆς μεσογαίας*, Paphlagonia Mediterranea) *մինչեւ Բիւթանիա՝ դէպ ի արեւմուտք երթալու ուղղութեամբ» եւն : Կը խօսուի այնուհետեւ Պափղագոնիոյ, Բիւթանիոյ, Փռիւգիոյ, Գաղատիոյ, Լիկաւոնիոյ եւ Փոքր Ասիոյ մնացեալ աշխարհաց մասին, մինչեւ ԺԲ. գրոց վերջը. յաջորդ ԺԳ. գիրքը նուիրած ըլլալով Տրովադայ, Լեսբոսի եւն, բայց նաեւ Պերգամոնի, Սարդէսի եւն : Ուրիշ մասերու մէջ ալ կան ցանուցիր տեղեկութիւնք Պոնտոսի եւ Հայոց մասին, զորոնք՝ ուր պէտք էր՝ յիշած ենք ի կարգին :*

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

### Ա

Բ

Գ

### Դ



### Ե

## Լ



## Խ



## Ծ

Կ

Հ

Ծ



Մ

Յ

Ն



Շ



Ո



Չ



Պ

Ռ



Ս

Վ



Տ

Ր



Փ

Ք

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐ

Ե

Զ



Թ



Ի



Լ

Խ



Ծ



Կ

Հ

Յ

Ն



Շ



Ո

Պ

Ռ



Ս

Վ

Տ

## Փ

